Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ

1987 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—36
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 58—86—11



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԴԻՄՈՒՄԸ

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Մոտենում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության յոթանասունամյակը։ Դա սովետական ժողովրդի մեծ տոնն է։*

*Մեր հեղափոխությունը 20-րդ դարի ամենաակնառու իրադարձությունն է, որն ավետեց մարդկության կյանքում նոր դարագլխի սկիզբը։ Ժամանակը խորապես բացահայտեց հեղափոխության անանց նշանակությունը, ի հայտ բերեց այն վիթխարի հնարավորությունները, որ ստեղծում է սոցիալիստական հասարակական զարգացումը։*

*Մեր գիտակցության մեջ, մեր զգացումներում Հոկտեմբերը սովետական մարդկանց բարձրագույն ազգային հպարտության առարկան է։ Հեղափոխությունը դարձավ մասսաների պատմական ստեղծագործության անօրինակ թռիչք, դարձավ աստեղային ժամը հաղթանակած ժողովրդի, որը թոթափեց կապիտալիստական ու կալվածատիրական շահագործման լուծը։*

*Ռուսաստանի բանվոր դասակարգին, աշխատավորությանը հեղափոխական սխրանքի հանած բոլշևիկյան կուսակցության գլուխ կանգնած էր Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Նրա տեսական միտքը, բարոյական օրինակը, տիտանական գործունեության պտուղները կայրեն դարեդար։*

*Մեծ Հոկտեմբերը այսօր շարունակվում է մեր գործերում։ Երկրում ծավալվում է վերակառուցումը՝ իր էությամբ հեղափոխական ստեղծարար աշխատանքը։ Վերակառուցման նպատակն է արագացնել սոցիալիստական հասարակության առաջադիմությունը։ Դրան է նպատակամղված կուսակցության՝ ժողովրդի կամքն արտահայտող քաղաքական գիծը՝ Կենտկոմի ապրիլյան պլենումի, ՍՄԿԿ XXVII համագումարի գիծը։*

*Խոշոր, սկզբունքորեն կարևոր որոշումներ ընդունվեցին Կենտրոնական կոմիտեի հունվարին կայացած պլենումում։*

*Այդ որոշումները կուսակցությանն ու ժողովրդին զինում են վերակառուցման տեսությամբ, նրանց մոբիլիզացնում են ավելի խոր ռեֆորմների, համարձակ միջոցառումների, կոչված են սոցիալիզմին տալու հասարակական կազմակերպության ամենաժամանակակից ձևերը։*

*Մեր երկիրը առաջինն է, որտեղ սոցիալիզմն իրագործվեց պրակտիկայում։ Հոկտեմբերի հաղթանակը հաստատեց մարդկանց սոցիալական կեցության պատմականորեն անօրինակ հիմունքները. աշխատավորության իշխանություն քաղաքականության մեջ, արտադրության միջոցների հանրային սեփականություն էկոնոմիկայի մեջ, կոլեկտիվիզմ և ընկերական փոխօգնություն մարդկային հարաբերությունների մեջ։ Այս հեղափոխական վերափոխումներում առկա են սոցիալիստական կարգերի հիմունքների հիմունքը, նրա կենսական ուժերի անսպառ աղբյուրը։*

*Մեծ Հոկտեմբերը, սոցիալիզմը մեր հայրենիքը փրկեցին այնպիսի ախտերից ու աղետներից, որոնք մինչև օրս էլ թունավորում են աշխարհի շատ երկրների ժողովուրդների կյանքը։ Մեր երկրում չկա մարդու կողմից մարդու շահագործում։ Չկա գործազրկություն։ Չկա ազգային ճնշում։ Չկան աղքատություն ու անգրագիտություն։ Աշխատավոր մարդիկ ապրում են սոցիալապես*

*պաշտպանված պայմաններում, վաղվա օրվա նկատմամբ վստահությամբ տոգորված:*

Հանուն դրա կատարվեց Հոկտեմբերյան հեղափոխությունը, հանուն դրա գոյություն ունի սոցիալիզմը:

*Սոցիալիստական շինարարության ընթացքում մեր երկիրը վերածվեց տնտեսական ու գիտատեխնիկական վիթխարի պոտենցիալ ունեցող ինդուստրիալ հզոր տերության: Ձեռք բերվեց մասսաների կրթվածության՝ աշխարհում ամենաբարձր մակարդակներից մեկը: Աշխատավորների տուն մտավ լիությունը: Կյանքի սովորական նորմաներ դարձան անվճար բժշկական սպասարկումը, պետական հոգատարությունը մայրության ու մանկության, աշխատանքի ու պատերազմի վետերանների, զառամյալ քաղաքացիների նկատմամբ: Օր չի լինում, որ հազարավոր ընտանիքներ նոր բնակարան չստանան:*

*Երկրում հսկայական վերափոխումներ են տեղի ունեցել մշակույթի բնագավառում: Սոցիալիզմը աշխարհի առջև հառնում է որպես մի հասարակարգ, որն ընդունակ է մարդասիրական այլընտրանք առաջարկել անմարդկայնությանն ու բռնությանը, բուրժուական հասարակության հոգևոր բարոյալքությանը, որպես մի հասարակարգ, որը պահպանում և բազմապատկում է քաղաքակրթության իսկական արժեքները և այդ ընդունակության ու կողմնորոշման շնորհիվ մերժում է առուծախի և շահի վրա հիմնված մշակույթը:*

*Այսօր մենք պայքարում ենք հանուն այն բանի, որ սովետական էկոնոմիկան հասցնենք արդյունավետության և գիտատեխնիկական առաջադիմության աշխարհում ամենաբարձր մակարդակին: Դրանով իսկ զգալիորեն կընդլայնվի ժողովրդի բարեկեցության հետագա աճի և հասարակության բոլոր անդամների բազմակողմանի զարգացման, մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարման բազան:*

Այդ ճանապարհը հարթել են Հոկտեմբերը, սոցիալիզմը:

*Սոցիալիստական հեղափոխության հաղթանակը վավերացրեց աշխատավոր մարդու ռեալ իրավունքներն ու ազատությունները, հաստատեց սովետների իշխանությունը՝ պետական կյանքի հենց ժողովրդի դրած դեմոկրատական ձևը: Սովետական քաղաքական սիստեմում բոլոր նախադրյալները կան դեմոկրատիայի ու ժողովրդի նախաձեռնության առավելագույն զարգացման համար:*

Այդ սիստեմը Հոկտեմբերի ծնունդն է, այն ստեղծվել է սոցիալիզմի կողմից:

*Հեղափոխությունը դրեց մեր երկրում ազգային հարցի լուծման հիմքերը: Սովետական իշխանության տարիներին գործնականորեն հաստատվեցին ժողովուրդների հավասարությունը, նրանց եղբայրական համագործակցությունը: Զարգացան բոլոր հանրապետությունների էկոնոմիկան ու մշակույթը: Կազմավորվեց միասնական սովետական ժողովուրդը՝ հպարտ իր ընդհանուր ձեռքբերումներով և պատրաստ պաշտպանելու սոցիալիստական նվաճումներն ամեն մի ոտնձգությունից:*

*Ազգային հարաբերությունների կատարելագործումը, ինչպես ամեն մի կենդանի գործ, առաջադրում է նոր պրոբլեմներ: Դրանք լուծվում են և կլուծվեն լենինյան ազգային քաղաքականության սկզբունքների հիման վրա, որը զգայուն է այն ամենի նկատմամբ, ինչը շոշափում է ազգային շահերը, անհաշտ է ամեն տեսակ նացիոնալիստական և շովինիստական դրսևորումների նկատմամբ:*

*Երկրի առաջադիմությունը տեղի է ունենում և տեղի կունենա ի բարօրություն յուրաքանչյուր ազգի և ազգության, ի շահ նրանց հետագա մերձեցման, ի շահ մեր ամբողջ անխախտ դաշինքի: ՍՍՀՄ ժողովուրդները միավորված են ամրակուռ բարեկամությամբ, սոցիալիստական ինտերնացիոնալիզմով և սովետական հայրենասիրությամբ:*

Սա մեզ տվել է Հոկտեմբերը, սա մեզ տվել է սոցիալիզմը:

*Մենք ապրում ենք մի աշխարհում, որը խորապես փոխվել է մեր հեղափոխության ներգործությամբ: Մարդկության արդեն ավելի քան մեկ երրորդը թոթափել է կապիտալիստական շահագործման կապանքները: Սոցիալիզմը գոյություն ունի, զարգանում է, ամրապնդվում որպես համաշխարհային սիստեմ:*



*Չկան այլևս գաղութային կայսրություններ, կան տասնյակ երիտասարդ սուվերեն պետություններ:*

*Բազմապատկվել են միջազգային պրոլետարիատի ուժերը, որի շահերը արտահայտում են մարքս-լենինյան կոմունիստական ու բանվորական կուսակցությունները: Ծավալվում են մասսայական դեմոկրատական, հակաիմպերիալիստական, հակապատերազմական շարժումները: Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը խորանում է:*

Աշխարհի ներկայիս սոցիալ-քաղաքական նկարագիրը այն պատմական պրոցեսի օրինաչափ հետևանքն է, որի սկիզբը դրեց Հոկտեմբերը:

*Սոցիալիստական շինարարության մեջ մեր առաջին քայլերին ուղղություն էր տալիս Վլադիմիր Իլյիչ Լենինը: Նա այսօր էլ մեզ հետ է. վերակառուցումն ավելի ու ավելի խորն է կուսակցության ու երկրի կյանքում հաստատում հեղափոխական լենինյան ոգին:*

*Այսօր մեզ հետ են նաև բոլոր նրանք, ովքեր իրենց նվիրաբերել են սոցիալիզմի մեծ գործին: Սովետական մարդկանց երախտապարտ հիշողության մեջ առհավետ կապրեն այն հեղափոխական լենինյանները, Իլյիչի զինակիցները, ովքեր դրել են բոլշևիզմի հերոսական ավանդույթների հիմքերը և բոլոր անհաջողությունների ու փորձությունների միջով տարել անսասան հավատարմությունը կոմունիստական իդեալներին:*

*Չեն խամրի ռուսական երեք հեղափոխությունների մասնակիցների անունները ու կերպարները, նրանց, ովքեր 1917 թվականի հոկտեմբերին կործանեցին կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը:*

*Սրբազան է հիշատակը քաղաքացիական պատերազմի հերոսների, բոլոր նրանց, ովքեր սովետների հանրապետությունը պաշտպանեցին իմպերիալիստական ինտերվենտներից և սպիտակգվարդիականներից: Մեր ժողովուրդը չի մոռանա արտասահմանցի ինտերնացիոնալիստ մարտիկներին, որոնք առաջադրելով «Ձեռքներդ հեռո՛ւ Սովետական Ռուսաստանից» կոչը, վենքը ձեռքներին պաշտպան կանգնեցին Հոկտեմբերի նվաճումներին:*

*Չի մարի մեր հիացմունքը առաջին հնգամյակների նվիրյալների, հզոր ինդուստրիան կերտողների, կոլեկտիվ գյուղատնտեսությունը կառուցողների, սոցիալիստական մշակույթն արարողների մեծագործությունների հանդեպ:*

*Անմահ է սովետական մարդու, զինվորի ու աշխատավորի սխրանքը Հայրենական մեծ պատերազմում: Մենք խոնարհվում ենք սոցիալիստական Հայրենիքի պատվի ու ազատության համար ընկածների, նրանց հիշատակի առջև, ովքեր իրենց կյանքն են նվիրաբերել աշխարհը ֆաշիստական ժանտախտից փրկելու համար: Մենք հարգանքով ու երախտագիտությամբ ենք հիշում մյուս երկրների՝ այդ ազատագրական ճակատամարտում մեր դաշնակիցների ու զինակիցների ռազմիկներին, հայրենասերներին, հակաֆաշիստներին:*

*Հայրենիքը միշտ կհպարտանա սովետական մարդկանց աշխատանքային արիությամբ, ոգու ուժով, որոնք ծանրագույն պատերազմից հետո ավերակույտերից բարձրացրին քաղաքներն ու գյուղերը, վերածնեցին երկիրը, էլ ավելի հզորացրին այն:*

*Ընկերնե՛ր:*

*Մեզ բաժին են ընկել այն բոլոր դժվարություններն ու փորձությունները, որ սպասում են նախագնացներին պատմության ճանապարհներին: Դրանք մեզ չեն կասեցրել: Մենք սովորել ենք հաղթահարել դրանք և հաղթահարել ենք:*

*Սոցիալիզմի շինարարությունը սկսվել է տնտեսական քաոսի և ռազմական ավերումների պայմաններում: Գրեթե երեք տասնամյակ ՍՍՀՄ-ը մեն-մենակ էր դիմակայում համաշխարհային կապիտալիզմին, անընդհատ ենթարկվում էր իմպերիալիստական ճնշմանն ու ահաբեկմանը: Հիտլերյան ագրեսիայի դեմ մղված պատերազմում երկիրը կորցրեց իր 20 միլիոն որդիներին ու դուստրերին, զրկվեց ազգային հարստության մեկ երրորդից: Երկար տարիներ հարկ եղավ աշխատել ուժերի գերագույն լարումով, ապրել, մեզ զրկելով ամենաանհրաժեշտից: Մենք տոկացինք, մեզ չընկճեցին և չկոտրեցին:*

*Բայց եղել է ուրիշ բան էլ: Հարկ եղավ թանկ վճարել նոր հասարակության կառուցման լենինյան սկզբունքներից ու մեթոդներից ընկրկելու, սոցիալիստական օրինականությունը, կուսակցության և հասարակության մեջ կյանքի դեմոկրատական նորմաները խախտելու համար, վոլյունտարիստական սխալ-*

գտնվում Հոկտեմբերի 70-ամյակն արժանավայել դիմավորելու մրցության կենտրոնում։ Եվ դրա հաջող լուծումը կախված է գործի նկատմամբ հանրային արտադրության յուրաքանչյուր մասնակցի անձնական վերաբերմունքից, այն բանից, թե կոլեկտիվներում ինչքան պահանջկոտ կհնչի աշխատավորական խղճի ձայնը։

Այստեղ մեծ ու պատասխանատու է արհմիությունների դերը։ Վերակառուցումը նրանց կոչ է անում դառնալ աշխատավորության անխոնջ կազմակերպիչներ արտադրության արդիական կուլտուրայի, բարձր պրոֆեսիոնալիզմի համար մղվող պայքարում։

Դարեր ի վեր մեր երկիրը հռչակված է եղել վարպետներով։ Այն մեծատաղով վարպետներով, որոնք կարիք չունեին հմտություն փոխ առնել աշխատանքն այնպես կատարելու համար, որ դրա համբավը տարածվեր արար աշխարհում։ Սովետների երկրի պատմության մեջ քիչ չեն օրինակները, երբ նրա բանվորները, գիտնականները, ինժեներները, կոնստրուկտորները հասել են համաշխարհային նվաճումներ գերազանցող արդյունքների։ Այսօր մենք առավել ևս ի զորու ենք անել դա։

Կենտրոնական կոմիտեն դիմում է սովետական մարդկանց բանականությանն ու փորձին։ Կյանքի բոլոր դեպքերի համար պատրաստի դեղատոմսեր չեն լինում։ Թող վերակառուցումը դառնա համաժողովրդական ստեղծագործական լաբորատորիա։ Ուշադիր և քննադատաբար իմաստավորենք նորացման պրակտիկան, գնահատենք առաջավոր փորձի ամեն մի հատիկը, փոխ առնենք և զարգացնենք այն։ Կենդանի, կապանքազերծ միտքը արագացման պարտադիր պայմանն է։

Կուսակցությունը մշտապես սովորում է ժողովրդից։ Նա ներառնում է վերջինիս հավաքական բանականությունը, մասսաների փորձով ստուգում իր քաղաքականությունը և իր պարտականությունը համարում ճիշտ արտահայտել այն, ինչ գիտակցում է ժողովուրդը։

Կենտրոնական կոմիտեն դիմում է սովետական ժողովրդի արիությանը։ Ոսկրացած ձևերը, մեթոդները, սովորույթները փշրելը հեշտությամբ չի հաջողվում։ Վերակառուցման համար պետք է պայքարել, վերակառուցումը պետք է պաշտպանել։ Այստեղ հարկավոր են համառություն, հաստատակամություն, սկզբունքայնություն։ Պահանջվում են և կամք, և անձնվիրություն։

Մեկ անգամ չէ, որ սովետական ժողովրդի արիությունը, տոկունությունը, դիմացկունությունը դրվել են պատմության կշեռքի նժարին, հաղթանակ բերելով։ Կուսակցությունը վստահ է, որ այդպես կլինի նաև այժմ։

Կենտրոնական կոմիտեն դիմում է սովետական մարդկանց քաղաքացիական զգացումներին։ Երկիրը պահանջկոտ ու հետաքրքիր ժամանակներ է ապրում, երբ նրա յուրաքանչյուր քաղաքացին կատարում է իր բարոյական ընտրությունը։ Մեր սկսած գործը անհնար է կատարել անտարբեր ձեռքերով, սառը սրտով։ Այն իր ամբողջ էությամբ մերժում է հարմարվողականների, կողմնակի դիտորդների, անհոգի սպառողների քաղքենիական բարոյախոսությունը։ Վերակառուցմանը հարկավոր են գործի համար ցավող, խստապահանջ, անտնտեսվարությունը, քաշքշուկը չհանդուրժող մարդիկ։ Նրան հարկավոր են քաղաքական մարտիկներ, որոնք անսահման նվիրված լինեն կոմունիստական իդեալներին, կարողանան պաշտպանել և բազմապատկել մեր սոցիալական, բարոյական և մշակութային մեծ արժեքները։

Կուսակցությունը և ժողովուրդը մեծ հույսեր են դնում երիտասարդության վրա, որը լի է եռանդով, ծարավի է փոփոխությունների, սրությամբ է հակազդում թերություններին։ Երիտասարդներին պետք է հնարավորություն տալ իրենց լիովին դրսևորելու ինքնուրույն աշխատանքով։ Ժամանակը գործունեության լայն ասպարեզ է բացում կոմերիտմիության՝ երիտասարդության մարտական, լուրջ գործեր փնտրող, գրասենյակամոլությունից և կազմակերպամոլությունից զերծ, իսկական առաջատարի համար։

Կենտրոնական կոմիտեն դիմում է ՍՄԿԿ անդամներին։ Ընկեր կոմունիստնե՛ր, ձեր կյանքի ապրած յուրաքանչյուր օրով հաստատեցեք, որ գիտակցում եք ու համամիտ եք այն հսկայական քաղաքական պատասխանատվությանը, որ այս բեկումնային ժամանակաշրջանում ընկնում է ՍՄԿԿ-ի՝ որպես երկրի կառավարող կուսակցության վրա։ Հիշե՛ք, որ ժողովուրդը ձեր գործողություններով, ձեր վարքագծով է դատում կուսակցության մասին։

Նախ և առաջ ձեզանից է պահանջվում անձնվեր աշխատանք, համարձակություն, նորարարություն։ Կոմունիստի պարտքն է միշտ և ամեն ինչում վարվել կուսակցական խղճի թելադրանքով, ոչ այլ կերպ։ Մեծապես ձեր անձնական նախաձեռնությունից է կախված այն, թե ինչպես կընթանա հասարակական նորացման պրոցեսը։

Կենտրոնական կոմիտեն դիմում է բոլոր սովետական մարդկանց՝ կոչ անելով լիովին գիտակցելու, որ մեր ամենօրյա աշխատանքը, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ուղիով կատարվող յուրաքանչյուր քայլը ավելի ու ավելի մեծ կշիռ են ձեռք բերում համաշխարհային քաղաքականության մեջ։

Հոկտեմբերի յոթանասնամյակը գալիս է այնպիսի իրադրության մեջ, երբ բուն մարդկային ցեղը դրված է գոյատևման պրոբլեմի առաջ։ Հակասական, բայց միասնական ու փոխկապակցված աշխարհի ապագան կանխորոշվում է այսօր։ Մոլորակը կարող է և պետք է փրկվի միջուկային պատերազմի սպառնալիքից։ Անվտանգության, անկախության և առաջադիմության պայմաններում ապրելը կարող է և պետք է ապահովվի բոլոր ժողովուրդների համար։ Այստեղ ամեն ինչ չէ, որ կախված է մեզանից՝ ՍՍՀՄ-ից, սոցիալիզմից։ Բայց այն, ինչ կախված է, մենք կանենք և կանենք լիովին։

Համաշխարհային քաղաքականության մեջ մեր կուսակցության և պետության կուրսը հետևողականորեն խաղաղասիրական է։ Մենք իրատեսորեն, տոկունորեն ենք մոտենում միջազգային պրոբլեմներին, առաջնորդվելով քաղաքական նոր մտածողությամբ։ Մենք անշեղորեն բանը կհանգեցնենք նրան, որ երրորդ հազարամյակի շեմին պետությունները դեն նետեն միջուկային զենքն ու զրահը, որ թույլ չտրվի զենք դուրս բերել տիեզերք, կրճատվի և ի վերջո ոչնչացվի այն երկրագնդի վրա։

Բայց քանի դեռ միջազգային հետադիմությունը խթանում է սպառազինությունների մրցավազքը, քանի դեռ նա չի հրաժարվել սոցիալական ռևանշի և սոցիալիզմի դեմ ուղղված «խաչակրաց արշավանքների» քաղաքականությունից, ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը անհրաժեշտ ամեն ինչ կանեն մեր հայրենիքի, սոցիալիստական ընկերակցության պաշտպանական հզորությունը պատշաճ մակարդակի վրա պահելու համար։ Սովետական մարդիկ կարող են վստահ լինել. մենք երբեք, ոչ մի պարագայում թույլ չենք տա իմպերիալիզմի ռազմական գերազանցություն։

Մենք մեր երկրի քաղաքական ամբողջ հեղինակությունը, միջազգային ամբողջ ազդեցությունն ի սպաս ենք դնում խաղաղության պայքարին։ Եվ դրանք այնքան ներգործուն կլինեն, որքան լավ ընթանան գործերը մեր տանը, որքան խորը լինի մեր համագործակցությունը եղբայրական սոցիալիստական երկրների հետ։ Սոցիալիզմը և խաղաղությունը անբաժանելի են։ Ինչքան հզոր է սոցիալիզմը, այնքան ամուր է խաղաղությունը։

Թանկագին ընկերնե՛ր։

Մեր ամբողջ հասարակությունը բարիկադի մի կողմում է։ Կուսակցության և ժողովրդի նպատակը նույն նպատակն է։ Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության արմատական շահերը նույն շահերն են։ Ավագ սերունդների, սոցիալիստական շինարարության վետերանների և նրանց երիտասարդ հերթափոխի գործը նույն գործն է։ Յուրաքանչյուր ազգի և ազգության, յուրաքանչյուր հանրապետության, ամբողջ Սովետական Միության ճակատագիրը նույն ճակատագիրն է։

Հոկտեմբերի իդեալները կոչում են աշխատանքի հանուն սովետական ժողովրդի բարօրության, հանուն հայրենիքի բարգավաճման, հանուն սոցիալիզմի և խաղաղության։ Արդ, մի ամբողջության մեջ միավորենք մեր բանականությունը, մեր կամքը, մեր եռանդը։ Այդ անհաղթահարելի ուժը ի սպաս դնենք մեր առջև կանգնած նոր խնդիրների լուծմանը։ Կատարենք ամբողջ նախատեսվածը։ Ըստ արժանվույն շարունակենք Հոկտեմբերի հեղափոխական գործը։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ
ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

գային գործերում մեր դիրքորոշումը՝ պարզ, ազնիվ, արդարացի, բոլոր ժողովուրդների օրինական շահերը հաշվի առնող դիրքորոշումը։ Մոլորակի մարդկանց ճշմարտությունը հասցնել նոր հասարակարգի, սոցիալիզմի՝ որպես կապիտալիզմի այլընտրանքի, մասին։

Անհրաժեշտ է լայնորեն լուսաբանել սոցիալիստական ընկերակցության երկրների նվաճումները, նրանց համագործակցության հրատապ հարցերը, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների գործունեությունը, ժողովուրդների ու երկրների հակաիմպերիալիստական պայքարը։ Ցույց տալ, որ այսօր աշխարհի. և սոցիալական առաջադիմության բախտը ավելի սերտորեն, քան երբևէ, կապված է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի անտեսական ու քաղաքական զարգացման դինամիզմի հետ։

ՀԱՄԿԿԽ-ին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, արտասահմանյան երկրների հետ բարեկամության ու մշակութային կապի սովետական ընկերությունների միությանը հանձնարարված է ինտեգրացիոն կառույցներում և համագործակցության մյուս օբյեկտներում կազմակերպել աշխատանքի, խաղաղության ու բարեկամության էստաֆետի անցկացում՝ ի պատիվ մեծ Հոկտեմբերի 70-ամյակի։ Զարգացնել սոցիալիստական մրցությունը սովետական աշխատավորական կոլեկտիվների և սոցիալիստական երկրների աշխատավորների կոլեկտիվների միջև, կազմակերպել ինտերնացիոնալ աշխատանքային հերթափոխեր, մասնագիտական վարպետության մրցույթներ, փառատոներ ու բարեկամության երեկոներ, ցուցահանդեսներ, համատեղ հասարակական-քաղաքական և կուլտուր-մասսայական միջոցառումներ՝ նվիրված Հոկտեմբերի հոբելյանին։

Նախատեսված են արտասահմանյան լսարաններում Հոկտեմբերի գաղափարների, ՍՄԿԿ-ի ու սովետական պետության ժամանակակից քաղաքականության պարզաբանմանը նպատակամղված մի շարք միջոցառումներ։

Նպատակահարմար է գտնված 1987 թվականի նոյեմբերին Մոսկվայում անցկացնել ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀ Միության Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ հանդիսավոր նիստ՝ նվիրված Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակին։

Մոսկվայում և Լենինգրադում, միութենական և ինքնավար հանրապետությունների մայրաքաղաքներում, երկրամասային ու մարզային կենտրոններում, քաղաքներում ու շրջաններում հանձնարարված է անցկացնել համապատասխան կուսակցական կոմիտեների և ժողովրդական դեպուտատների սովետների հանդիսավոր նիստեր՝ նվիրված Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակին՝ աշխատավորների, հասարակական կազմակերպությունների, բանակի ու նավատորմի ռազմիկների ներկայացուցիչների մասնակցությամբ։

Ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, հիմնարկներում ու ուսումնական հաստատություններում, զորամասերում տեղի կունենան հանդիսավոր ժողովներ՝ ի պատիվ մեծ Հոկտեմբերի 70-ամյակի։

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1987 թվականի մարտի 14-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենում: Քննարկվեցին «Վերակառուցման և կուսակցության կադրային քաղաքականության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումի որոշումների կատարման ուղղությամբ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Զեկուցման շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Գ. Սահակյանը, «Հայէլեկտրաշարժիչ» արտադրական միավորման փականագործ բանվոր ընկ. Վ. Կ. Խաչատրյանը, ՀԿԿ Էջմիածնի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Մ. Մխիթարյանը, Երևանի պետական համալսարանի ռեկտոր ընկ. Ս. Ա. Համբարձումյանը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Հ. Մ. Ոսկանյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Հարությունյանը, Արարատի շրջանի Ա. Խանջյանի անվան կոլտնտեսության կուսկոմիտեի քարտուղար ընկ. Հ. Կ. Սարգսյանը, ՀՍՍՀ ներքին գործերի մինիստր ընկ. Հ. Ս. Ծաhինյանը, ընկ. Կ. Ի. Չերեպանովը, Հայաստանի թատերական գործիչների միության վարչության նախագահ ընկ. Հ. Ն. Ղափլանյանը, «Ռելե» արտադրական միավորման բանվորուհի ընկ. Ս. Թ. Նագիևան, «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. Պ. Մ. Մանվելյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ֆ. Տ. Սարգսյանը, Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի էքսկավատորավարների բրիգադավար ընկ. Պ. Մ. Դավթյանը, ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Օհանյանը, ՀԿԿ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ռ. Ա. Ալեքսանյանը, Հայաստանի գրողների միության վարչության քարտուղար ընկ. Ն. Մ. Ադալյանը, Հայկական ՍՍՀ առևտրի մինիստր ընկ. Մ. Յ. Մկրտչյանը, ՀԿԿ Վարդենիսի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Ս. Գրիգորյանը, Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի պետ ընկ. Հ. Ա. Ղանդիլյանը:

Եզրափակման խոսքով պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Քննարկված հարցի առթիվ Կենտկոմի պլենումը ընդունեց որոշում:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի հրահանգիչ ընկ. Վ. Յա. Գերասիմենկոն:

---

# ՀԱՍՏԱՏԱԿԱՄՈՐԵՆ ԻՐԱԿԱՆԱՑՆԵԼ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ, ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԿԱԴՐԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը ՀԿԿ Կենտկոմի 1987 թվականի մարտի 14-ի պլենումում*

Ընկերնե՛ր:

Ինչպես գիտեք, ընթացիկ տարվա հունվարի 27—28-ը տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը, որը լսեց և քննարկեց «Վերակառուցման և կուսակցության կադրային քաղաքականության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը:

Պլենումը քաղաքական խոշոր իրադարձություն եղավ կուսակցության ու սովետական ժողովրդի կյանքում: Նրա ընդունած որոշումները, վերակառուցման խորացման, պետական, հասարակական ու ներկուսակցական կյանքի հետագա դեմոկրատացման արդի փուլի խնդիրներին համեմատ կադրային քաղաքականության կատարելագործման նախատեսած միջոցառումները հիմնարար նախադրյալներ են ստեղծում երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, մեր հասարակությունը որակապես նոր վիճակի հասցնելու ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի մշակած ստրատեգիական կուրսի իրագործման համար:

ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը այդ կուրսի տրամաբանական զարգացումն է, կուրս, որի հետ սովետական մարդիկ իրավամբ կապում են իրենց կենսական պլանները, երկրի հեռանկարները, սոցիալիզմի, սոցիալական առաջադիմության և խաղաղության բախտը աշխարհում:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ներկա պլենումը քննարկում է հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումների կատարման, վերակառուցման ակտիվացման ու խորացման, կադրերի հետ տարվող աշխատանքի բարելավման, դրա մակարդակի որակական բարձրացման ուղղությամբ:

Մենք պետք է հանգամանորեն, քննադատաբար վերլուծենք սեփական գործունեությունը, վերակառուցման պրոցեսը, կադրային աշխատանքի վիճակը՝ սերտորեն շաղկապված մեր առջև դրված կոնկրետ խնդիրների և ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումների կենսագործման հետ: Մենք պետք է իրատեսորեն գնահատենք գործերի վիճակը, վերակառուցման արդյունքները:

Ընկերնե՛ր: Մեր հանրապետությունը լենինյան կուսակցության ղեկավարությամբ, միասնական սովետական ընտանիքում, հիրավի, պատմական հաջողությունների է հասել սոցիալիստական շինարարության գործում, քաղաքական, տնտեսական, սոցիալական ու հոգևոր զարգացման ասպարեզում: Հանրապետությունը ամբողջությամբ վերցված հաջողությամբ է զարգացել նաև տասներորդ ու տասնմեկերորդ հնգամյակներում, որոնց առաջադրանքները կատարվեցին: Նոր առաջընթաց քայլ է արվել արտադրողական ուժերի զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման ճանապարհին: Էկոնոմիկան զարգացել է բավականաչափ արագ տեմպերով, տեղաշարժեր կան ժողովրդական տնտեսության կառուցվածքի կատարելագործման, հանրապետության ռեգիոնների սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցման, էկոլոգիական պրոբլեմների լուծման գործում: Մեր նվաճումներն այսօրվա պլանների, ապագայի մեր մտահղացումների իրացման ամուր հիմքն են:

Բայց նվաճումները, որքան էլ դրանք տպավորիչ լինեն, չեն կարող սքողել ո՛չ մեր թերությունները, ո՛չ էլ սխալներն ու վրիպումները:

Այն բոլոր բացասական պրոցեսները, դժվարություններն ու չլուծված պրոբլեմները, լճացման ու սոցիալիզմին խորթ մյուս երևույթները, որոնք բացասաբար են ազդել էկոնոմիկայի, սոցիալական ու հոգևոր ոլորտների վրա, այն ամենը, ինչ քննադատվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում, տեղ են գտել նաև մեզանում:

Կենսագործունեության տարբեր ուղղություններում, իրոք, կան բարդ պրոբլեմներ, դժվարություններ ու թերություններ, որոնք անհետաձգելի լուծում և հաղթահարում են պահանջում: Նորամուծությունների նկատմամբ նվազ ընկալունակությունը և անճկունությունը ամբողջությամբ վերցված բնորոշ են նաև հանրապետության էկոնոմիկային: Արտադրանքի որակը, տեխնիկական մակարդակը միշտ չէ, որ համապատասխանում են արդի պահանջներին: Բացասական պրոցեսները անդրադարձել են նաև սոցիալական ոլորտի վրա: Ոչ լիովին են իրացվել բնակարանային պայմանների, առևտրի, կենցաղի, բժշկական սպասարկման բարելավման, մի շարք այլ պրոբլեմների լուծման հնարավորությունները: Շատ կադրերի մոտ յուրօրինակ խլություն էր առաջացել սոցիալական հարցերի նկատմամբ: Ամենուրեք չէ, որ ակտիվորեն էր պայքար մղվում անաշխատ եկամուտների, սոցիալիստական սեփականության հափշտակումների դեմ, թույլ էին տրվում օրենքների նկատմամբ քամահրական վերաբերմունքի, աչքակապության և կաշառակերության փաստեր: Սոցիալական ժանգակալման տարրերը թափանցել էին մեր կյանքի տարբեր ոլորտներ՝ թուլացնելով մարդկանց մի մասի հետաքրքրությունը հասարակական գործերի նկատմամբ, հանգեցնելով ընդարմության ու վատատեսության, աշխատանքի բարոյական խթանների դերի իջեցման, սպառողական հոգեբանության տարածման: Բարոյական արժեքների թերագնահատումը սնուցող հող էր դառնում հանցագործության համար:

Այս ամենի դեմ հանրապետական կուսակցական կազմակերպությունն իհարկե պայքարում էր, բայց օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառների բերումով մենք հարկ եղած և ցանկալի արդյունքների չհասանք:

Կյանքը, պրակտիկան ցույց են տվել, որ անկարելի է հաղթահարել այդ երևույթները առանց արմատական շրջադարձի, առանց սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, մեր կենսագործունեության բոլոր ոլորտների խորագնա վերակառուցմանն ուղղված, բնույթով հեղափոխական միջոցառումների իրականացման:

Դրանում մենք համոզվեցինք ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից և կուսակցության XXVII համագումարից հետո կատարած աշխատանքի փորձով: Վերակառուցման, արագացման, նորացման կուսակցության կուրսի իրացումը դրական արդյունքներ է տալիս, գործերի վիճակը ռեալ կերպով փոխում է դեպի լավը, հանգեցնում հասարակության կյանքի արմատական առողջացման:

Հանրապետությունում գնալով ավելանում են այնպիսի կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները, որոնց համար բնորոշ են դառնում գործերի վիճակի օբյեկտիվ, ինքնաքննադատական գնահատականը, աշխատանքում ձևականությունից ու շաբլոնից հեռանալը, պրոբլեմների լուծման ոչ սովորական ուղիների, տնտեսական, կազմակերպչական ու գաղափարախոսական աշխատանքի նոր մեթոդների համարձակ որոնումը:

Այս կապակցությամբ կարելի է նշել վերակառուցման առաջին դրական արդյունքները, նոր ձևով աշխատելու կուսակցական շատ կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների փորձը Երևան, Լենինական, Կիրովական քաղաքներում, Էջմիածնի, Ախուրյանի, Սիսիանի, Ապարանի և այլ շրջաններում:

Աշխատանք է տարվում վերափոխելու ժողովրդական տնտեսության նյութատեխնիկական բազան՝ գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա այն վերակառուցելու ուղղությամբ: Փոփոխվում է ինվեստիցիոն քաղաքականությունը: 1987 թվականի սկզբից բոլոր ձեռնարկություններն ու միավորումներն անցել են տնտեսավարման նոր ձևերի: Մի շարք ճյուղեր, ձեռնարկություններ ու միավորումներ աշխա-

* Տպագրվում է կրճատումներով:

տում են լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում: 28 ձեռնարկություններում մտցված է արտադրանքի պետընդունում: Ավելի լայնորեն են կիրառվում աշխատանքի կազմակերպման նոր ձևերը, այդ թվում՝ կոլեկտիվ և ընտանեկան կապալը: Արվել են կոոպերատիվների կազմակերպման առաջին քայլերը: Փոխվել է վերաբերմունքը սոցիալական ոլորտի նկատմամբ: Սկսվել է ավելի շատ ուշադրություն նվիրվել սոցիալական ու կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությանը:

Որպես ակտիվորեն գործող սկզբունքներ են հաստատվում հրապարակայնությունը, ճշմարտացիությունը, անհանդուրժողությունը թերությունների նկատմամբ, գործերի բարելավման ձգտումը: Ավելի սուր, կոնկրետ և գործնական է դարձել քննադատությունը աշխատավորական կոլեկտիվներում, մամուլում, հեռուստատեսությամբ: Ավելի է ամրապնդվում կարգուկանոնը, բարձրանում են կազմակերպվածությունը, պահանջկոտությունն ու կարգապահությունը:

Կենսագործելով «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում գաղափարախոսական աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, կոնկրետ քայլեր են արվում հոգևոր կյանքը վերակառուցելու գործում:

Մի խոսքով՝ մեզանում վերափոխումներ կատարվում են, դրական միտումները զորեղանում: Վերակառուցումն այսօր ոչ թե սոսկ գաղափար է, այլ իրողություն: Այն ամենծավալվում է գործնականորեն, ընդ որում ոչ միայն լայնքով, այլև խորքով: Այս ամենը կոմունիստների, աշխատավորների մեջ բնականաբար ստեղծում է նոր տրամադրություն, ռեալ, պրակտիկ արդյունքներ է տալիս:

Դրա վկայությունն են նաև տասներկուերորդ հնգամյակի առաջին տարվա աշխատանքի արդյունքները: Հանրապետությունում ազգային եկամուտն ավելացել է 3,9 տոկոսով: Արդյունաբերական արտադրության աճը կազմել է 5,6 տոկոս, այդ թվում մեքենաշինությանը՝ 9,4 տոկոս: Աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 4,1 տոկոսով: Մեծացան հացահատիկի, մսի, կաթի, գյուղատնտեսական այլ մթերքների արտադրության և մթերումների ծավալները: Գործարկվեցին նախորդ տարվանից 64 տոկոսով ավելի հիմնական ֆոնդեր: Կատարվեց բնակարանների հանձնման պլանը (1985 թվականի համեմատությամբ հանձնվել է 106 հազար քառ. մետր ավելի), ինչպես նաև դպրոցների, նախադպրոցական հիմնարկների, հիվանդանոցների, պոլիկլինիկաների գործարկման առաջադրանքը:

Բայց կարելի՞ է ասել, թե վերակառուցումը մեզանում ընթանում է այնպես, ինչպես պահանջում է ժամանակը, մեր կուսակցությունը: Պատասխանը միանշանակ է: Ո՛չ, չի կարելի:

Մենք ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի հիմնադրույթների, կուսակցության համագումարի որոշումների կատարման առումով գտնվում ենք դեռևս ճանապարհի սկզբին: Մենք դեռ նոր ենք ձեռնամուխ եղել վերակառուցմանը: Հիմնական անելիքը առջևում է:

Կենտկոմի հունվարյան պլենումը կուսակցությանն ու ժողովրդին զինեց վերակառուցման կուռ կոնցեպցիայով, գործողությունների համակողմանիորեն հիմնավորված ծրագրով: Եվ իրագործելով վերակառուցումը, գնահատելով այդ ուղղությամբ մեր կատարած աշխատանքը, մենք պետք է ելնենք Կենտկոմի հունվարյան պլենումի պահանջներից:

Վերակառուցումը, նշված է ընկ. Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ, լճացման պրոցեսների վճռական հաղթահարումն է, արգելակման մեխանիզմի փշրումը, մեր հասարակության սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հուսալի և արդյունավետ մեխանիզմի ստեղծումը: Կուսակցության ստրատեգիայի գլխավոր իմաստն է՝ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները շաղկապել պլանային էկոնոմիկայի հետ և շարժման մեջ դնել սոցիալիզմի ամբողջ պոտենցիալը:

Արդյոք մենք կարողացե՞լ ենք խնդրին համարժեք վերակառուցվել, հասնել կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի որակապես նոր մակարդակի: Այսօր մենք պետք է ուղղակի ասենք, որ կուտակված պրոբլեմների լուծման և լճացման երևույթների ու դժվարությունների հաղթահարման նպատակով ձեռնարկվող միջոցները և մեր կողմից կատարվող աշխատանքը ամենևին էլ չէ, որ համապատասխանում են դրանց մասշտաբներին ու սրությանը:

Հասարակության վերափոխման նյութական հիմքը, վերակառուցման գլխավոր օղակը էկոնոմիկան է: Էկոնոմիկայի մեջ լճացման երևույթների վճռական հաղթահարում, արտադրության և աշխատանքի խթանման վերակողմնորոշում դեպի որակական, ինտենսիվ զարգացում, գիտատեխնիկական առաջադիմության արագացում, արտադրողականության, որակի բարձրացում, ռեսուրսախնայողություն, պլանավոր-



ման, տնտեսավարման ու կառավարման կատարելագործում, հրաժարում մտածողության պահպանողականությունից և իներցիայից, պայքար անպատասխանատվության, բյուրոկրատիզմի, անկարգապահության ու անկազմակերպվածության դեմ,— այս ամենը պետք է կազմի վերակառուցման էությունը մեր գործունեության այդ կարևորագույն տեղամասում: Սա է մեր առաջնահերթ խնդիրը:

Մի շարք տեղերում կոնկրետ գործը թաղվել է վերակառուցման վերաբերյալ խոսակցությունների մեջ: Առաջվա պես նախատեսվում են շատ միջոցառումներ, սակայն դրանց իրացումով հետևողականորեն և ակտիվորեն չեն զբաղվում: Մի՞թե կարելի է վերակառուցման մասին լրջորեն խոսել այնտեղ, ուր ոչ միայն կոնկրետ աշխատանք չեն ծավալել արտադրության վիճակը արմատապես փոխելու համար, այլև չեն կատարում սահմանված պլանները, իրենց իսկ մշակած միջոցառումները, ստանձնած պարտավորությունները, ուր նույնիսկ զիջում են նվաճած դիրքերը, ուր հանդես է բերվում ինքնահանգստացում, չի հաստատված պատշաճ կարգուկանոն, ընկած է կարգապահությունը:

Այսպես, արդյունաբերական ձեռնարկությունների 8 տոկոսը չի կատարել տասներկուերորդ հնգամյակի առաջին տարվա ապրանքային արտադրանքի իրացման պլանները: Դրանց թվում են Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Է. Գրիգորյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ս. Ավետիսյան), «Հայավտո» միավորումը (նախկին գլխավոր դիրեկտոր՝ ընկ. Ջ. Աբրահամյան, կուսկազմակերպության քարտուղար ընկ. Մ. Հովհաննիսյան), Երևանի ավտոդողերի գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Ա. Սուքիասյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ա. Խաչատրյան), Լենինականի Չկալովի անվան կարի արտադրական միավորումը (դիրեկտոր՝ ընկ. Վ. Համբարձումյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Մ. Հակոբյան), Ալավերդու կարի արտադրական միավորումը (դիրեկտոր ընկ. Մ. Երզնկյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Վ. Լալայան): Յուրաքանչյուր հինգերորդ ձեռնարկություն չի ապահովել պայմանագրային մատակարարումների պլանների կատարումը:

Է՛լ ավելի վատ է աշխատանքի արտադրողականության վիճակը: Աճի պլանների կատարումը չի ապահովել արդյունաբերական ձեռնարկությունների ու միավորումների գրեթե 12 տոկոսը: Այդ թվում Երևանի սարքերի գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Լ. Խաչատրյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Վ. Սաֆարյան), Երևանի ավտոբեռնիչների գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Ա. Գրիգորյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ժ. Մանասյան), Երևանի հիդրոապարատների գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Գ. Սարգսյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ն. Ալեքսանյան), Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Պ. Չախոյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Գ. Դոնապետյան): Կան ձեռնարկություններ, որտեղ աշխատանքի արտադրողականությունը նույնիսկ իջել է:

Անցած տարի հանրապետության արդյունաբերությունն առաջին անգամ չկատարեց արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը:

Շատ ձեռնարկություններ ու կազմակերպություններ չեն օգտագործում տնտեսավարման նոր պայմանների ընձեռած հնարավորությունները, թույլ են ներդնում տնտեսագիտական մեթոդները, շարունակում են տարվա առաջին ամիսների համար պլանային ցածր առաջադրանքներ սահմանելու սխալ պրակտիկան:

Ապրանքաշրջանառության պլանը չի կատարվել ինչպես ամբողջությամբ վերցված հանրապետությունում, այնպես էլ առևտրի մինիստրության ու Հայկոոպի գծով: Չի կատարվել նաև վճարովի սպասարկումների պլանը:

Նոյեմբերյանի շրջանը (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Պետրոսյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Ա. Ղարագյոզյան) թույլ է տվել մսի արտադրության և պետությանը դրա վաճառքի կրճատում, Կալինինոյի շրջանը (շրջկոմի նախկին քարտուղար՝ ընկ. Վ. Եղիազարյան, շրջգործկոմի նախկին նախագահ՝ ընկ. Կ. Ղազարյան) և Սպիտակի շրջանը (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Հ. Մկրտչյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Ս. Մաթևոսյան)՝ կաթի արտադրության, Թալինի շրջանը (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Մանուկյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Գ. Կիրակոսյան) կաթի վաճառքի իջեցում:

Հանրապետության շինարարները չեն ապահովել կապիտալ ներդրումների լրիվ իրացումը և հիմնական ֆոնդերի գործարկման պլանը:

Այս տարվա երկու ամսվա աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ շատ ղեկավարներ լուրջ հետևություններ չեն արել, անցյալ տարվա սխալները չեն վեր-

լուծվել: Մի ամբողջ շարք աշխատավորական կոլեկտիվներ աշխատում են ոչ կայուն, երկաև են եկել մշտապես հետ մնացող ձեռնարկություններ:

Օրինաչափ չէ՞ այն հետևությունը, որ վերոհիշյալ ձեռնարկություններում և շրջաններում չեն ըմբռնել վերակառուցման էությունը, լրջորեն չեն մտածել իրենց պատասխանատվության մասին կուսակցության համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների կատարման համար:

Պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների լրիվ կատարումը պետք է դառնա վերակառուցման առաջին պատվիրանը: Անհրաժեշտ է ուժեղացնել կազմակերպչական աշխատանքը անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվներում, հատուկ ուշադրություն նվիրել բարձրարտադրողական աշխատանքի համար անհրաժեշտ պայմաններ ապահովելուն, տևականորեն հետ մնացող ձեռնարկությունները ճեղքվածքից դուրս բերելուն, նեղ տեղերն ու անհամամասնությունները վերացնելուն:

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է բարձրացնեն վերից-վար բոլոր ղեկավարների անձնական պատասխանատվությունը պլանային կարգապահության, խոսքի ու գործի խստագույն միասնության համար, դիտելով դա որպես տնտեսական կադրերի՝ վերակառուցվելու պատրաստակամության և ընդունակության պարտադիր չափանիշ:

Պլանների թերակատարման, ոչ կայուն աշխատանքի հիմնական պատճառը արտադրական շատ ձեռնարկություններում կազմակերպական ու արտադրատեխնիկական բնույթի լուրջ թերություններն են, ստրատեգիական նշանակության մի շարք չլուծված պրոբլեմների առկայությունը, ալարկոտ վերակառուցումը:

Վերը մենք ասացինք այն մասին, որ հանրապետության էկոնոմիկան զարգանում է բավականաչափ արագ տեմպերով: Եվ դա փաստ է: Բայց նշված արագ տեմպերը հիմնականում էքստենսիվ զարգացման, քանակական աճի արդյունք են: Վերջին տասնամյակում արդյունաբերության մեջ հիմնական ֆոնդերի աճը կազմել է 198 տոկոս: Ընդսմին, արտադրանքի ծավալը աճել է 195 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը՝ 141 տոկոսով:

Ճիշտ համարելով նոր արտադրություններ, հատկապես տարբեր շրջաններում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր ստեղծելու գիծը, և հանրային արտադրության մեջ ամբողջ աշխատունակ բնակչության ներգրավումը դիտելով որպես կարևոր սոցիալական խնդիր, մենք միևնույն ժամանակ պետք է ասենք և այն, որ պատշաճ միջոցներ չեն ձեռնարկվել արտադրության ինտենսիվացման, դրա արդյունավետության բարձրացման ուղղությամբ: Դա ավելի ցայտուն դրսևորվում է գյուղատնտեսության մեջ: Այստեղ հիմնական ֆոնդերի աճի տեմպերը մեծապես գերազանցում են արտադրության ծավալների աճի տեմպերին: Առանձին շրջաններում արտադրական ֆոնդերի և աշխատանքի էներգազինվածության մեծ աճի պայմաններում գյուղատնտեսական մթերքների արտադրության քիչ թե շատ զգալի ավելացման չեն հասել:

Իսկ չէ՞ որ այդ մասին քանիցս խոսվել է: Սակայն անհրաժեշտ հետևություններ չեն արել և հարկ եղած միջոցները չեն ձեռնարկել ո՛չ հանրապետության պետպլանը, ո՛չ մինիստրություններն ու գերատեսչությունները, ո՛չ էլ ձեռնարկությունների, միավորումների, տնտեսությունների ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունները:

Արտադրության ինտենսիվացումը, արդյունավետության բարձրացումը անհնար են առանց արտադրական ապարատի նորացման, բարձրարտադրողական նոր տեխնիկայով ու տեխնոլոգիայով զինելու, գիտատեխնիկական առաջադիմության արագացման: Արդյոք վերակառուցվե՞լ են մեր տնտեսական աշխատողները, արդյոք սպառիչ միջոցներ ձեռնարկվե՞լ են այդ ուղղությամբ: Պատասխանը բացասական է: Այդ բանը հաստատում են 1985 և 1986 թվականների աշխատանքի արդյունքները: Նոր տեխնիկայի ներդրման պլանները հանրապետությունում ամբողջությամբ վերցված չեն կատարվել: Արդյունաբերական նոր արտադրատեսակների արտադրության և հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման 196 միութենական առաջադրանքից լրիվ ծավալով կատարվել է 162-ը կամ 82,7 տոկոսը: Այնքան էլ շատ չեն այն աշխատավորական կոլեկտիվները, որտեղ լիովին իրացրել են գիտատեխնիկական առաջադիմության արագացման միջոցառումները: Եվ սա, ընկերներ, կուսակցության համագումարից հետո: Կուսակցական կոմիտեներին ու կազմակերպություններին դեռևս չի հաջողվել ստեղծել նոր տրամադրվածություն, նոր վերաբերմունք այդ կարևոր պրոբլեմի նկատմամբ, չի



հաջողվել ակտիվացնել ինժեներական համակազմի, բոլոր մասնագետների աշխատանքը: Շատ տեղերում առաջվա պես գերիշխում է սպասումի հոգեբանությունը, թե որևէ մեկը իրենց համար լրացուցիչ հնարավորություններ կստեղծի, և հետո միայն իրենք կսկսեն լուծել խնդիրները: Բայց չէ՞ որ ինժեներների աշխատանքի հիմնական սկզբունքներից մեկն այն է, որ գործն արվի հենց ձեռքի տակ ունեցածով, չի կարելի սպասել կատարելության: Կատարելությանը հարկավոր է հասնել: Տարբեր արտադրություններում արդեն իսկ առկա պայմաններում կարելի է և պետք է հասնել տեխնիկական ու տեխնոլոգիական այնպիսի լուծումների, որոնք բարձրացնեին թե՛ աշխատանքի արտադրողականությունը և թե՛ արտադրանքի որակը: Հենց սա է ընթացքում վերակառուցվելու էությունը: Ոչ թե սպասել, այլ գործել, արարել և ստեղծել: Ահա թե ինչին պետք է նպատակամղել արտադրության յուրաքանչյուր աշխատողի:

Թվում էր, թե գիտատեխնիկական առաջադիմության արագացման այժմյան պլանները հներից պետք է տարբերվեն իրենց միտվածությամբ, կոմպլեքսայնությամբ, ձեռնարկությունների, շրջանների տնտեսական ու սոցիալական զարգացման լուծվող խնդիրների հետ օրգանական փոխադարձ կապով: Բայց, ցավոք, մեզանում դրան չեն հասել:

Վերջերս Կենտկոմի բյուրոն քննարկեց արդյունաբերության մեջ գիտատեխնիկական առաջադիմության արագացման ուղղությամբ ՀԿԿ Լենինյան շրջկոմի աշխատանքի հարցը: Պարզվեց, որ կուսակցության շրջկոմի մշակած «Գիտատեխնիկական առաջադիմություն—90» ծրագիրը ոչ թե այնպիսի փաստաթուղթ է, որը շրջանի ձեռնարկություններին նպատակամղում է դեպի աշխատանքի արտադրողականության, որակի, ռեսուրսախնայողության նոր, ավելի բարձր բնագծեր, այլ ձեռնարկությունների մշակած քննադատության չդիմացող միջոցառումների սոսկ մեխանիկական հավաքածու, միագումար: Բյուրոն կուսակցության Լենինյան շրջկոմի ուշադրությունը հրավիրեց նման մոտեցման անթույլատրելիության վրա և պարտավորեցրեց արմատապես փոխել կուսակցական կոմիտեի վերաբերմունքը այդ կարևոր գործի նկատմամբ:

Հանրապետության մեքենաշինական համալիրը թողարկում է արդյունաբերական արտադրանքի շուրջ 30 տոկոսը: Նրա աշխատողներին հայտնի է կուսակցության համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների առաջադրած խնդիրը՝ հասնել այն բանին, որ մեքենաշինական ձեռնարկությունների կողմից թողարկվող արտադրանքի 80—95 տոկոսը համապատասխանեցվի բարձրագույն համաշխարհային մակարդակին: Իսկ դա պահանջում է վերակառուցում, տեխնիկայի ու տեխնոլոգիայի մակարդակի բարձրացում, այդ ուղղությամբ ինժեներների, բոլոր մասնագետների աշխատանքի ակտիվացում, նրանց աշխատանքի կազմակերպման և վարձատրության նոր ձևերի ակտիվ ներդրում, լենինգրադցիների փորձի լայն արմատավորում: Իսկ ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մեքենաշինության ոչ մի ձեռնարկությունում այդ գործը առայժմ այնպես չի ծավալված, ինչպես դա պահանջում են գիտատեխնիկական առաջադիմության արագացման շահերը: Արդյոք դրա հետևանքը չէ՞ նաև այն, որ 1986 թվականին մեր հանրապետությունում մեքենաշինական համալիրի արտադրանքի նորացման 5,6 տոկոս առաջադրանքի դիմաց նորացման տոկոսը կազմեց ընդամենը 5,2:

Կուսակցության շրջկոմ-քաղկոմները, սկզբնական կուսկազմակերպություններն իրենց ուշադրության կենտրոնում չեն պահել այս հարցերը և հարկ եղած միջոցները չեն ձեռնարկել առաջադրված խնդրի կատարումն ապահովելու համար:

Արդյունաբերության մեջ մեքենաների ու սարքավորումների զգալի մասը շահագործվում է նորմատիվ ժամկետներից ավելի: Դա իջեցնում է արտադրության արդյունավետությունը, մեծացնում նորոգման համար պահանջվող աշխատանքային, նյութական ու ֆինանսական միջոցների ծախսումները: Հանրապետության արդյունաբերության մեջ տեղակայված մեքենաների ու սարքավորումների 8,3 տոկոսը 1985 թվականի ավարտին շահագործման մեջ էր գտնվում 20 տարուց ավելի: Սարքավորումների առանձին տեսակների գծով դա հասնում է 15—20 տոկոսի: Հատկապես անհանգստացնում է մեքենաշինական ձեռնարկությունների սարքավորումների անբավարար տարիքային ստրուկտուրայի փաստը: 20 տարուց ավելի Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանում շահագործվում է մետաղահատ հաստոցների 34,7 տոկոսը, Չարենցավանի գործիքաշինական միավորումում՝ 24,3 տոկոսը, «Էլեկտրասարք» արտադրական միավորումում՝ 23 տոկոսը և այլն:

Իսկ ի՞նչ է արված հիմնական արտադրական ֆոնդերի ակտիվ մասի նորացումն արագացնելու համար: 1985 թվականի համեմատությամբ տեխնիկական վերազինմանն

ուղղված միջոցները պլանային կարգով փոքր-ինչ ավելացվել են, բայց չեն իրացվել: ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում այդ միջոցները իրացվել են 92 տոկոսով, սարքաշինության մինիստրության ձեռնարկություններում՝ 78,8 տոկոսով, քիմիական մեքենաշինական մինիստրությանը՝ 54,7 տոկոսով: Ավելորդ չի լինի ասել, որ վերջին երկու ճյուղերում անցած տարի տեխնիկական վերազինման նպատակով իրացվել են ավելի քիչ միջոցներ, քան 1985 թվականին, իսկ հաստոցաշինական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները նույնիսկ ունեին հիմնական ֆոնդերի նորացման ավելի փոքր պլան, քան 1985 թվականին:

Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Կ. Տեր-Հակոբյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ի. Թերզյան), ֆոնդերի նորացման 4,5 տոկոս պլանի դիմաց նորացրել է 2 տոկոսը: Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Տ. Մխիթարյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Է. Մաղոյան) 7 տոկոս պլանի դիմաց նորացրել է ֆոնդերի 2,3 տոկոսը, Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանը (դիրեկտոր՝ ընկ. Ա. Սարգսյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ռ. Հովսեփյան) 3,1 տոկոսի դիմաց՝ 2,6 տոկոսը, «Էլեկտրասարք» միավորումը (դիրեկտոր՝ ընկ. Ա. Կիլիկյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ա. Մովսիսյան) 12 տոկոսի դիմաց՝ 6,4 տոկոսը:

Արտադրանքի պետընդունումը երևան հանեց արդյունաբերական ձեռնարկություններում ու միավորումներում ինչպես արտադրության կազմակերպման, այնպես էլ տեխնոլոգիայի արատներ, տնտեսական ղեկավարների և ինժեներային ծառայությունները գլխավորող մասնագետների աշխատանքի լուրջ թերություններ՝ կոնստրուկտորական ու տեխնոլոգիական կարգապահության ամրապնդման, ստանդարտի պահանջների կատարման գործում: Այժմ, երբ պահանջները խստացվել են, բանվորները սկսել են ավելի բարեխղճորեն կատարել իրենց պարտականությունները, առավել ցցուն է դարձել առանձին ձեռնարկությունների տեխնիկական ու տեխնոլոգիական հետամնացությունը: Եվ պատահական չէ, որ պետընդունման անցնելուց հետո պլանների կատարումը ձախողած ձեռնարկություններից առավել վատ ցուցանիշներ ունեին վերոհիշյալները: Ահա թե ինչի են հանգեցնում ձեռնարկությունների ղեկավարների անհոգությունը, աննկունությունը և անպատասխանատվությունը գիտատեխնիկական առաջադիմության արագացման, արտադրության վերակառուցման և տեխնիկական վերազինման գործում:

ՍՄԿԿ Կենտկոմը բացառիկ կարևոր նշանակություն է տալիս արտադրանքի պետընդունման ամրապնդման, տնտեսական ու քաղաքական այդ խոշոր քայլի հեղինակության բարձրացման նպատակին ուղղված ջանքերի մեծացմանը: Ուստի հանրապետության կառավարությունը, մինիստրություններն ու գերատեսչությունները և առաջին հերթին պետստանդարտը, կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պարտավոր են ապահովել պետընդունման բարձր արդյունավետությունը, հաստատակամորեն և հետևողականորեն ծավալել արտադրանքի որակի բարելավման աշխատանքը՝ նախ և առաջ մեքենաշինական ձեռնարկություններում: Կուսակցական կոմիտեները պետք է այս հարցերում սկզբունքային դիրք գրավեն, կուլ չգնան գերատեսչական ու տեղայնական շահերին:

Մեզ չի կարող չանհանգստացնել այն փաստը, որ վերջին տարիներս մեր հանրապետությունում շատ ձեռնարկություններ զիջում են դիրքերը արտադրանքի որակի հարցում: Դրա հետևանքով 1986 թվականին որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի տեսակարար կշիռը ապրանքային արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ կազմեց 13,9 տոկոս՝ 1985 թվականի 15,2 տոկոսի դիմաց: Մենք առաջին անգամ պլանը չկատարեցինք այդ ցուցանիշով: 1986 թվականին 192 միավորումներ ու ձեռնարկություններ անորակ արտադրանք թողարկելու համար ենթարկվել են ավելի քան 9,7 միլիոն ռուբլու պատժատուգանքի:

Բնակչությանը չի բավարարում պետագրոարդի (նախագահի տեղակալ՝ ընկ. Ա. Մելքոնյան) վերամշակող ճյուղերի կողմից թողարկվող արտադրանքի առանձին տեսակների որակը: Դեռևս շատ բողոքներ է հարուցում հացամթերքների մինիստրության որոշ ձեռնարկությունների թողարկած հացի որակը (մինիստր՝ ընկ. Ռ. Շահբազյան):

Իսկ որքա՞ն նյութական ու բարոյական վնասներ ենք կրում շինարարության վատ որակի պատճառով: Ընդ որում, այստեղ անբավարար որակը թե՛ կատարողների՝ հենց շինարարների անբարեխղճության, թե՛ նախագծերի ցածր որակի և թե՛ հեղի-



նակային թույլ հսկողության հետևանքն է: Այս մասին մեկ անգամ չէ, որ ասվել է: Իսկ տեղական սովետները շարունակում են շահագործման ընդունել այնպիսի օբյեկտներ, որոնք կառուցված են ցածրորակ, թերություններով: Հանրապետության պետշինը (ընկ. Լ. Բեգլարյան) իր հերթին գործուն միջոցներ չի ձեռնարկում:

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները արտադրանքի և աշխատանքի որակի բարձրացումը պետք է դիտեն որպես վերակառուցման ամենակարևոր խնդիրներից մեկը: Սա թե՛ տնտեսական և թե՛ քաղաքական կարևորության խնդիր է:

Անհնար է արտադրության ինտենսիվացման հասնել առանց առկա ամբողջ արտադրատեխնիկական, նյութական ու էներգետիկ ռեսուրսների լիակատար և արդյունավետ օգտագործման:

Մեր մի ամբողջ շարք ձեռնարկություններում վիճակը վատ է թե՛ գործող կարողությունները օգտագործելու և թե՛ նախագծային կարողությունները ժամանակին յուրացնելու գործում:

Կառուցում ենք նոր ձեռնարկություններ, դրանք ընդլայնում, վերակառուցում, տեխնիկապես վերազինում, իսկ ահա դրանց կարողությունները նորմատիվային ժամկետներում չենք յուրացնում: Վերջին երկու հնգամյակներում գործարկված, ընդլայնված և վերակառուցված ձեռնարկությունների շուրջ 20 տոկոսը 1985 թվականին դեռևս չէր հասել արտադրանքի թողարկման նախագծային ծավալի 50 տոկոսին:

Սա հանգեցնում է ֆոնդահատույցի նվազեցման, ուղղակի տնտեսական կորուստների: Արդյունաբերության առկա կարողությունները ոչ լրիվ օգտագործելու հետևանքով մենք ամեն տարի մեզ զրկում ենք 300 միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանքի թողարկման հնարավորությունից:

Մեզ չի կարող բավարարել նաև տրանսպորտային միջոցների օգտագործումը: Կատարելագործման կարիք ունի հասարակական տրանսպորտի կազմակերպական կառուցվածքը: Դանդաղ են կրճատվում ավտոտրանսպորտի դատարկ վազքը, բեռնման-բեռնաթափման ժամանակ տեղ են գտել երկաթուղային վագոնների պարապուրդներ:

Շատ ձեռնարկություններում առաջվա պես տեղ են գտնում էլեկտրաէներգիայի, վառելիքի և հումքի գերածախսի փաստեր: Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանը անցյալ տարի թույլ է տվել 8,1 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի և 17,3 գիգակալորիա ջերմաէներգիայի գերածախս: Շոշափելի տեղաշարժեր չկան ռեսուրսախնայող տեխնոլոգիաների ներդրման գործում: Չնայած չտեղակայված սարքավորումների գերպլանային պաշարների իջեցմանը, 1987 թվականի հունվարի 1-ի դրությամբ ամբողջ հանրապետությունում դրանք կազմեցին 28,8 միլիոն ռուբլի:

Եվ, որ մտահոգություն է պատճառում՝ կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների հանդուրժողական վերաբերմունքն է այդ հարցում: Մի՞թե դա համապատասխանում է կուսակցության համագումարի պահանջներին, վերակառուցման խնդիրներին:

Արտադրական ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման վիճակը փաստորեն չի փոխվել: Այդ նպատակներին հատկացված միջոցները չեն համապատասխանում առաջադրված խնդիրներին և օգտագործվում են ոչ լրիվ: Արդյունաբերության մեջ, օրինակ, դրանց իրացումը 1986 թ. կազմել է 89,6 տոկոս: Չգիտես, թե ինչու տեսադաշտից դուրս է թողնվել գյուղատնտեսական, տրանսպորտի շատ օբյեկտների վերակառուցման ու տեխնիկական վերազինման հարցը: Մի շարք ձեռնարկություններում վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը կատարվում են հին նախագծերով, մի բան, որ միջոցների անտեղի վատնում է: Մի՞թե սա ինվեստիցիոն քաղաքականության փոփոխման նկատմամբ լուրջ վերաբերմունքի դրսևորում է:

Պետպլանը (ընկ. Հ. Սաղոյան), պետշինը, շինբանկը (ընկ. Ա. Դադայան) պետք է հիմնավորապես վերակառուցվեն, գործով փոխեն ինվեստիցիոն քաղաքականությունը: Անհրաժեշտ է հանգամանորեն խորամուխ լինել յուրաքանչյուր նախագծին և դրա իրացումը թույլ տալ միայն այն պայմանով, որ ապահովվեն արտադրության տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշների ձեռքբերումը, արտադրության որակական փոփոխությունը:

Այս կապակցությամբ հատկապես անհրաժեշտ է ընդգծել բարձրարտադրողական ունիկալ սարքավորումների, հաստոցների և մշակող կենտրոնների օգտագործման պրոբլեմը: Շատ ձեռնարկություններում դրանք աշխատում են լավագույն դեպքում մեկ և քիչ ավելի հերթափոխ: Առհասարակ, մեզանում, ինչպես արդյունաբերության մեջ,

այնպես էլ ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում, ցածր է սարքավորումների օգտագործման գործակիցը:

Անցումը տնտեսավարման նոր պայմանների, լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման ներդրումը մեր տնտեսական աշխատողներից պահանջում է ամենագործուն միջոցները ձեռնարկել, որպեսզի հիմնական ֆոնդերի ակտիվ մասը օգտագործվի բարձր արդյունավետությամբ, լիակատար հատույցով:

Աշխատանքի երկհերթ-եռահերթ ռեժիմի անցնելը արտադրական պոտենցիալի օգտագործումն արմատապես բարելավելու անմիջական ուղին է: Այս մասին, ինչպես գիտեք, ընդունվել է ՍՄԿԿ Կենտկոմի և միութենական կառավարության համապատասխան որոշում:

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, սովետական, տնտեսական մարմինները պետք է յուրաքանչյուր աշխատողի գիտակցությանը հասցնեն ձեռնարկությունները բազմահերթ ռեժիմի փոխադրելու բուն էությունը և ժողովրդատնտեսական նշանակությունը:

Անցումը բազմահերթ ռեժիմի պետք է իրագործվի ոչ թե աշխատողներին ըստ հերթափոխերի մեխանիկորեն վերաբաշխելու միջոցով, այլ խորապես մտածված տնտեսագիտական հաշվարկների հիման վրա, հին, ֆիզիկապես ու բարոյապես մաշված սարքավորումները արտադրությունից հանելու, բարձրարտադրողական միջոցների լրիվ, բազմահերթ բեռնման հիման վրա:

Կուսակցական կոմիտեներն ու տեղական սովետները պետք է գործուն միջոցներ ձեռնարկեն սպասարկման ոլորտը արտադրական ձեռնարկությունների աշխատանքի ռեժիմին համապատասխանեցնելու համար:

Կապիտալ շինարարության պլանների կատարման հիմնական դժվարությունները առաջացել են շինարարական ինդուստրիայի բազայի թուլության, շինարարության ծավալների աճի տեմպերից նրա աճի տեմպերի հետ մնալու պատճառով: Սակայն շինարարական մինիստրություններն ու գերատեսչությունները տարիներ շարունակ հարկ եղած ուշադրություն չեն նվիրում շինարարության սեփական բազայի զարգացմանը, չեն ապահովում պլանային առաջադրանքների կատարումը և օբյեկտների գործարկումը:

Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին շինարարական ինդուստրիայի գծով պակաս են գործարկվել 22,2 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր: Երկաթբետոնե կոնստրուկցիաների արտադրական կարողությունների գործարկումը նախորդ հնգամյակի համեմատությամբ 30 տոկոսով պակաս էր, մինչդեռ շինարարության ծավալները մեծացել էին 11 տոկոսով:

1981—1985 թվականներին հանրապետության շինարարության մինիստրությունում սեփական բազայի գծով հիմնական ֆոնդերի գործարկումը կազմել է միայն 76,5 տոկոս: Լենինականի խոշորապանել տնաշինության գործարանի անորակ նախագծման և կառուցման պատճառով նրա կարողություններն օգտագործվում են նախագծայինի 40,3 տոկոսի մակարդակով: Ցածր է նաև Աբովյանի, Ղափանի երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանների, Երևանի խոշորապանել տնաշինության կոմբինատի հատույցը: Եվ վիճակն այսպիսին է երկար ժամանակ, իսկ մինիստրությունը գործնական քայլեր չի ձեռնարկում դրանք վերակառուցելու, դրությունը շտկելու համար:

Տասներկուերորդ հնգամյակի առաջին տարում նույնպես շինարարության մինիստրությունը ձախողեց շինարարական ինդուստրիայի հիմնական ֆոնդերի գործարկման պլանը: Այդ պլանը կատարվել է ընդամենը 78,4 տոկոսով, չի ապահովվել «Երքիմշին» տրեստի երկաթբետոնե առարկաների գործարանի շահագործման հանձնումը, որի կարողությունը տարեկան 40 հազար խորանարդ մետր է:

«Հայագրոշինը» 1986 թվականին չապահովեց 11,4 հազար խորանարդ մետր հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների կարողությունների գործարկումը, իսկ բազայի զարգացման կապիտալ ներդրումների պլանը կատարվեց 92,5 տոկոսով, հիմնական ֆոնդերի գործարկմանը՝ ընդամենը 52,6 տոկոսով:

Շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը «Արագածի պեռլիտ» գործարանի գծով կապիտալ ներդրումները 1986 թվականին իրացրեց ընդամենը 63,3 տոկոսով, «Արթիկտուֆ» արտադրական միավորման գծով՝ 63,7 տոկոսով, Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատի գծով՝ 64 տոկոսով:

Այդ կարևորագույն օբյեկտներում նման վիճակ է ստեղծվել նաև 1987 թվականի սկզբից:

Ահա ձեզ պետական ցածր կարգապահության, անպատասխանատվության և դանդաղ վերակառուցման փաստեր:



Սա՝ շինարարական ինդուստրիայի զարգացման պլանների կատարման մասին: Իսկ ինչպիսի՞ն է ծրագիրը ամբողջությամբ վերցրած: Այն համապատասխանու՞մ է, արդյոք, շինարարության մեջ գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը: Տասներկուերորդ հնգամյակում սեփական շինարարական բազայի զարգացման կապիտալ ներդրումների ծավալը սահմանված է անհամեմատ ավելի մեծ չափով, քան տասնմեկերորդ հնգամյակում: Բայց ծրագրի մեջ արտացոլում չեն գտել շինարարական ինդուստրիայի առաջադիմական տեղաշարժերը: Հիմնականում ամեն ինչ ընթանալու է տեխնիկական ու տեխնոլոգիական նախկին մակարդակով: Շինարարական ինդուստրիայի քանակական աճ կլինի, սակայն որակական փոփոխություններ՝ ոչ:

Մինիստրներ ընկ. ընկ. Ռ. Մելիքյանը, Լ. Ղազարյանը, «Հայագրոշինի» պետ ընկ. Վ. Վիրաբյանը պետք է ամենալուրջ հետևություններ անեն քննադատությունից, վերանայեն իրենց վերաբերմունքը շինարարական ինդուստրիայի սեփական բազայի զարգացման նկատմամբ, արտադրական ձեռնարկությունների վերակառուցման և վերազինման միջոցով հասնեն ռեալ որակական փոփոխությունների, դրա տեխնիկական ու տեխնոլոգիական մակարդակի բարձրացման:

Իր աշխատանքը պետք է վերակառուցի նաև ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Հ. Հայրապետյանը: Նա պարտավոր է ավելի լավ ուղղություն տալ և կոորդինացնել ստորաբաժանումների աշխատանքը, ավելի մեծ հաստատակամություն ու հետևողականություն հանդես բերել շինարարական համալիրի զարգացման խնդիրները լուծելիս: Կենտկոմի շինարարության բաժինը ևս պետք է ուժեղացնի համալիրի աշխատանքի վերահսկողությունը, բարձրացնի պահանջկոտությունը նրա ղեկավար աշխատողների նկատմամբ:

Ստեղծված դրությունը շտկելու համար անհրաժեշտ է շուտափույթ ավարտել «Արագացում» կոմպլեքսային ծրագրի մշակումը, որը նպատակամղված է շինարարական արտադրության արդյունավետության բարձրացմանը, շինարարական ինդուստրիայի ամրապնդմանը և արմատական տեխնիկական վերազինմանը:

Ընկերնե՛ր: Ինչպես նշել է ընկ. Մ. Ս. Գորբաչովը, վերակառուցման մեջ ևս կան այնպիսի պրոբլեմներ, որոնք գերադաս նշանակություն ունեն: Այն, ինչ մենք անում ենք, պետք է հանգեցնի մեր ժողովրդի կենսապայմանների բարելավմանը: Այժմ մենք պետք է լուծենք մի շարք հրատապ պրոբլեմներ: Դրանց թվում են պարենային ծրագիրը, բնակարանային պրոբլեմը, մեր մարդկանց կյանքի սոցիալական պայմանների առավել կարգավորման հարցերը, անհրաժեշտ ապրանքներով, բժշկական լավ սպասարկումով, ծառայությունների լայն ոլորտով բնակչության ապահովումը:

Ձեզ հայտնի է, որ տևականորեն մեր հանրապետության արտադրական ինֆրակառուցվածքի զարգացումը ընթացել է ավելի արագ տեմպերով, քան սոցիալական ոլորտինը: Չնայած Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, հանրապետության Մինիստրների խորհրդի ձեռնարկած միջոցներին, այդ անհամամասնությունը դեռևս չի հաղթահարված: Մի շարք ցուցանիշներով մենք հետ ենք մնում միջին միութենական մակարդակից: Տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակներին չապահովվեցին ինչպես սոցիալական ոլորտի առանձին ուղղությունների զարգացման՝ կապիտալ ներդրումների աճի առաջանցիկ տեմպերը՝ միջին միութենական տեմպերի համեմատությամբ, այնպես էլ այդ ներդրումների լրիվ իրացումը, սոցիալ-կուլտուրական ու կենցաղային օբյեկտների շինարարության պլանների կատարումը: Այդ պատճառով, Միության մասշտաբով մեկ շնչի բնակարանային ապահովումը միջին հաշվով կազմում է 14,6 քառակուսի մետր, իսկ մեր հանրապետությունում՝ 13,6 քառակուսի մետր: Ապահովվածությունը նախադպրոցական հիմնարկներով համապատասխանաբար կազմում է 59 և 40 տոկոս:

Վիճակն ավելի վատ է առողջապահության բնագավառում: Մեր հանրապետությունը զգալիորեն հետ է մնում աշխատավորների բուժսպասարկման պահանջմունքների բավարարման գծով: 10 հազար բնակչին ընկնող հիվանդանոցային մահճակալների թիվը առ 1-ը հունվարի 1987 թվականի կազմում է 87, Միության 131-ի դիմաց: Թույլ է զարգացած ծննդատների և մանկական հիվանդանոցների ցանցը: Հանրապետության 10 հազար բնակչին ընկնում է 41 հիվանդանոցային մահճակալ, միութենականի 84,8-ի դիմաց: Ընդ որում, ինչպես տասներորդ, այնպես էլ տասնմեկերորդ հնգամյակում չեն կատարվել առողջապահության օբյեկտների գործարկման առաջադրանքները: Այստեղ ուղղակի մեղք ունեն շինարարները և պատվիրատուն՝ առողջապահության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Է. Գաբրիելյան):

Չի հաջողվել հաղթահարել նաև առևտրական սպասարկման հետ մնալը: Երկ-

րում մեկ մարդուն միջին հաշվով հասնում է 1185 ռուբլու ապրանքաշրջանառություն, իսկ մեր հանրապետությունում՝ 976 ռուբլու: Որոշ պարենային և ոչ պարենային ապրանքների նկատմամբ բնակչության հարաճուն պահանջմունքը բավարարվում է ոչ լիովին:

Նման իրավիճակում սոցիալական ոլորտի պրոբլեմների նկատմամբ մեզանում արմատական փոփոխություն չի կատարվել: 1986 թվականին հանրապետությունում ընդհանուր առմամբ ձախողվել է պետական միջոցների հաշվին կառուցվող ակումբային հիմնարկների և պրոֆտեխուսումնարանների շինարարության ու գործարկման պլանը (համապատասխանաբար՝ 56 տոկոս և 71 տոկոս): Առանձին շրջաններ չեն ապահովել բնակարանների, դպրոցների, մանկական նախադպրոցական հիմնարկների, հիվանդանոցների ու պոլիկլինիկաների, առևտրի, հասարակական սննդի օբյեկտների շինարարության ու գործարկման պլանների կատարումը:

1986 թվականին Աշտարակի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Մ. Խաչատրյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Կ. Զաքոյան) իրացվել է ակումբային հիմնարկների շինարարությանը հատկացված միջոցների ընդամենը 41 տոկոսը և ապահովվել նախատեսված գործարկման պլանի ընդամենը կեսը: Նաիրիի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Մ. Հայրապետյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Խ. Սաֆարյան) ձախողվել է բնակարանների ու մանկապարտեզի շինարարության պլանի կատարումը, իսկ հիվանդանոցների շինարարության կապիտալ ներդրումներն իրացվել են միայն 57,7 տոկոսով: Մասիսի շրջանում (շրջկոմի նախկին քարտուղար՝ ընկ. Պ. Սաֆյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Ա. Հակոբյան) XXII կուսհամագումարի անվան սովխոզի ակումբը կառուցվում է ահա արդեն ինը տարի, և հայտնի չէ, թե երբ շահագործման կհանձնվի: Ի դեպ, դա շրջանում կառուցվող միակ ակումբն է:

Հին ձևով աշխատելու, սոցիալ-կուլտուրական ու կենցաղային օբյեկտների շինարարությունը մնացորդային սկզբունքով պլանավորելու, սոցիալական զարգացման հարցերը լուծելիս ոչ կոմպլեքսային մոտեցում հանդես բերելու ակնառու օրինակ ունենք Բաղրամյանի շրջանում:

Առաջին հերթին անհրաժեշտ է շրջանը բնակեցնել: Եվ սա, բնականաբար, պահանջում է բնակարանների, սոցիալ-կուլտուրական և կենցաղային անհրաժեշտ օբյեկտների շինարարության արագացում:

Սակայն գլխավոր կապալառուն՝ «Հայգյուղշինը» (պետ՝ ընկ. Մ. Գևորգյան) ավանների շինարարությունն իրականացնում է ջրատնտեսական շինարարությունից զգալիորեն ցածր տեմպերով: Աշխատուժի բացակայության պատճառով հնարավոր չէ արդյունավետ օգտագործել ստեղծված պոտենցիալը:

Կուսակցության շրջկոմը (քարտուղար՝ ընկ. Հ. Մինասյան), շրջսովետի գործկոմը (նախագահ՝ ընկ. Բ. Ավչյան) պատշաճ կերպով չեն գնահատել ստեղծված դրության սրությունը, չեն հասել այն բանին, որ պլանները ճշգրտվեն սոցիալական օբյեկտների շինարարության համար կապիտալ ներդրումներն ավելացնելու ուղղությամբ, կազմակերպական ու տնտեսական պայմաններ չեն ստեղծել սովխոզները բնակեցնելու, անհատական բնակարանային շինարարությունն ընդլայնելու, աշխատունակ բնակչության չզբաղված մասը հանրային արտադրության մեջ ներգրավելու համար: Մի՞թե այս ամենը վկայում է լուրջ վերակառուցման մասին:

Ակտիվ սոցիալական քաղաքականությունը գլխավոր՝ մարդկային գործոնի աշխատանքային, քաղաքական և քաղաքացիական ակտիվության բարձրացման հուժկու միջոցներից մեկն է:

Սոցիալական ոլորտի զարգացմանն ուղղված ինվեստիցիան յուրահատուկ ինվեստիցիա է՝ նպատակամղված ամենագլխավոր ռեսուրսի՝ մարդու զարգացմանը՝ ինվեստիցիա՝ ուղղված մարդու թե՛ հոգևոր և թե՛ մասնագիտական հարստացմանը, նրա ստեղծարար հնարավորությունների ընդլայնմանը: Անհրաժեշտ է արմատապես փոխել վերաբերմունքը սոցիալական ոլորտի զարգացման հարցերի նկատմամբ, հաղթահարել առանձին կադրերի անհաղորդությունը սոցիալական հարցերում: Հարկավոր է սրությամբ արձագանքել նման փաստերին, դրանք ենթարկել սկզբունքային կուսակցական քննադատության: Այս կապակցությամբ հարկ է հիշեցնել «Կոմունիստ» թերթում տպագրված հոդվածը, որտեղ արդարացիորեն քննադատվում է Գուգարքի կուսշրջկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Բաղդասարյանի և ժողովրդական դեպուտատների շրջսովետի գործկոմի նախագահ ընկ. Ա. Սաֆարյանի այդ հարցերի նկատմամբ դրսևորած վերաբերմունքը: Նրանց հետ մեկտեղ պետք է քննադատել նաև այն հանրապետական մարմիններին, որոնք չեն պլանավորել շրջանում



անհրաժեշտ սոցիալ-կուլտուրական ու կենցաղային մի շարք օբյեկտների շինարարություն:

Ընկերնե՛ր: Պարենային պրոբլեմի լուծման հիմնական օղակում՝ ագրոարդյունաբերական համալիրում, մենք պետք է հասնենք կտրուկ շրջադարձի դեպի ռեսուրսային պոտենցիալի լրիվ, գրագետ և արդյունավետ օգտագործումը, գյուղում սոցիալական քաղաքականության ակտիվ իրագործումը:

Հարկավոր է կողմնորոշվել դեպի նոր մոտեցումներ և աշխատանքի արտադրողականության նոր մակարդակ, լրջորեն ու եռանդագին վարել գործերը և ավելի արագ իրացնել պարենային ծրագիրը:

Տասներկուերորդ հնգամյակի առաջին տարում հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի աշխատանքում որոշ դրական տեղաշարժեր կատարվել են: Գյուղատնտեսության արտադրանքի ծավալը՝ տնտեսությունների բոլոր կատեգորիաներում, աճել է 2,5 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը՝ 5,1 տոկոսով, իր առաջադրանքները կատարել է նաև վերամշակող ճյուղը:

Սակայն այդ տեղաշարժերը բնավ էլ չեն վկայում, թե համալիրի գործունեությունը ձեռք է բերում պատշաճ կայունություն, որ այստեղ ապահովվում են հարկավոր և առկա պոտենցիալի համեմատ հնարավոր զարգացման տեմպեր, թե արտադրության բոլոր ճյուղերում սովորել են ռացիոնալ օգտագործել պետության հատկացրած հսկայական միջոցները, վերացնել թերություններն ու բացասական երևույթները, որոնք գյուղատնտեսական ցանքատարածությունների, ֆերմաների ցածր մթերատվության, սննդի և մյուս ձեռնարկությունների անարտադրողական աշխատանքի, դաշտերից ու ֆերմաներից մինչև սպառողն ընկած ճանապարհին թույլ տրվող մեծ կորուստների պատճառ են դառնում:

Ահա արդեն մեկ տարի աշխատելով կառավարման նոր կառուցվածքի պայմաններում, օգտվելով տնտեսավարման ավելի ժամանակակից տնտեսական մեխանիզմից, շատ տեղերում չեն կարողացել հասնել արտադրության արդյունավետության, նրա շահութաբերության հարկ եղած բարձրացման, անարտադրողական ծախսերի կրճատման, լիովին օգտագործել աշխատանքի արտադրողականության էական աճի համար բարենպաստ հնարավորությունները:

Ավելին, նոր պայմաններում էլ շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ աշխատում են վնասով, չեն ապահովում իրենց իսկ կազմած պլանների կատարումը: Նրանց գործունեության արդյունքները չեն համապատասխանում արտադրության նյութատեխնիկական հագեցվածության, աշխատանքի էներգազինվածության մակարդակի աճին, այն բոլոր ռեալ պայմաններին, որ արդեն փաստորեն ստեղծված են գյուղում:

Այսօր առաջավոր տնտեսություններում մեկ մարդուն դրամական արտահայտությամբ 4—5 անգամ ավելի շատ արտադրանք է ընկնում, քան միջին հաշվով հանրապետությունում:

Այնտեղ, ուր համարձակորեն են ներդնում գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, աշխատանքի նոր մեթոդները, հմտորեն զուգակցում կոլեկտիվ կապալը, տնտհաշվարկը, ինտենսիվ տեխնոլոգիաները, այնտեղ, ուր հմտորեն են շահագործում հիմնական ֆոնդերը, ամեն հեկտար հողը, ամեն խորանարդ մետր ջուրը, ամեն տոննա պարարտանյութը, ամեն միավոր տեխնիկան, որպես կանոն, ապահովվում են թե՛ աշխատանքի բարձր արտադրողականությունը և թե՛ արտադրության արդյունավետությունը:

Այսօր առաջին պլան են մղվում մարդու գիտելիքները, աշխատասիրությունը և որակավորումը, նրա համոզվածությունը և խիղճը: Ուստի պարենային պրոբլեմը լուծելու համար առաջին հերթին պետք է զբաղվենք գյուղի կադրերով, մշտապես հոգանք նրանց որակավորման աճի, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման մասին, գործնականորեն ապահովենք բրիգադային կապալի, տնտհաշվարկի հմուտ զուգակցումը և ինտենսիվ տեխնոլոգիաների յուրացումը:

Ահա թե որն է հարցի էությունը: Այստեղ էլ հենց ի հայտ են գալիս մեր թերությունները:

Թղթի վրա ամեն ինչ քիչ թե շատ լավ տեսք ունի: Կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատողների մոտ 40 տոկոսը ընդգրկված է կոլեկտիվ կապալի մեջ: Իսկ իրականում արտադրանքի մեկ միավորի համար կենդանի աշխատանքի ծախսումների կրճատում գրեթե չկա:

Օրինակ, Կրասնոսելսկի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Նազինյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Մ. Ալիև) ընդգրկումը աշխատանքի կոլեկտիվ ձևերի մեջ հասնում է 90—95 տոկոսի, իսկ աշխատանքի արտադրողականության ռեալ

բարձրացում, արտադրության ծավալների շեշտակի մեծացում չկա: Նույն պատկերն է նաև Հրազդանի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Դանիելյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Ռ. Պետրոսյան), Թումանյանի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ա. Շահվերդյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Ս. Վարոսյան), Կալինինոյի շրջանում (շրջկոմի նախկին քարտուղար՝ ընկ. Վ. Եղիազարյան, շրջգործկոմի նախկին նախագահ՝ ընկ. Կ. Ղազարյան), Մարտունու շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ա. Ազիզյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Մ. Գալստյան) և այլ շրջաններում:

Վերակառուցման և տնտեսական մեխանիզմի կատարելագործման պայմաններում անհրաժեշտ է հստակորեն սահմանել աշխատանքի ուղիները, ձևերն ու մեթոդները: Հավանաբար յուրաքանչյուրին հասկանալի է, որ առանց հողագործության և անասնապահության աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման աշխատանքի արտադրողականությունը հնարավոր չէ բարձրացնել: Մենք պետք է պատասխան պահանջենք պետագրոարդի ղեկավարներից, թե մինչև երբ է մեր ֆերմաներում գերակշռելու ձեռքի աշխատանքը: Ժամանակը չէ՞, արդյոք, վճռականորեն ձեռնամուխ լինել անասնապահական շենքերի վերակառուցմանը, կոմպլեքսայնորեն մեքենայացնել կովերի կթման, կերի բաշխման, նրանց ավտոմատ ջրման և գոմաղբի հեռացման պրոցեսները:

Բարձր է ձեռքի աշխատանքի տեսակարար կշիռը նաև բուսաբուծության մեջ, առանձնապես բանջարեղենի, ծխախոտի, պտուղների, շաքարի ճակնդեղի մշակության ժամանակ:

ՍՄԿԿ Կենտկոմը հատուկ ուշադրություն է նվիրում արտադրության ղեկավարների բարձր պրոֆեսիոնալիզմին և ամենից առաջ էկոնոմիկայի խոր իմացությանը: Հանրապետությունում անցկացված է տնտեսական ստորաբաժանումների բոլոր կատեգորիաների ղեկավարների ուսուցում:

Ի՞նչ կարելի է ասել վերլուծելով ուսուցման արդյունքները: Կուսակցության առանձին շրջկոմներ ձևականորեն մոտեցան այդ կարևոր գործին: Պետագրոարդն էլ (նախագահի տեղակալ՝ ընկ. Մ. Բաղոյան) իր հերթին հարկ եղածին պես չկազմակերպեց այն: Այդ ամենի հետևանքով ուսուցման դասընթացը շատերի համար փաստորեն ապարդյուն անցավ:

Կենտկոմում անցկացված զրույցը ցույց տվեց, օրինակ, որ Իջևանի, Ղուկասյանի և Ամասիայի շրջանային ագրոարդյունաբերական միավորումների նախագահներ ընկերներ Վ. Փայտյանը, Ս. Քոթանջյանը և Վ. Եղիազարյանը պատկերացում չունեին նոր տնտեսական մեխանիզմի, կոլեկտիվ կապալի և տնտհաշվարկի հիմնական սկզբունքների մասին: Նման գիտելիքներով նրանք հազիվ թե կարողանան պատշաճ մակարդակով ապահովել աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջադիմական ձևերի, կառավարման տնտեսագիտական մեթոդների ներդրումը:

Ընկերնե՛ր: Արագացում չի կարող լինել առանց ինչպես անձնական, այնպես էլ արտադրական պահանջմունքների խթանման ու ապահովման: Իսկ խթանել սպառումը, արտադրանքը մեծ ծավալներով շուկայում իրացնել հնարավոր է միայն նրա բարձր որակի, տեխնիկական մակարդակի ապահովման, դրա սպառողական հատկությունների բարելավման պայմանով: Սա առանձնապես վերաբերում է ժողովրդական սպառման ապրանքներին:

Ցավոք, մեր շուկան դեռ հագեցած չէ նման ապրանքներով: Առևտրական ձեռնարկություններում ու պահեստներում սպառողական ցածր հատկություններ ունեցող և անորակ մի շարք ապրանքների գերկուտակումը, առևտրական ցանցում դրանց պատկառելի առկայությունը դրամական արտահայտությամբ ժողովրդական սպառման ապրանքներով շուկայի հագեցվածության պատրանք են ստեղծում: Իսկ ահա դրանց տարտամ առևտուրը, ապրանքաշրջանառության դանդաղ տեմպերը, դրա պլանների ձախողումը հենց վկայում են, որ իրականում պետքական, բարձրորակ, մոդայիկ ապրանքներ չկան և դրանց պահանջարկը ամենևին էլ բավարարված չէ:

Նույնը կարելի է ասել նաև սպասարկումների մասին: Դրանց բազմազանությունը, ժամանակին և բարձրորակ մատուցումը միշտ էլ պատվիրատու, սպառող կգտնեն: Չէ որ ժողովուրդը ապրանքներ գնելու, վճարովի սպասարկումներից օգտվելու հնարավորություն ունի:

Ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ճյուղերի աշխատողների համար վերակառուցման էությունն այն է, որ նրանք թողարկեն ոչ թե մեծ ծավալներով ամեն տեսակի արտադրանք, այլ կոնկրետ արտադրացուցակով բարձրորակ, սպառողական բարձր հատկություններ ունեցող արտադրատեսակներ, մեծացնեն դրանց արտադրության ծավալները, դրանցով հագեցնեն շուկան:



Բայց հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության ղեկավարությունը, անձամբ մինիստր ընկ. Ա. Գևորգյանը, ճյուղի ձեռնարկությունների շատ ղեկավարներ խնդիրն այդպես չեն ըմբռնել և համապատասխանաբար չեն վերակառուցել իրենց աշխատանքը: Տնտեսավարման նոր մեթոդների անցնելիս ճյուղը ամբողջությամբ վերցված ընթացիկ տարվա առաջին երկու ամսում թույլ է տվել արտադրության ծավալների կրճատում անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ: Բայց պլանները նրանք կատարում են, քանի որ դրանք կազմված են պայմանագրերի հիման վրա և դրանց կատարումը հաշվառվում է ըստ փաստի:

Բայց հարցնենք մինիստրության, համակարգի ձեռնարկությունների ղեկավարներին՝ իսկ ինչու՞ են ձեր պայմանագրերը կնքված փոքր ծավալներով: Այս հարցին նրանք պատրաստի պատասխան ունեն: Ինչքան առևտուրը վերցրել է, այնքան էլ մենք կնքել ենք: Իսկ ահա նրանք համոզիչ պատասխան չունեն այն հարցին, թե ինչու չեն յուրացնում ու չեն թողարկում ռեալ պահանջներին համապատասխանող քանակով հարկավոր ապրանքներ, որպեսզի շատ էլ պայմանագրեր կնքվեն: Այստեղ ասպարեզ են հանվում տարբեր կարգի «օբյեկտիվ» պատճառներ՝ անհրաժեշտ հումքի, նյութերի բացակայություն և այլն: Մասնակիորեն դրան կարելի է համաձայնել: Բայց գլխավոր պատճառն այն է, որ չկա համառություն, եռանդուն, հետևողական աշխատանք, արտադրանքի տեսականու ընդլայնման և որակի բարձրացման ուղիների որոնում: 1986 թվականին չի կատարվել բարելավված որակի ապրանքների և հատկապես մոդայիկ արտադրատեսակների թողարկման պլանը, 1985 թվականի համեմատությամբ թույլ է տրվել անկում: Այդ արտադրանքի ծավալների անկում է թույլ տրվել նաև ընթացիկ տարվա անցած երկու ամսում: Եթե լավ ապրանք չառաջարկես, պարզ չէ՞, որ շատ պայմանագրեր էլ չես կնքի: Այսպես կարելի է անհեթեթության հանգել՝ պայմանագրային պլանները հասցնել զրոյի: Իսկ չէ՞ որ խնդիրը մեկն է՝ ավելացնել լավորակ ապրանքների արտադրությունը, լրիվ ապահովել մարդկանց պահանջմունքները: Չէ՞ որ կան հաստատված հնգամյա և տարեկան պլաններ: Դրանցով են հաշվարկված շահույթը, ապրանքաշրջանառությունը, դրամարկղային պլանը: Պետք չէ աշխատել պլանների ձևական կատարման համար: Բայց բնակչության պահանջմունքները լրիվ բավարարել և Կոմպլեքսային ծրագրի առաջադրանքները կատարել ճյուղի ձեռնարկությունները պարտավոր են: Արտադրության ծավալների նվազեցումը հանգեցնում է անցանկալի հետևանքների, ուղիղ խփում աշխատավորական կոլեկտիվների շահերին: Վատանում են որակական ցուցանիշները, պակասում են շահույթը, աշխատողների աշխատավարձը և այն ամենը, ինչ գործում է ձեռնարկության ինքնաֆինանսավորման, զարգացման ապահովման օգտին:

Իսկ մեզ մոտ ի՞նչ է ստացվում: 1987 թվականին տոնավաճառում թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների իրացրած արտադրանքի ամբողջ ցանկի գծով, նրանց հաշվարկած շահույթը կազմում է 164,6 միլիոն ռուբլի, իսկ ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության հաստատած պլանը 199,6 միլիոն ռուբլի է: Այսպիսով, տարբերությունը 35 միլիոն ռուբլի է: Թեթև արդյունաբերության մինիստրությունն ըստ արտադրական միավորումների (ձեռնարկությունների) շահույթը բաշխելիս թույլ է տվել շեղումներ, որոնք ոչ մի հիմնավորված հաշվարկի ենթակա չեն: Որոշ ձեռնարկությունների շահույթների ավելի ցածր պլան է իջեցված, քան ըստ վաճառված տեսականու հաշվարկված շահույթն է: Միևնույն ժամանակ մի շարք ձեռնարկությունների էլ փաստորեն հաշվարկվածի համեմատ 1,6—2,5 անգամ ավելի աճ է նախատեսված: Ինքնաֆինանսավորման պայմաններում կոլեկտիվների համար միևնույնը չէ, թե իրենց համար ինչպես կսահմանվեն շահույթների պլանները:

Ճյուղում մնացել են ապրանքանյութական արժեքների մնացորդները: Այդ պայմաններում ենթակա ձեռնարկությունների ֆինանսատնտեսական գործունեության բարելավման գործուն միջոցներ ձեռնարկելու փոխարեն մինիստրությունը և ձեռնարկությունների ղեկավարները առաջվա պես պլանավորում և ներմուծում են հումք և նյութեր՝ առանց փոխանցվող մնացորդները հաշվի առնելու:

Իսկ չէ՞ որ համակարգի ձեռնարկությունները 1987 թվականից պետք է անցնեն ինքնաֆինանսավորման: Երբ, ինչպես ասում են, պետք է յուրաքանչյուր կոպեկը հաշվել: Եթե նրանք չվերակառուցեն իրենց աշխատանքը, կկարողանա՞ն արդյոք հաջող աշխատել: Իհարկե՝ ոչ: Մինիստրության ղեկավարությունը, ձեռնարկությունների և կուսակցական կազմակերպությունների ղեկավարները պարտավոր են ամենագործուն միջոցներ ձեռնարկել ստեղծված վիճակը շտկելու համար: Այն շրջանների կուսակցական կոմիտեները, որտեղ կան ճյուղի ձեռնարկություններ ու միավորումներ, պետք է բարձրացնեն պահանջկոտությունը կադրերի նկատմամբ՝ տնտեսական

գործունեության արդյունքների համար, ընդհուպ զբաղվեն կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ակտիվացմամբ:

Ընկերնե՛ր, բնակչության պահանջմունքների բավարարման գործում շատ թերություններ բացատրվում են մեր առևտրական կազմակերպությունների անբավարար աշխատանքով: Առևտրի մինիստրությունը և Հայկոոպը դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը փոփոխված իրավիճակին համապատասխան: Նրանց աքիլեսյան գարշապարը առաջվա պես մնում է մեծածախ բազաների աշխատանքը, որոնք հաճախ արգելակում են ապրանքաշրջանառության արագացումը, արտադրության հետ գործարար հարաբերությունների կարգավորումը: Ոչ սակավ նրանց մեղքով վաճառասեղաններին չեն հայտնվում աշխատավորներին հարկավոր և մեր արդյունաբերության կողմից մեծ քանակությամբ արտադրվող ապրանքներ: Իսկ առևտրի մինիստր ընկ. Մ. Մկրտչյանը և Հայկոոպի նախագահ ընկ. Լ. Հակոբյանը հարկ եղած միջոցները չեն ձեռնարկում բազաների ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու համար: Մեր առևտրական կազմակերպությունները ակտիվություն չեն ցուցաբերում իրենց և արդյունաբերական ձեռնարկությունների միջև ուղղակի կապերի հաստատման գործում: Իսկ նման կապերը տնտեսավարման նոր պայմաններում կարող են երկուստեք օգտակար լինել: Խոսելով առևտրի մասին, չի կարելի չասել, որ առևտրի կանոնների խախտումները, թերակշռումը, հաշվի մեջ խաբելը շարունակում են խոր զայրույթ պատճառել մեր աշխատավորներին, իսկ առևտրի մինիստրությունը և Հայկոոպը ազդու միջոցներ չեն ձեռնարկում:

Եվս մի հարցի մասին: Պետք է օպերատիվորեն արձագանքել ապրանքների դեֆիցիտին: Այստեղ հարկավոր է հանդես բերել թե՛ պատասխանատվություն և թե՛ հոգատարություն գնորդների նկատմամբ: Դա առևտրի ղեկավարների ուղղակի պարտքն է: Նոր տարվա նախօրեին Երևանի շատ գնորդներ մեզ զանգատվում էին, որ, օրինակ, չկան շոկոլադե կոնֆետներ: Եվ դա այն դեպքում, երբ հրուշակեղենի մակարոնի կոմբինատը պահանջարկը բավարարելու բոլոր հնարավորությունները ունի: Այս կապակցությամբ արդարացի կլինի քննադատությունը նաև շրջանային կուսակցական կոմիտեների և շրջգործկոմների հասցեին, որոնք մշտական վերահսկողության տակ չեն պահում բնակչության առևտրական սպասարկումը:

Ապրանքաշրջանառության, վճարովի սպասարկումների ծավալների մեծացման հարցերը սերտորեն կապված են դրամաշրջանառության բարելավման հետ: Ինչպես ասվեց, 1986 թվականին չկատարվեցին ապրանքաշրջանառության, վճարովի սպասարկումների պլանները: Դրանք թերակատարվեցին նաև ընթացիկ տարվա հունվարին: Այդ ամենի հետևանքով չի կատարված նաև դրամարկղային պլանի մուտքի մասը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ստեղծած հանձնաժողովը, որը ղեկավարում է ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ֆ. Սարգսյանը, շաբաթը մեկ համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների մասնակցությամբ քննության է առնում դրամարկղային պլանի, մանրածախ ապրանքաշրջանառության, բնակչության վճարովի սպասարկումների, ինչպես նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և առևտրական ցանցին դրանց մատակարարման հարցերը: Կենտկոմն այդ կարևոր գործին առնչություն ունեցողներից պահանջում է մեծ պատասխանատվություն հանդես բերել և լիովին ապահովել այն ամենի կատարումը, ինչը կնպաստի դրամաշրջանառության բարելավմանը:

Եվ ապա: Չնայած ֆինանսական վիճակի բարելավման և վճարային կարգապահության ամրապնդման նպատակով միջոցներ ձեռնարկելու բազմիցս ներկայացված պահանջներին, դրությունը չի շտկվում: Չվճարումների առավել խոշոր գումարներ են գոյացել պետագրոարդի (նախագահի տեղակալ՝ ընկ. Վ. Աղասյան), հատկապես պետագրոշինի, թեթև արդյունաբերության մինիստրության և առևտրի մինիստրության գծով: Հարկ է, որ այդ և մյուս մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարները անհետաձգելի միջոցներ ձեռնարկեն ֆինանսական դրությունը բարելավելու համար, իսկ հանրապետության կառավարությունը պետք է վերահսկի այդ աշխատանքը: Անհրաժեշտ է կուսակցական և վարչական խիստ պատասխանատվության ենթարկել ֆինանսական կարգապահության խախտումներ թույլ տվող անփույթ տնտեսական աշխատողներին:

Ընկերնե՛ր: Մեր հիմնական պրոբլեմներից մեկը հանրապետության տարբեր շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակների խզումը հաղթահարելն է: Դրա հաջող լուծումը պահանջում է ամենից առաջ բազմակողմանիորեն հաշվի առնել կոնկրետ ռեգիոնալ առանձնահատկությունները՝ տերիտորիալ, արտադրատնտեսական ու բնակլիմայական պայմանների զանազանությունը, ինչպես նաև արտադրողական ուժերի տեղաբաշխման գործում ստեղծված ռեալ վիճակը, որը զգալի չափով կրում է տվյալ պրոցեսների կառավարման գործում նախկինում թույլ տրված սխալների կնիքը: Վերջինս վերաբերում է ոչ միայն կառուցվածքային քաղաքականության մեջ թույլ տրված վրիպումներին, այլև այն սխալներին, որոնք կապված են անձնական օժանդակ տնտեսությունների անբավարար զարգացման, կոլտնտեսությունները մասսայաբար սովխոզներ դարձնելու, տնտեսությունները միավորելու միջոցով դրանց մեխանիկական խոշորացման և ուրիշ շատ այլ հարցերի հետ: Այդ սխալները բավական իներցիոն բնույթ են կրում, և դրանց հաղթահարման համար երկար, հետևողական աշխատանք է պահանջվում:

Հանրապետության առջև ծառացած են դժվար լուծելի երկու խումբ բարդ պրոբլեմներ. առաջին խումբը կապված է Երևանի ագլոմերացիայում արտադրողական ուժերի բարձր համակենտրոնացման հետ, որտեղ տնտեսական պոտենցիալի աճի տեմպերը զգալիորեն առաջ են անցել սոցիալական ինֆրակառուցվածքի զարգացումից. երկրորդ խումբը կապված է լեռնային և նախալեռնային շրջանների արտադրողական ուժերի ու սոցիալական ինֆրակառուցվածքի ավելի արագ զարգացման անհրաժեշտության հետ՝ նպատակ ունենալով կասեցնել բնակչության արտահոսքը, արդյունավետորեն օգտագործել առկա աշխատանքային և հումքային ռեսուրսները:

Ստեղծված դրության համակողմանի ուսումնասիրության հիման վրա մեզանում այդ ուղղությամբ քիչ աշխատանք չի կատարվել: Բավական է ասել, որ միայն վերջին երկու հնգամյակում հանրապետության վարչական շրջանների ոչ նյութական ոլորտի զարգացման մակարդակների միջև եղած տարբերությունը կրճատվել է ավելի քան մեկ երրորդով:

Ապահովվում է գյուղական շրջանների սոցիալ-տնտեսական պոտենցիալի ավելի արագ զարգացում, շրջաններ, որոնցից շատերը արդյունաբերական հանգույցների, արտադրատերիտորիալ համալիրների ձևավորման հիմք են դարձել: Եթե 1970—85 թվականներին Երևանում արդյունաբերական արտադրությունը ավելացել է 2,4 անգամ, Լենինականում՝ 2,2, Կիրովականում՝ 3,7 անգամ, ապա Աբովյանի շրջանում՝ 10,5, Սպիտակի շրջանում՝ 8,6, Կամոյի շրջանում՝ 7,4, Հրազդանի շրջանում՝ 7,1, Սևանի շրջանում՝ 6,9, Սիսիանի շրջանում՝ 6,6, Մասիսի շրջանում՝ 5,2, Ախուրյանի շրջանում՝ 5,5 անգամ և այլն: Մեծ ուշադրություն է նվիրվել լեռնային ու նախալեռնային շրջանների ավելի արագ զարգացմանը: Որակապես նոր մոտեցում է ձևավորվել տերիտորիալ պլանավորման և էկոնոմիկայի կառավարման, զարգացման ռեգիոնալ պրոբլեմների լուծման նկատմամբ:

Դրա հետ մեկտեղ աշխատանքն այդ ուղղությամբ անբավարար տեմպերով է կատարվում: Դանդաղ են հաղթահարվում հանրապետության վարչական շրջանների տնտեսական զարգացման մակարդակների միջև եղած անհամամասնությունները: Մոտ մեկ տասնյակ շրջաններում տնտեսական զարգացման մակարդակը դեռևս զգալիորեն հետ է մնում միջին հանրապետական մակարդակից:

Արդյունաբերական տեսակետից զարգացած մեր առանձին շրջաններում չի կրճատվում ստեղծված տնտեսական պոտենցիալի և սոցիալական ինֆրակառուցվածքի զարգացման միջև եղած տարբերությունը: Հանրապետության գյուղական շատ շրջաններում՝ Ղուկասյանի, Կալինինոյի, Արթիկի, Ամասիայի և այլն, սոցիալական ինֆրակառուցվածքի հիմնական ցուցանիշների հավելաճի միջին տարեկան տեմպերը զիջում են միջին հանրապետականին:

Առանձին շրջանների տնտեսական համեմատաբար թույլ զարգացումը, սոցիալական չկարգավորվածությունը հանգեցրել էին գյուղական բնակչության արտահոսքի: Ձեռնարկված միջոցները հնարավորություն տվեցին վերջին տարիներս դադարեցնել արտահոսքը:

Հանրապետության գյուղական շրջաններում, բացառությամբ 4 շրջանի, 1975 թվականի համեմատությամբ, տեղի է ունեցել բնակչության թվի բացարձակ աճ: Սակայն այս իրողությունը մեզ չպետք է հանգստացնի: Մենք պետք է ավելի ակտիվորեն , ավելի նպատակասլաց, համառ ու հետևողական զբաղվենք հանրապետության լեռնային ու նախալեռնային շրջանների զարգացման հարցերով, ավելի արագ հաղթահարենք վերարտադրության տերիտորիալ և ճյուղային համամասնությունների ձևավորման մեջ եղած խզումները: Բայց հարկ է ընդգծել, որ հանրապետության պետպլանը, պետագրոարդը, պետշինը, մինիստրություններն ու գերատեսչությունները, ժողովրդական դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների էապես չեն վերակառուցել իրենց աշխատանքը սոցիալ-տնտեսական զարգացման տերիտո-

րիալ պրոբլեմների կոմպլեքսային լուծման գործում: Արտադրողական ուժերի զարգացման և տեղաբաշխման հարցերը հաճախ այսօր էլ լուծվում են կիսատ-պռատ, անարդյունավետ: Շրջանների և քաղաքների մեծ մասը չունի տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսային ծրագրեր: Շրջկենտրոններում նկատվում է արտադրական ինֆրակառուցվածքի անհարկի ուռճացում, որը հանգեցնում է ներշրջանային միգրացիայի:

Հանրապետության պետպլանը գործուն միջոցներ չի ձեռնարկում այդ բնագավառում տիրող վիճակի արմատական բարելավման համար: Պետպլանի առկա տերիտորիալ ստորաբաժանումները ի վիճակի չեն պահանջվող մակարդակով իրականացնել վերարտադրության ռեգիոնալ պրոցեսների պլանաչափ կառավարումը: Այդ պրոբլեմների լուծման նպատակով ստեղծված տարբեր հանձնաժողովները հիմնականում գործում են ձևականորեն:

Օրինաչափ կլինի՝ քննադատությունը նաև Կենտկոմի բյուրոյի, քարտուղարության, հանրապետության կառավարության հասցեին: Անհրաժեշտ է, որ նրանք ինչպես հարկն է վերահսկեն այդ կարևորագույն խնդրի կատարումը, բարձրացնեն այն մարդկանց պատասխանատվությունը, ովքեր կոչված են ակտիվորեն իրականացնելու այդ ուղղությամբ մշակված կուրսը:

Էկոնոմիկայի և սոցիալական ոլորտի վերակառուցման, արտադրության ինտենսիվացման և արդյունավետության բարձրացման, առկա լուրջ թերությունների վերացման խնդիրների լուծման գործում պետք է բարձրացվի Կենտկոմի բաժինների պատասխանատվությունը: Նրանք դեռևս բավարար ակտիվությամբ ու հետևողականությամբ չեն աշխատում Կենտկոմի ընդունած որոշումների իրացման ուղղությամբ, թույլ են վերահսկում դրանց կատարումը մինիստրությունների ու գերատեսչությունների կողմից, ինչպես նաև տեղերում: Երբեմն, փոխանակ ուղղություն տալու պրոցեսներին, նրանք պարզապես արձանագրում են թերությունները: Բաժինների վարիչներ ընկ. ընկ. Վ. Մեհրաբյանը, Ռ. Ստեփանյանը, Ա. Պյատկովան, Ն. Այվազյանը, Ա. Մելքոնյանը, Մ. Քոթանյանը, Մ. Մինասբեկյանը պետք է վերակառուցեն ինչպես իրենց աշխատանքը, այնպես էլ ամբողջությամբ վերցված բաժինների գործունեությունը, որպեսզի դրանք իրոք լինեն կուսակցության տնտեսական ստրատեգիայի իրականացնողներն ու կազմակերպիչները: Կուսակցության և կառավարության որոշումների, հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների, պլանային առաջադրանքների կատարման հարցերում պետք է ավելի մեծ հաստատակամություն և հետևողականություն հանդես բերեն հանրապետության կառավարության նախագահի տեղակալներ ընկ. ընկ. Ս. Հարությունյանը, Վ. Մովսիսյանը, Լ. Ներսիսյանը, Յու. Խոջամիրյանը, Հ. Սաղոյանը: Նրանք պետք է բարձրացնեն պատասխանատվությունը, առավել պահանջկոտություն հանդես բերեն հանրապետական և տեղական պետական ու տնտեսական մարմինների ղեկավարների նկատմամբ վերակառուցման խնդիրների իրականացման գործում:

Ընկերնե՛ր:

Հանրապետության աշխատավորներին հուզում են էկոլոգիայի, բնության և շրջակա միջավայրի պահպանության հարցերը: Դրանք մշտապես գտնվել ու գտնվում են Կենտկոմի և հանրապետության կառավարության ուշադրության կենտրոնում: Վերջին տարիներին ՍՄԿԿ Կենտկոմի և միութենական կառավարության օգնությամբ մենք լուծել ենք հանրապետության էկոլոգիական իրադրության առողջացմանը նպատակամղված մի շարք բարդ ու մասշտաբային խնդիրներ:

Փակվել են կալցիումի կարբիդի արտադրությունը «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում, էլեկտրոլիզի արտադրությունը ալյումինի գործարանում, մթնոլորտն աղտոտող մի շարք արտադրություններ Կիրովականի քիմիական կոմբինատում, խոշոր միջոցառումներ են իրականացվել Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատում ծծմբային գազերի որսման և օգտահանման նպատակով, վերապրոֆիլավորվել է Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը, կառուցվել են մեծ քանակությամբ մաքրիչ կառուցվածքներ տարբեր ձեռնարկություններում, քաղաքներում և ավաններում: Իրականացվում են մի շարք այլ ձեռնարկումներ: Այս ամենը, բնականաբար, նպաստել է և կնպաստի հանրապետության քաղաքների ու շրջանների էկոլոգիական իրադրության զգալի առողջացմանը:

Միջոցառումներ են իրականացվել բնական ռեսուրսների վերարտադրությունը ապահովելու համար: Այդ իմաստով առավել կարևորը Արփա-Սևան թունելի շինարարության ավարտն է և Որոտանի հոսքի նախատեսվող ուղղումը դեպի Սևան, խոշոր ջրամբարների ստեղծումը, որոնք, գետերի ազատ ջրհոսքների կարգավորումից և



ջրակուտակումից բացի, ուղղակի նպատակամղված են Սևանի պրոբլեմի վերջնական լուծմանը: Միջոցներ են ձեռնարկվում լճի կենսավիճակի առողջացման ուղղությամբ:

Մի խոսքով, վերցված է բնության ու շրջակա միջավայրի պահպանության հաստատուն կուրս, որը հետևողականորեն իրականացվում է: Կենտկոմի բյուրոն գտնում է, որ արվածը առաջին ամենաանհետաձգելի փուլն է այդ կարևոր պրոբլեմի լուծման գործում: Առաջիկայում այդ ուղղությամբ պետք է մեծ ու պատասխանատու աշխատանք իրականացվի՝ ամբողջությամբ վերցրած հանրապետության էկոլոգիական իրադրության առավելագույն առողջացման հասնելու համար:

Դա ամենից առաջ բոլոր արտադրությունների, տրանսպորտի, ինչպես նաև քիմիացման ներկա պայմաններում գյուղատնտեսության էկոլոգիական անվտանգությունը բարձրացնելու միջոցառումների իրականացումն է:

Ներկայումս ՀԿԿ Կենտկոմը և հանրապետության Մինիստրների խորհուրդը թույլ չեն տալիս կառուցել այնպիսի օբյեկտներ, որոնց էկոլոգիական անվտանգությունը արդեն իսկ նախագծով ապահովված չէ: Մեծանում է արտադրական կոլեկտիվների ղեկավարների պատասխանատվությունը բնության պահպանության մասին օրենքի կիրառության համար:

Այստեղ, իհարկե, պետք է բարձրացվեն նաև տեղական սովետների դերն ու պատասխանատվությունը, և կուսակցական կոմիտեները պետք է դրանով զբաղվեն ավելի կոնկրետ ու ավելի հետևողականորեն:

Սակայն տնտեսական շատ ղեկավարներ չեն փոխել իրենց վերաբերմունքը բնության պահպանության նկատմամբ, դեռևս այդ գործը համարում են երկրորդական, ձախողում են բնապահպանական կառուցվածքների շինարարության պլանները և մնում անպատիժ: Հանրապետությունում այդ նպատակների համար տասնմեկերորդ հնգամյակում հատկացված կապիտալ ներդրումների լիմիտը իրացվել է 87,5 տոկոսով: Կեղտաջրերի մաքրման կառուցվածքների գործարկման պլանը կատարվել է 58,3 տոկոսով, գազազտիչ և փոշեկլանիչ կայանքներինը՝ 32,2 տոկոսով: Չեն կատարվում հողերի ռեկուլտիվացման աշխատանքները: Դրությունը չի բարելավվել նաև անցած տարի: Հանրապետության կառավարությունը պետք է հատուկ քննության առնի այդ հարցը:

Անհրաժեշտ ենք համարում անդրադառնալ ևս երկու հարցի:

Առաջինը՝ հանրապետության էներգետիկայի զարգացումն է: Որոշում է ընդունված գեներացնող կարողությունների հետագա մեծացումը իրականացնել հիմնականում բնական գազով աշխատող ջերմաէլեկտրակայանների ընդարձակման և վերակառուցման միջոցով: Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի կարողությունները կկրկնապատկվեն: Երևանի և Կիրովականի ջերմաէլեկտրակայանները կվերակառուցվեն: Միջոցներ են ձեռնարկվում հիդրոէլեկտրակայաններում էներգիայի արտադրությունն ավելացնելու, հին, փոքր կայանները վերականգնելու և նորերը կառուցելու միջոցով: Հետազոտվում են էլեկտրաէներգիայի այլընտրական աղբյուրների՝ քամու, գեոթերմիկ, արևի էներգիայի օգտագործման հնարավորությունները: Իրականացվել են և նախատեսվում են Հայկական ատոմակայանի անվտանգության հետագա բարձրացման արմատական միջոցառումներ: Ատոմակայանի երկրորդ հերթի շինարարությունը դադարեցված է:

Երկրորդը քիմիական արդյունաբերության հարցերն են:

Մեզանում արդեն ստեղծվել ու գործում են քիմիական արդյունաբերության շատ ձեռնարկություններ: Ինչպե՞ս վարվել հետայսու: Կենտկոմը և Մինիստրների խորհուրդը հստակորեն մշակված գիծ ունեն: Ահա արդեն երկու հնգամյակ է, ինչ հանրապետությունում քիմիայի նոր ձեռնարկություններ չեն կառուցվում: Քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ 1970 թվականի 11,7 տոկոսից պակասել և 1985 թվականին կազմել է 6,5 տոկոս, գունավոր մետաղաձուլությանը՝ 7,4-ից 4,2 տոկոս, իսկ մեքենաշինության արտադրանքը այդ նույն ժամանակաշրջանում՝ 15,7 տոկոսից բարձրացել է մինչև 30 տոկոսի: Քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների արմատական վերակառուցման կուրս է վերցված՝ նպատակ ունենալով մեծացնել դրանց էկոլոգիական անվտանգությունը և իջեցնել հումքային ու էներգետիկ ռեսուրսների տեսակարար ծախսը: Քննության են առնվում առանձին արտադրությունների փոխակերպման տարբերակներ, ավելի տևական հեռանկարի միջոցառումներ: Այդ ամենը արվում է՝ հաշվի առնելով պետական շահերը, ռեալ հնարավորությունները, ինչպես նաև էկոլոգիական պրոբլեմների լիակատար լուծումը:

Վերոհիշյալ միջոցառումները մշակելիս հաշվի են առնվում գիտնականների, մասնագետների կարծիքները, ինչպես նաև աշխատավորների ռեալ առաջարկությունները:

Այո՛, ժամանակին սխալներ են թույլ տրվել հանրապետության արդյունաբերության, ժողովրդական տնտեսության առանձին ճյուղեր զարգացնելիս, և այդ ամենը մեզ վրա թանկ է նստում: Այս մասին մենք խոսել ենք դեռևս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հուլիսյան պլենումում և այդ սխալները ուղղելու կուրս վերցրել: Բայց այդ ամենը պահանջում է ժամանակ, հսկայական կապիտալ ներդրումներ, քրտնաջան աշխատանք: Այն ամենը, ինչ հնարավոր է շտկել, կշտկվի հետևողականորեն ու հաստատակամորեն:

Անցյալի դասերը մեզ սովորեցնում են ավելի կշռադատված ու կոմպլեքսայնորեն լուծել հեռանկարային զարգացման պրոբլեմները: Արդյունաբերության հետագա զարգացումը կընթանա քիչ նյութատար, քիչ էներգատար, բայց գիտատար ու տեխնիկատար, առավելագույն էկոլոգիական անվտանգություն ունեցող արտադրությունների ստեղծման ուղիով:

Եվս մի հարց: Մենք պետք է լրջորեն ձեռնամուխ լինենք մեր քաղաքների ու ավանների կանաչապատման գործին: Հարկավոր է, որ տեղական սովետները ավելի հիմնավորապես զբաղվեն այդ աշխատանքով: Յուրաքանչյուր բակում, փողոցում, ամենուրեք, որտեղ հնարավոր է, պետք է տնկել դեկորատիվ և պտղատու ծառեր, մեր քաղաքների համար ստեղծել ավելի շատ թթվածնի արտադրամասեր: Անհրաժեշտ է հոգ տանել կանաչ զանգվածների, տնկարկների խնամքի մասին, թույլ չտալ, որ դրանք փչանան, առավել ևս ոչնչացվեն: Իսկ ծառերի, ամբողջ այգիների հատման աղաղակող փաստեր, ցավոք, դեռևս հանդիպում են:

Խոսելով բնության պահպանության մասին, չի կարելի չասել նաև մեր պատմական հուշարձանների, հիրավի այն ամեն լավի, արժեքավորի պահպանության մասին, ինչ ստեղծվել է անցյալում: Մեզ մոտ մշակութային ու պատմական մեծ արժեք ներկայացնող ինչքա՜ն օբյեկտներ են քանդվել: Չի կարելի ջնջել հիշողությունը, պատմությունը: Առանց պատմության, առանց հիշողության հնարավոր չէ մարդ դաստիարակել:

ՀԿԿ Կենտկոմը և հանրապետության կառավարությունը գործնական միջոցներ են ձեռնարկել մեր պատմական հուշարձանների վերականգնման ու պահպանության նպատակով: Ավելացվել են այդ նպատակին կատարվող հատկացումները, կազմակերպական և նյութատեխնիկական հնարավորություններ են ստեղծվել գործը պետական հիմքերի վրա դնելու և հասարակայնությանը դրանց պահպանությանը լայնորեն ներգրավելու համար: Բայց այսօր էլ նոր շինարարություն իրականացնելիս դեռ պատահում են հուշարձանների, այլ կառուցվածքների քանդման, կանաչ զանգվածների ոչնչացման փաստեր: Մեր նախագծողները առանձին դեպքերում նեղ ու վնասակար պրակտիցիզմ են հանդես բերում: Հարկավոր է վճռականորեն վերջ տալ դրան: Ճարտարապետի, նախագծողի, շինարարի վարպետությունը ոչ միայն ճարտարապետական տեսակետից արտահայտիչ ու բարձրորակ շինությունների նախագծումն ու կառուցումն է, այլև նորի և հնի հմուտ զուգակցումը, դրանց ներդաշնակ հնչողության ապահովումը, քաղաքների և ավանների դարերի ընթացքում կազմավորված նկարագրի, դրանց կոլորիտի պահպանումը:

Այնպես որ այստեղ պետք է դրսևորել իմաստնություն, զգուշավորություն, չընդունել ոտա-որոշումներ, խստորեն ծանր ու թեթև անել ամեն վճիռ: Կենտկոմը վերջերս հատուկ որոշում է ընդունել՝ նպատակամղված այն բանին, որ գործնականորեն բացառվեն մշակութային, պատմական արժեք ներկայացնող շինությունների, հուշարձանների, գոտիների քանդման դեպքերը: Այդ որոշմամբ սահմանված է, որ խոշոր կառուցապատումների, քաղաքների և ավանների վերակառուցման նախագծերը պետք է քննարկվեն հասարակայնության լայն շրջանների կողմից:

Զարգացման հարցերը լուծելիս մենք պետք է այնպես վարվենք, որ չտուժի այն ամենը, ինչը ստեղծված է, որ ընդունվող որոշումները ապահովեն օրվա, ներկայի խնդիրների կատարումը և պրոբլեմներ չստեղծեն ապագայի համար: Իսկ դա մեծագույն պատասխանատվություն է դնում մեզ վրա, բոլոր կադրերի վրա: Այսօր մենք ստեղծում ենք ապագայի անցյալը: Եվ հարկավոր է դա այնպես իրականացնել, որ գալիք սերունդները հպարտանան այդ անցյալով:

Ինչպես տեսնում եք, մենք շատ թերություններ ունենք աշխատանքում, բարդ պրոբլեմներ՝ մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում, որոնց լուծումը առանց նոր մոտեցումների պարզապես անհնար է: Հենց դրա համար էլ վերակառուցումը օբյեկտիվ անհրաժեշտություն է: Եվ բոլոր կուսակցական կազմակերպությունների,





ամեն մի կոմունիստի, ամեն մի կադրի, աշխատողի խնդիրն է լինել այդ պրոցեսի ամենաակտիվ մասնակիցը: Վերակառուցել, նորացնել կյանքը և ինքն իրեն:

Մենք բոլորս պետք է գիտակցենք, որ եթե մենք, ընկերներ, խոր վերակառուցում չիրականացնենք, ապա շատ հետ կմնանք և երկար ժամանակով: Վերափոխումների ժամանակը չի կարելի վատնել զուր տեղը, դեկլարատիվ հայտարարություններով: Հարկավոր է գործել ակտիվորեն և արդյունավետ:

Ընկերնե՛ր:

Վերակառուցման հաջողությունը կախված է այն բանից, թե մենք այդ պրոցեսի մեջ որքան արագ կներգրավենք բոլոր աշխատավորներին, ամբողջ ժողովրդին, թե որքան լրիվ կապահովենք նրանց ռեալ մասնակցությունը հասարակության կյանքի բոլոր հարցերի լուծմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից և կուսակցության XXVII համագումարից հետո այդ ուղղությամբ քիչ աշխատանք չի կատարվել: Ավելի լիարյուն է դառնում հանրապետության կուսակցական կազմակերպությունների կյանքը: Ընդլայնվում են հրապարակայնությունը, քննադատությունն ու ինքնաքննադատությունը: Ստեղծվել են հասարակական նոր կազմակերպություններ՝ պատերազմի ու աշխատանքի վետերանների հանրապետական խորհուրդ, կանանց հանրապետական խորհուրդ և այլն: Մեծանում է աշխատավորների մասնակցությունը հասարակական գործերին, կառավարմանը:

Հետևողականորեն զարգացվում է դեմոկրատիզմը արտադրության մեջ, աշխատավորական կոլեկտիվների կյանքում արմատավորվում են ինքնակառավարման սկզբունքները: Աճում է բանվորական ժողովների, կոլեկտիվ պայմանագրերի դերը, ծնվել են դեմոկրատիայի նոր ձևեր՝ բրիգադների, արտադրամասերի, կոլեկտիվների խորհուրդներ:

Վերակառուցման արդի փուլը, անցումը տնտեսավարման նոր մեթոդների, տնտհաշվարկը, ինքնաֆինանսավորումը գործնական հողի վրա են դնում ձեռնարկությունների, արտադրությունների, արտադրամասերի, բաժանմունքների, տեղամասերի, ֆերմաների և օղակների ղեկավարների, բրիգադավարների ու վարպետների ընտրովիության հարցը:

Հանրապետության շատ կոլեկտիվներում արդեն տեղի են ունեցել ղեկավար աշխատողների ընտրություններ: Նրանց թեկնածությունները լիակատար դեմոկրատիայի պայմաններում ակտիվ ու շահագրգիռ քննարկվել են աշխատավորական կոլեկտիվների ընդհանուր ժողովներում:

Փորձը ցույց է տալիս, որ նման ընտրությունները գործնականում նպաստում են աշխատավորների քաղաքացիական ակտիվության, ձեռնարկությունների և կազմակերպությունների գործերի վիճակի համար նրանց պատասխանատվության բարձրացմանը, ամրապնդում են ձեռնարկության տիրոջ զգացումը:

Այդ կերպ ընտրված ղեկավարները, ստանալով կոլեկտիվի վստահությունը, կգործեն ավելի ակտիվ, հաշվի առնելով գործի և կոլեկտիվի շահերը:

Անշուշտ, նրանց ամբողջ աշխատանքը կառուցված կլինի միանձնյա ղեկավարության սկզբունքների վրա: Բայց դրա հետ մեկտեղ աշխատավորական կոլեկտիվներում դեմոկրատական հիմունքների հետևողական հաստատման համար, միանձնյա ղեկավարության ամրապնդմանը զուգընթաց, անհրաժեշտ է, որ ընտրված ղեկավարները իրենց աշխատանքի մասին սիստեմատիկաբար հաշվետու լինեն նրանց առջև, ովքեր իրենց ընտրել են, ստանան սեփական գործունեության գնահատականը: Դա կօգնի նախ՝ ապահովել մշտական վերահսկողությունը «ներքևից», երկրորդ՝ ժամանակին ճշգրտել ղեկավարի վարքագիծը, կոլեկտիվ խորհրդով նրան օգնել լուծելու ձեռնարկության առջև դրված խնդիրները, վերացնելու թերությունները, սխալները ու վրիպումները:

Իսկ նրանք, ովքեր կորցրել են կոլեկտիվի վստահությունը, այլևս չեն աշխատի: Այդպես եղավ, օրինակ, Թումանյանի շրջանի Քարինջի սովխոզի դիրեկտոր Մ. Պողոսյանի հետ: Կուսակցության շրջկոմի բյուրոն ժամանակին քննարկել էր նրա տնտեսական գործունեությունը և հայտարարել նկատողություն: Ժամանակն անցնում էր, բայց նա պատշաճ հետևություններ չէր անում քննադատությունից, չէր վերակառուցում իր աշխատանքը: Սովխոզի ընդհանուր ժողովում բանվորները միաձայն որոշեցին, որ դիրեկտորի պաշտոնում նրա հետագա մնալը նպատակահարմար չէ: Կուսակցության շրջկոմի բյուրոն պաշտպանեց աշխատավորական կոլեկտիվի կարծիքը: Դիրեկտորը ազատված է զբաղեցրած պաշտոնից:

Աշխատավորական կոլեկտիվների ղեկավարների ընտրովիության սկզբունքի կիրառումը բարձրացնում է կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը:

Կուսակցական կազմակերպությունները պետք է լինեն կոլեկտիվների իսկական գլխավորողներ, ժամանակին նկատեն և օգնեն խոստումնալից կադրերի աճին, դաստիարակեն նրանց սոցիալիստական ձեռներեցության ոգով, հանձնարարված գործի համար պատասխանատվության, աշխատանքային ակտիվության ոգով, նպատակամղեն մշտապես բարձրացնելու իրենց պրոֆեսիոնալ մակարդակը, կազմակերպչական ընդունակությունները, նպաստեն նրանց քաղաքական կոփմանը:

Անմիջական դեմոկրատիայի բոլոր ձևերի արդյունավետ կիրառման նոր խնդիրները մարմնավորված են պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքի մեջ, որի նախագիծը դրված է համաժողովրդական քննարկման: Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է ապահովեն նախագծի քննարկման բաց և գործարար բնույթը: Քննարկումը պետք է անցնի կազմակերպված ու բովանդակալից, կոմունիստների և անկուսակցականների ակտիվ մասնակցությամբ, ղեկավար կադրերի պարտադիր մասնակցությամբ:

Հասարակական կյանքի դեմոկրատացման, կադրային քաղաքականության հանգուցային ուղղություններից մեկը սովետական ընտրական համակարգի կատարելագործումն է: Թե ինչով է դա թելադրված և թե ինչին է նպատակաուղղված, սպառիչ կերպով, խորապես հիմնավորված ասվեց պլենումում ընկ. Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ:

Հունվարյան պլենումի հիմնադրույթներին համապատասխան, հանրապետության շրջաններից մեկում գյուղական, ավանային, քաղաքային (շրջանային ենթակայության) և շրջանային սովետների ընտրությունները էքսպերիմենտի կարգով կանցկացվեն ըստ բազմամանդատ ընտրական օկրուգների: Այդ օկրուգները կստեղծվեն գոյություն ունեցող օկրուգների միացման միջոցով, որպեսզի յուրաքանչյուրից ընտրվի ոչ թե մեկ, ինչպես այժմ, այլ մի քանի դեպուտատ: Հանրապետությունում բազմամանդատ օկրուգներով ընտրությունների անցկացման կարգը կսահմանի Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը: Էքսպերիմենտն անցկացնելիս պետք է հատուկ ուշադրություն նվիրել դեպուտատության թեկնածուների առաջադրման և քննարկման պրոցեսի կատարելագործմանը: Աշխատավորական կոլեկտիվների և ըստ բնակության վայրի անցկացվող ժողովներում պետք է որպես կանոն քննության առնել մի քանի թեկնածություն, թեկնածությունների առաջադրման հարցերը լուծել հրապարակայնորեն, դեմոկրատական եղանակով, ուշադրությամբ վերաբերվել աշխատավորների բոլոր այլընտրական առաջարկներին: Հարկավոր է վճռականորեն արմատախիլ անել ձևական մոտեցումն ու ավելորդ հանդիսավորությունը ընտրողների հետ հանդիպումներ կազմակերպելիս, նախընտրական կամպանիայի բոլոր փուլերում և քվեարկության ժամանակ:

Սովետական հասարակության հետագա դեմոկրատացման ընդհանուր ընթացքի մեջ հունվարյան պլենումը պաշտպանեց ներկուսակցական դեմոկրատիան ընդլայնելու ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի սկզբունքային գիծը:

Նկատի է առնվում դեմոկրատացնել նաև հասարակական մյուս կազմակերպությունների ղեկավար մարմինների ընտրությունները:

Դեմոկրատացումը վերակառուցման էությունն է: Իսկական դեմոկրատիան, ընդգծվեց պլենումում, գոյություն չունի օրենքից դուրս և օրենքից վեր: Սոցիալիստական դեմոկրատիայի գլխավոր որոշիչ հատկանիշը դեմոկրատիայի և կարգապահության, ինքնուրույնության և պատասխանատվության, իրավունքների և պարտականությունների օրգանական զուգակցումն է: Դեմոկրատիան ընդհանուր ոչինչ չունի ամենաթողության, անպատասխանատվության, անարխիայի հետ:

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները հասարակական կյանքի դեմոկրատացման միջոցառումների իրագործմանը զուգընթաց պետք է ուժեղացնեն ղեկավար կադրերի, ամբողջ բնակչության իրավական դաստիարակության գործը:

Ընկերնե՛ր: Վերակառուցման խնդիրներին համապատասխան ձևավորելով կադրային քաղաքականություն, ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը ելնում է այն բանից, որ այդ քաղաքականության հաջողությունը վճռապես որոշվում է նրանով, թե մեր կադրերը որքան արագ և խոր կգիտակցեն հեղափոխական փոփոխությունների անհրաժեշտությունը, որքան ստեղծագործաբար և նպատակասլաց կիրականացնեն կուսակցության գիծը:



Հանրապետական կուսակցական կազմակերպության հետևողական աշխատանքի շնորհիվ մեզանում ստեղծվել ու մշտապես համալրվում է բարձրորակ, զորեղ կադրային պոտենցիալ: Մեր բոլոր նվաճումները, հաջողությունները աշխատավորների հայրենանվեր աշխատանքի, մեր կադրերի անձնվեր աշխատանքի արգասիքն են:

Այսօր կադրերի առջև ծառացած են ավելի բարդ, որակապես նոր խնդիրներ, որոնց լուծման համար պահանջվում են նոր մոտեցումներ, ավելի շատ բանիմացություն, որակավորում, նվիրում, քաղաքական-բարոյական բարձր հատկանիշներ: Կադրերը պետք է ժամանակին յուրացնեն աշխատանքի նոր մեթոդները վերակառուցման պայմաններում, փոփոխվող տնտեսական մեխանիզմի, հասարակության դեմոկրատացման պայմաններում:

Բնականաբար, այս ամենը պահանջում է նորովի մոտենալ կադրերի ընտրությանը, տեղաբաշխմանը և դաստիարակությանը: Եվ կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները՝ Կենտկոմից մինչև սկզբնական կուսակցական կազմակերպությունները, պարտավոր են բարելավել, կատարելագործել կադրային աշխատանքը, այն բարձրացնել վերակառուցման պահանջներին համապատասխանող որակապես նոր մակարդակի: Մենք պետք է վճռաբար վերացնենք կադրային աշխատանքի թերություններն ու բացթողումները:

Կուսակցության Կենտկոմը, քաղկոմներն ու շրջկոմները պետք է ժամանակին լուծեն հասունացած կադրային հարցերը, ապահովեն ղեկավար կազմի հաջորդայնությունը, թարմ ուժերի ներհոսքը: Պատասխանատու պաշտոններ զբաղեցնող և իրենց պարտականություններում թերացող, իսկ երբեմն էլ անգամ գործը ձախողած կադրերը հաճախ մնում են իրենց տեղերում: Այս մասին ասվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1983 և 1985 թվականների պլենումներում, ուր քննարկվեցին կադրային հարցեր, կոմկուսի համագումարում, սակայն այդ պրակտիկային, ինքնաքննադատաբար պետք է ասել, դեռևս ամենուրեք չէ, որ վերջ է տրված: Դա անթույլատրելի է առհասարակ և, առավել ևս, այսօր՝ վերակառուցման պայմաններում:

Աշխատանքի շատ ուղղություններում լավ պատրաստված ռեզերվի բացակայությունը հանգեցնում է ղեկավար կազմի հաջորդայնության խախտման: Կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար կադրերի, գիտամանկավարժական համակազմի երիտասարդացումը հանրապետությունում դանդաղ է ընթանում: Մեր կադրերի տարիքը միջին միութենական ցուցանիշից բարձր է: ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո ձեռնարկված միջոցները որոշ չափով շտկեցին դրությունը, սակայն պրոբլեմը հիմնավորապես լուծված չէ:

Ինքնուրույն ձեռնարկությունների, հիմնարկների ու կազմակերպությունների ղեկավարների միայն 4,4 տոկոսն է մինչև 30 տարեկան: Յոթ տոկոսն ունի կենսաթոշակային տարիք:

Կադրերի լճացումից զատ, առկա է նաև կադրային աթուրման: Կադրերի չարդարացված փոփոխումը հսկայական վնաս է հասցնում գործին, նրանց մեջ ստեղծում է անվստահության զգացում, խանգարում է կադրերին լիովին դրսևորելու իրենց ընդունակությունները: Դրանով առանձնապես տառապում են ագրոարդի համակարգում: Դուք հավանաբար հիշում եք այդ մասին կուսակցության շրջկոմների, ագրոարդյունաբերական համալիրի նախկին մինիստրությունների հասցեին եղած քննադատությունը:

Հետևություններ չեն արվել: Վերջին հինգ տարում փոխվել են սովխոզների դիրեկտորների 80,4 տոկոսը և կոլտնտեսությունների նախագահների 85,4 տոկոսը: Նրանց՝ համապատասխանաբար 30,5 և 35,8 տոկոսը ազատվել է աշխատանքը չգլխավորելու կամ հեղինակազրկվելու պատճառով:

Կադրերի մեծ փոփոխումներ են թույլ տրվել Աբովյանի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Հ. Ավագյան), Անիի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Նազարյան), Ապարանի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ծ. Ալեքսանյան), Կրասնոսելսկի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Նազինյան), Կալինինոյի (շրջկոմի նախկին քարտուղար՝ ընկ. Վ. Եղիազարյան), Սպիտակի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Հ. Մկրտչյան), Էջմիածնի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Ս. Մխիթարյան), Արարատի (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Օ. Հակոբյան) շրջաններում: Սննդարդյունաբերության 57 ձեռնարկություններում անցած 5 տարիներին փոխվել է 56 դիրեկտոր, ընդ որում Սպիտակի շաքարի կոմբինատում՝ 5-ը, Երևանի ծխախոտի փորձառական կոմբինատում՝ 3-ը: 7 ձեռնարկությունում դիրեկտորները փոխվել են երկու անգամ: Մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության

44 ձեռնարկություններում փոխվել է 33 դիրեկտոր, պահածոյի արդյունաբերության 12 գործարանում՝ 17: Հատկապես մտահոգում է այն պարագան, որ նման պրակտիկան չի դադարում: Կենտկոմի քարտուղարության կամ Կենտկոմի բյուրոյի գրեթե ամեն նիստում առաջարկություններ են մտցվում ագրոարդի կադրերի վերաբերյալ: Սա այն բանի ուղղակի հետևանքն է, որ կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, ԾԱԱՄ-ները լուրջ սխալներ են թույլ տալիս կադրեր առաջ քաշելիս, ինչպես հարկն է չեն զբաղվում նրանց դաստիարակությամբ: Նման բան, ինչպես արդարացիորեն նշվեց Կենտկոմի հունվարյան պլենումում, կարող է տեղի ունենալ լոկ այն ժամանակ, երբ կադրերի հետ տարվող կենդանի աշխատանքը, իսկական հոգատարությունը նրանց քաղաքական և պրոֆեսիոնալ աճի, նրանց պրակտիկ օգնություն ցույց տալու նկատմամբ մղվում են երկրորդ պլան, փոխարինվում վարչարարությամբ, նրանց գործունեության ու հնարավորությունների վերաբերյալ հապճեպ, երբեմն էլ անհիմն դատողություններով:

Կենտկոմի բյուրոյում հանրապետության պետագրոարդի նախագահ ընկ. Վ. Մովսիսյանի, Կենտկոմի գյուղատնտեսության և սննդարդյունաբերության բաժնի վարիչ ընկ. Ն. Այվազյանի և Կենտկոմի քարտուղար ընկ. Թ. Դիլանյանի ուշադրությունը հրավիրվեց նման պրակտիկայի անթույլատրելիության վրա, և պահանջվեց բարձրացնել շրջանային ագրոարդյունաբերական միավորումների, կուսակցության շրջկոմների ու քաղկոմների պատասխանատվությունը կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության համար:

Վիճակն ավելի բարվոք չէ ժողովրդական տնտեսության նաև այլ ճյուղերում: Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին 4-ական դիրեկտոր է աշխատել Երևանի մետաղյա իրերի գործարանում, Չարենցավանի կարի ֆաբրիկայում: Միայն անցյալ տարի Լենինականի տրիկոտաժի միավորումում փոխվել են երկու դիրեկտոր և գլխավոր ինժեները: Կադրերի հաճախակի փոփոխություն է տեղի ունենում նաև շինարարության մեջ: Կադրային աշխատանքում լուրջ թերություններ կան Հայկոոպի, առևտրի մինիստրության, կենցաղսպասարկման համակարգում:

Կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները պետք է հանգամանորեն և բազմակողմանի ուսումնասիրեն ղեկավար աշխատանքի առաջ քաշվող կադրերի յուրաքանչյուր թեկնածություն, անպայման հաշվի առնեն նրանց անցյալ աշխատանքի արդյունքները, այն կոլեկտիվի կարծիքը, որտեղից նա առաջ է քաշվում: Կադրերի տեղափոխում պետք է կատարել սոսկ այն ժամանակ, երբ առկա է դրա օբյեկտիվ անհրաժեշտությունը: Չպետք է նոմենկլատուրային աշխատողներին մի ղեկավար աթոռից նստեցնել մյուսին: Թեկնածությունները պետք է քննության առնվեն հրապարակայնորեն:

Ղեկավար կադրերի ընտրովիության պայմաններում պահանջվում է նաև փոխել վերաբերմունքը կադրերի ռեզերվի նկատմամբ: Այն պետք է լինի գործուն: Կադրային ռեզերվի մասին պետք է իմանան կոլեկտիվները: Այդ կադրերը պետք է պատրաստել ակտիվորեն, նրանք պետք է աճեն այն կոլեկտիվի աչքի առաջ, որը նրանց ընտրում է իրեն ղեկավար:

Անհրաժեշտ է բարձրացնել նաև Կենտկոմի բաժինների պատասխանատվությունն այս ամբողջ գործում: Չէ որ ղեկավար կադրերի գործունեության արդյունքները անբավարար վերլուծելու, աշխատանքում նրանց թույլ տված թերությունները, անսկզբունքայնության դրսևորումները, այլ հանգամանքներ չիմանալու հետևանքով ղեկավար կադրերին առաջ քաշելիս, այլ աշխատանքի տեղափոխելիս երբեմն թույլ են տրվում սխալներ: Եթե Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի (ընկ. Ք. Մանդալյան) և գյուղատնտեսության ու սննդարդյունաբերության բաժինները ժամանակին զեկուցած լինեին, օրինակ, Ստեփանավանի կուսշրջկոմի նախկին առաջին քարտուղար ընկ. Վ. Բալայանի թույլ տված սխալների մասին, որոնց վերաբերյալ նրանք ահազանգեր էին ստացել, մի՞թե տեղի կունենար նրա նշանակումը պետագրոարդի նախագահի տեղակալ, որտեղից շատ չանցած նա ազատվեց կուսակցական տույժով հանդերձ:

Մենք պետք է կառավարման բոլոր մակարդակներում և կենսագործունեության բոլոր ոլորտներում ավելի ակտիվորեն և լայնորեն ղեկավար աշխատանքի առաջ քաշենք կանանց: Նրանք կազմում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների ավելի քան 50 տոկոսը:

Մեզանում առկա է որոշակի շեղում: Աշխատանքի մի քանի ուղղություններում (լուսավորություն, առողջապահություն, կուսակցական կոմիտեների գաղափարախո-



սական աշխատողներ) տեղի է ունենում չարդարացված ֆեմինիզացիա, իսկ այլ ուղղություններում կանայք անթույլատրելիորեն սակավ են ներկայացված:

Մենք պետք է մեր կադրային հնարավորությունները ընդլայնենք, ղեկավար աշխատանքի առաջ քաշելով նաև առաջավոր բանվորների, կոլտնտեսականների, ինչպես նաև անկուսակցականների:

ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը ուշադրություն հրավիրեց այն բանի վրա, որ անհրաժեշտ է կադրերի հետ տարվող աշխատանքում հետևողականորեն իրագործել կուսակցության ազգային քաղաքականության պահանջները: Մեր հանրապետությունում համերաշխորեն, եղբայրաբար, համատեղ ապրում և աշխատում են հայեր, ռուսներ, ադրբեջանցիներ, քրդեր, այլ ազգությունների ներկայացուցիչներ: Նրանց հարաբերությունների ներդաշնակությունը և բարձր կուլտուրան մեր հանրապետության կյանքի բնորոշ հատկանիշներն են:

Սովետական Հայաստանի ժողովուրդը տոգորված է հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի վսեմ գաղափարներով, ռուս մեծ ժողովրդի, մեր սովետական մեծ ընտանիքի բոլոր ազգերի ու ազգությունների նկատմամբ խոր սիրո և հարգանքի ջերմ զգացմունքներով: Հանրապետության աշխատավորներն իրենց ինտերնացիոնալիզմը դրսևորում են հայրենանվեր աշխատանքով, մեր մեծ հայրենիքի նյութական ու հոգևոր հարստությունների բազմապատկման մեջ իրենց ավանդի մեծացումով, եղբայր ժողովուրդներին աջակցելով դժվարին պահին: Դրա ակնառու օրինակներ էին Չեռնոբիլը, եղբայրական Վրաստանին, Մոլդավիային ցույց տրված օգնությունը:

Ինչպես պահանջում է հունվարյան պլենումը, կուսակցական կազմակերպությունները պարտավոր են մշտապես իմանալ ազգային և ազգամիջյան հարաբերությունների ռեալ պատկերը, տեսնել դրանց զարգացման հեռանկարները, հետևողականորեն զբաղվել այդ հարցերով, համակողմանիորեն հաշվի առնել երկրի տնտեսական ու հասարակական կյանքի խորացող ինտերնացիոնալացման պրոցեսները, դեմքով շրջվել դեպի ազգային հարաբերությունների հետագա զարգացման, ինտերնացիոնալ դաստիարակության ուժեղացման պրոբլեմները: Այն ամենում, ինչը վերաբերում է ազգային հարաբերությունների զարգացմանը, պետք է ցուցաբերել առանձնահատուկ զգայուն և շրջահայաց վերաբերմունք, կուսակցական սկզբունքայնություն, հոգատարություն մեր երկրի բոլոր ժողովուրդների բարեկամության ու եղբայրության հետագա ամրապնդման նկատմամբ: Հարկավոր է վճռականորեն հաղթահարել այդ ոլորտում եղած բացասական երևույթները, անզիջում հակահարված տալ նացիոնալիզմի և շովինիզմի, տեղայնության, խնամառության տրամադրություններին, ազգային սահմանափակության ու սնապարծության ամեն կարգի դրսևորումներին, դրանց հակադրել հետևողական, հաստատակամ ինտերնացիոնալիզմը:

Այն ամենը, ինչ արվել է մեր հանրապետությունում, ամբողջ երկրում, արվել է սովետական բոլոր ժողովուրդների միասնական աշխատանքով, սովետական մարդկանց ընդհանուր ջանքերով: Մեր կյանքի և համատեղ աշխատանքի ամբողջ մթնոլորտը, ընտանիքն ու դպրոցը, բանակը, մշակույթը, գրականությունն ու արվեստը կոչված են բոլոր ազգությունների, մեր մարդկանց, առաջին հերթին երիտասարդների մեջ, ձևավորելու և դաստիարակելու ամենավսեմ զգացմունքները՝ ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության զգացմունքները: Դրանցով պետք է առաջնորդվեն մեր բոլոր կադրերը իրենց աշխատանքում, կյանքում:

Ազգամիջյան հարաբերություններին առնչվող հարցերին նրանք պետք է վերաբերվեն բարձր պատասխանատվությամբ: Եղբայրական հանրապետությունների հարևան շրջանների հետ որևէ թյուրըմբռնում ծագելու դեպքում կուսակցական ու սովետական մարմինների ղեկավարները պետք է կայացնեն սկզբունքային վճիռներ, կանխեն դրանց առաջացումը: Քաղաքական աշխատողները նման դեպքերում պետք է գործեն հմտորեն, մարեն անառողջ հույզերը:

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է կուսակցության XXVII համագումարի, Կենտկոմի հունվարյան պլենումի հիմնադրույթների ոգով հաստատակամ վարեն այնպիսի գիծ, որ կուսակցական, պետական, տնտեսական մարմիններում ներկայացված լինեն հանրապետությունում բնակվող բոլոր ազգերն ու ազգությունները, որ ղեկավար կադրերի կազմը ավելի լրիվ արտացոլի հանրապետության ազգային կառուցվածքը: Անշուշտ, խոսքը չի վերաբերում տեղերն ու պաշտոնները ըստ ազգային հատկանիշի մեխանիկորեն բաշխելուն: Քաղաքական, գործարար, բարոյական հատկանիշներ՝ ահա թե բոլոր դեպքերում ինչն է որոշում աշխատողի կերպարը:

Կուսակցության Կենտկոմի, քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսկազ-

մակերպությունների կարևորագույն խնդիրն է լրջորեն նորացնել կադրային քաղաքականությունն ու աշխատանքը, այն դարձնել իրոք, ժամանակակից, հաղթահարել կադրերի ընտրության նկատմամբ տեխնոկրատական մոտեցման դրսևորումները, կադրային աշխատանքը անխզելիորեն կապել երկրի սոցիալ-տնտեսական զարգացման համար պայքարի հանգուցային ուղղությունների հետ, հաստատակամորեն ձգտել այն բանին, որ կուսակցական, պետական, տնտեսական ու հասարակական աշխատանքի յուրաքանչյուր օղակ գլխավորեն կուսակցությանն ու ժողովրդին նվիրված մարդիկ, իսկական նորարարներ, որոնք խորապես գիտակցում են մեր հասարակության մեջ որակական վերափոխումների անհրաժեշտությունը, ընդունակ են կոտրելու իներցիան ու լճացածությունը, ստեղծագործաբար կիրառելու կուսակցության գիծը:

Ճիշտ կողմնորոշվել իրավիճակում, տեսնել հեռանկարը, մտածել կոնստրուկտիվ ու ճկուն, ընկալել և ստեղծել նոր գաղափարներ, նյութականացնել դրանք, կանխատեսել իրադարձությունները և ըստ այդմ վերակառուցել աշխատանքը, լինել կոլեկտիվի դաստիարակ, կարողանալ համոզել և իր հետևից տանել մարդկանց ի վիճակի է նա, ով ունի պրոֆեսիոնալ, քաղաքական և գաղափարական լավ պատրաստություն:

Բայց կադրերի և՛ քաղաքական, և՛ պրոֆեսիոնալ պատրաստման գործում մեզանում կան լուրջ թերություններ: Հանրապետական կուսակցական կազմակերպությունում զգալիորեն հետ է մնացել երկրի բարձրագույն կուսակցական ուսումնական հաստատությունների ցանցի միջոցով կուսակցական, սովետական, գաղափարախոսական կադրերի պատրաստման ու վերապատրաստման գործը: Կուսակցական ու սովետական, պետական աշխատողների առանձին կատեգորիաների գծով (կուսակցության քաղկոմների, շրջկոմների քարտուղարներ, բաժինների վարիչներ, քաղսովետի ու շրջսովետի գործկոմների նախագահներ ու նախագահների տեղակալներ, մինիստրներ, կոմիտեների նախագահներ և նրանց տեղակալներ), բարձրագույն կուսակցական-քաղաքական կրթություն ունեցող աշխատողների թիվը նկատելիորեն զիջում է միջին միութենական ցուցանիշներին:

Խնդիր է դրված՝ բոլոր պայմաններն ստեղծել, որպեսզի մոտակա 10—15 տարում բարձրագույն կուսակցական-քաղաքական կրթություն ստանա ղեկավար աշխատողների մեծամասնությունը: Դա մեծ պատասխանատվություն է դնում քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների վրա:

Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել կադրերի պրոֆեսիոնալ պատրաստության մակարդակի բարձրացմանը: Այսօր առանց խոր մասնագիտական գիտելիքների անկարելի է լուծել զարգացման խնդիրները, գիտատեխնիկական առաջադիմության արագացման պրոբլեմները:

Չնայած վիճակն արտաքուստ թվում է բարեհաջող, սակայն աշխատանքի շատ ուղղություններում զգացվում է մասնագետ կադրերի պակաս: Դա հետևանք է կադրերի պատրաստման գործում թույլ տրված լուրջ սխալների, դրանց պահանջմունքի ու տեղաշարժման պլան-կանխատեսումների մշակման պրակտիկայի բացակայության: Այդ աշխատանքի թերագնահատումը հանգեցրել է այն բանին, որ տարբեր մակարդակների ղեկավար պաշտոններ զբաղեցնող աշխատողների միայն 56,8 տոկոսն ունի բարձրագույն կրթություն և 31 տոկոսը՝ միջնակարգ-մասնագիտական կրթություն:

Մասնագետի պաշտոն զբաղեցնող պրակտիկները արդյունաբերական ձեռնարկություններում կազմում են 16 տոկոս, տրանսպորտի ձեռնարկություններում ու կազմակերպություններում՝ 16,7 տոկոս, կապի ձեռնարկություններում ու կազմակերպություններում՝ 30 տոկոս, շինարարական կազմակերպություններում՝ 22 տոկոս: Գյուղատնտեսության մեջ գյուղատնտեսների, անասնաբույծների, անասնաբույժների գրեթե կեսը դիպլոմավոր մասնագետ չէ: Նման պարագայում, թվում է, պետք է ուշադրություն դարձվեր պրակտիկների ուսուցման հնարավորությունների ստեղծմանը: Բայց դա չի արվում: Դրա հետ մեկտեղ մեծ թվով դիպլոմավոր մասնագետներ ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են այնպիսի պաշտոններում, որտեղ չի պահանջվում ոչ բարձրագույն, ոչ էլ միջնակարգ մասնագիտական կրթություն:

Ի՞նչ է վկայում այս ամենը: Նախ՝ որ ճիշտ չի պլանավորվում կադրերի պատրաստումը, այդ գործում չի ապահովվում անհրաժեշտ համամասնություն: Մեզանում բացակայում է ճկուն անդրադարձը կադրերի պահանջմունքին և նրանց պատրաստման համապատասխան ճշգրտումը: Այստեղ մեղք ունի պետպլանը: Բուհերն ու



տեխնիկումները էլ իրենց հերթին ժամանակին չեն անցնում հարկավոր մասնագետների պատրաստմանը, որովհետև իրենք ևս անհրաժեշտ ուղղությունների մասնագետների պատրաստման համար նոր դասախոսներ չեն պատրաստում կամ վերապատրաստում:

Երկրորդ՝ որ պակաս կարևոր չէ, ոչ ռացիոնալ կերպով են օգտագործվում մասնագետները: Այս մասին է խոսում մանկավարժական կադրերի օրինակը: Ընթացիկ տարվա սկզբին Երևանի քաղաքային ժողկրթբաժնում հերթագրված էր մի քանի հազար, Լենինականում՝ ավելի քան 500 ուսուցիչ: Դրանց զգալի մասը կազմում են հայոց և ռուսաց լեզվի ու գրականության մասնագետները: Եվ սա այն դեպքում, երբ տվյալ առարկաների գծով որոշ շրջաններում (Սիսիան, Գորիս, Մարտունի, Ազիզբեկով) տարիներ շարունակ զգացվում է դիպլոմավոր ուսուցիչների զգալի պակաս:

Երրորդ՝ դա բուհերում ուսումնառության ընթացքում դաստիարակչական վատ աշխատանքն է և մասնագետների բաշխման ու տեղերում նրանց ամրացման գործի թերությունները: 1981—1986 թվականներին մեծ թվով մասնագետներ նշանակման վայր չեն ներկայացել: Իսկ հանրապետության բուհերի ռեկտորատները, կուսակցական ու կոմերիտական կոմիտեները գործուն միջոցներ չեն ձեռնարկում: Երիտասարդ մասնագետների մի մասը մեկ-մեկուկես տարի շրջաններում աշխատելուց հետո տեղափոխվել է քաղաք, որովհետև տեղական սովետներն ու տնտեսական ղեկավարները նրանց բնակության և աշխատանքի անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծում: Իսկ կուսակցական կոմիտեներն ու կազմակերպություններն անցնում են նման փաստերի կողքով: Ոչ ոք պատասխան չի տալիս: Պետք է վերջ տալ դրան: Եկեք պայմանավորվենք՝ յուրաքանչյուր այսպիսի փաստ հատուկ քննարկման առարկա դարձնել կուսակցական կոմիտեներում՝ դրանից բխող բոլոր ձեռնարկումներով:

Չգիտես թե ինչու մեզանում կիրառում չի գտնում երկրի այլ ռեգիոնների փորձը, ուր ապագա մասնագետների բաշխումը կատարում են վաղօրոք՝ բուհում ուսանելու երրորդ կուրսից:

Չորրորդ՝ հարկ եղածին պես չեն օգտագործվում դիմորդների և գյուղական շրջանների բնակիչների թվից կադրերի նպատակային պատրաստման հնարավորությունները: Տեղական կուսակցական, սովետական, կոմերիտական մարմինների անպատասխանատու վերաբերմունքի պատճառով հատկացված տեղերը լիովին չեն օգտագործվում: Եվ դա մասնագետների սուր պակասի դեպքում: Խստորեն պետք է հանդիմանել այն շրջանների ղեկավարներին, որտեղ տարբեր ազգությունների մեծ թվով բնակիչների առկայության պայմաններում ուշադրություն չի դարձվում նրանց թվից մասնագետների պատրաստմանը: Չէ՞ որ հանրապետության բուհերում հատկապես այդ նպատակի համար ՀԿԿ Կենտկոմի և կառավարության ցուցումով վերջին տարիներս տեղեր են հատկացվում: Կենտկոմի բյուրոյում Ամասիայի կուսշրջկոմի աշխատանքի հարցը քննարկելիս շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Բաղիրովին մատնացույց արվեց այդ բանի անթույլատրելիությունը:

Կուսակցության շրջկոմների և քաղկոմների քարտուղարները, շրջգործկոմների նախագահները, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարներն առանձնապես լեռնային ու նախալեռնային շրջաններում, պետք է ի վերջո գիտակցեն, որ առանց հումանիտար ու տեխնիկական մտավորականության անհրաժեշտ բանակի ստեղծման անհնար կլինի լրջորեն խոսել շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման, կուլտուրական շինարարության հարցերի հաջող լուծման մասին:

Եվ, վերջապես՝ դա արտադրության մեջ մասնագետների դերի ու նշանակության նսեմացումն է: Որքա՞ն է խոսվում ինժեներական աշխատանքի հարցը բարձրացնելու անհրաժեշտության մասին: Իսկ մեզ մոտ ռեալ քայլեր արվա՞ծ են այդ ուղղությամբ: Տեղաշարժեր առայժմ չկան: Մեր տնտեսական ղեկավարներն առաջ ասում էին, թե հնարավորություն չունեն հարկ եղածին պես գնահատելու մասնագետների աշխատանքը, բարձրացնելու նրանց աշխատավարձը: Այժմ, երբ կուսակցությունն ու կառավարությունը այդպիսի հնարավորություններ ընձեռել են, նրանք դրանից չեն օգտվում: Հիմա լավ մասնագետին կարելի է ավելի շատ վճարել: Բայց շատ ղեկավարների պահպանողականությունը, մտածողության և վարքի իներցիան նրանց հնարավորություն չեն տալիս գործնականորեն իրացնելու դա և ակտիվացնելու մասնագետների աշխատանքը:

Պետք է բարձրացնել արտադրության մեջ մասնագետների դերն ու պատասխանատվությունը: Հաշվի նստել նրանց հետ, պայմաններ ընձեռել ստեղծագործական աշխատանքի, հատույցի մեծացման համար, պահանջել ավելի արդյունավետ

աշխատանք, գիտատեխնիկական առաջադիմության արագացման խնդիրների ակտիվ լուծում: Հատուկ ուշադրություն պետք է նվիրել մասնագետների քաղաքական ու բարոյական կոփմանը, աշխատավորական կոլեկտիվում կազմակերպչական ունակությունների ձեռքբերմանը: Չէ՞ որ հիմնականում նրանց թվից են աճում ձեռնարկությունների ապագա ղեկավարները:

Հարկավոր է գնահատել մասնագետներին, ընկերներ: Մասնագետի գործը պետք է աճի հենց տվյալ ուղղության մասնագետը:

Անթույլատրելի է, երբ մեր շատ հիմնարկ-ձեռնարկություններում և կազմակերպություններում ինժեների պաշտոնը վարում է անասնաբույժը կամ գյուղատնտեսը, գյուղատնտեսության մասնագետինը՝ ապրանքագետը, իսկ պատմաբանի փոխարեն՝ ֆիզկուլտուրայի ուսուցիչը և հակառակը: Սրան պետք է վճռականորեն վերջ տալ: Արտադրության մեջ յուրաքանչյուր ոք պետք է աշխատի ըստ իր մասնագիտության: Եվ այս գործում մեծ պատասխանատվություն է ընկած բոլոր օղակների ղեկավարների վրա: Չի կարելի մի մասնագետի փոխարեն աշխատանքի ընդունել մեկ ուրիշ մասնագիտություն ունեցողի:

Իրենք՝ մասնագետներն էլ պետք է թանկ գնահատեն իրենց մասնագիտական պատիվը: Բանը երբեմն հասնում է զավեշտի: Հանրապետության Գլխինտուրիստում, օրինակ, հյուրանոցների գանձապահներ, բարմեններ, հարկի հերթապահներ են աշխատում ուսուցիչը, ինժեներ-երկրաբանը, անասնաբույժը, գյուղատնտես-տնտեսագետը:

Կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները պետք է մշտական վերահսկողության տակ առնեն մասնագետների պատրաստումն ու օգտագործումը, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարներից պահանջեն պատշաճ կարգուկանոն հաստատել այդ գործում:

Հատկապես հարկ է ընդգծել գիտական կադրերի պատրաստման, նրանց աշխատանքի ակտիվացման կարևորությունը: Չէ՞ որ վերակառուցումը վճռական շրջադարձ է դեպի գիտություն, գիտության հետ պրակտիկայի գործարար պարտնյորություն՝ բարձրագույն վերջնական արդյունքների հասնելու նպատակով, ամեն մի ձեռնարկում գիտական հիմքի վրա դնելու կարողություն, գիտնականների՝ հասարակության նորացման կուսակցության կուրսը ակտիվորեն պաշտպանելու պատրաստակամություն և ջերմ ցանկություն: Դա միաժամանակ նաև հոգատարություն է գիտության զարգացման, նրա կադրերի աճի նկատմամբ, վերափոխման պրոցեսներին նրանց ակտիվ մասնակցության նկատմամբ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի 1983 թվականի հունիսի 19-ի որոշման ընդունումից հետո կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները, հանրապետության գիտությունների ակադեմիան և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը, բուհերի և գիտական հիմնարկների կոլեկտիվները որոշ չափով ուժեղացրել են ուշադրությունը գիտության կադրային պոտենցիալի ամրապնդման, գիտական հետազոտությունների արդյունավետության բարձրացման, գիտության և արտադրության կապերի ամրապնդման նկատմամբ: Գիտական և գիտամանկավարժական աշխատողների թիվը 1980 թվականի համեմատությամբ ներկայումս ավելացել է 12,5 տոկոսով, այդ թվում գիտական աստիճան ունեցողներինը՝ 15,7 տոկոսով:

Դրական տեղաշարժեր են կատարվել ՀՍՍՀ ԳԱ մի շարք ինստիտուտներում, Երևանի պետհամալսարանում, պոլիտեխնիկական ինստիտուտում:

Եվ այնուամենայնիվ, պահանջվող բեկում առայժմ չկա: Եվ Կենտկոմը գտնում է, որ առաջադրված խնդիրները կատարվում են ոչ լրիվ:

Ծարունակում է միջին հանրապետական մակարդակից զգալիորեն ցածր մնալ գիտությունների դոկտորների ու թեկնածուների տեսակարար կշիռը տեխնիկական գիտությունների բնագավառում՝ 20 տոկոս: Առհասարակ գիտական հիմնարկներում գիտությունների դոկտորների թիվը շատ դանդաղ է աճում: Նրանց պատրաստման համար ստեղծված հնարավորությունները բնավ էլ լրիվ չեն օգտագործվում: Մի՞թե կարելի է նորմալ համարել այն փաստը, որ 20 գիտական հիմնարկներում, այդ թվում Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ագրոքիմիական պրոբլեմների ու հիդրոպոնիկայի, ընդհանուր ու անօրգանական քիմիայի գիտահետազոտական ինստիտուտներում գիտությունների ոչ մի դոկտոր չկա: Նրանց թիվը պակասում է Հայկական մանկավարժական (ռեկտոր՝ ընկ. Լ. Վալեսյան), գյուղատնտեսական (ռեկտոր՝ ընկ. Մ. Գյուլխասյան) և Երևանի անասնաբուծական-անասնաբուժական (ռեկտոր՝ ընկ. Մ. Մելքոնյան) ինստիտուտներում: Հանրապետության բուհերի 482 ամբիոնների



վարիչներից միայն 241-ն է գիտության դոկտոր, պրոֆեսոր: Ցածր է ասպիրանտուրայի արդյունավետությունը: Դեռևս հարկ եղածին պես չի վերակառուցվել արտադրության հետ գիտության ինտեգրացման աշխատանքը:

Գիտական կադրերի պատրաստումը մեզ համար ամենակարևոր խնդիրն է, և դրա իրագործմանը պետք է պատասխանատվության մեծ զգացումով վերաբերվեն թե՛ հանրապետության գիտությունների ակադեմիայի ղեկավարությունը (ընկ. Վ. Համբարձումյան), թե՛ բարձրագույն ու միջնակարգ-մասնագիտական կրթության մինիստրությունը (ընկ. Լ. Ղարիբջանյան) և թե բարձրագույն ուսումնական հաստատությունների ու գիտական հիմնարկների ռեկտորատները, դիրեկցիաները և կուսակցական կազմակերպությունները:

ՀԿԿ Կենտկոմի մշակած միջոցառումների իրագործման գործում առավել ակտիվություն ու հետևողականություն պետք է դրսևորի Կենտկոմի գիտության և ուսումնական հաստատությունների բաժինը:

Մեր ժամանակը գիտության ու տեխնիկայի մեջ կատարվող խորագույն փոփոխությունների ժամանակ է: Արագացման ստրատեգիայի հաջողությունը ամենից առաջ կախված է նրանից, թե ինչպես են լուծվում գիտատեխնիկական առաջադիմության խնդիրները: Դրա համար էլ շատ կարևոր է մշտապես մեծացնել հանրապետության ինտելեկտուալ պոտենցիալը, բարձրացնել դրա օգտագործման արդյունավետությունը, վճռականորեն բարելավել ամեն ինչ՝ սկսած բուհերը ուսանողներ ընդունելուց, մասնագետների պատրաստման որակից մինչև գիտությունների ակադեմիայի համալրումը տաղանդավոր գիտնականներով, ուսանողական գիտական ընկերությունների աշխատանքից մինչև ակադեմիայի առաջատար ինստիտուտների, ճյուղային ինստիտուտների, բուհերի հետազոտական ծրագրերը, գիտական կոլեկտիվների ստեղծագործական մթնոլորտից մինչև գիտության կազմակերպման ու խթանման առավել արդյունավետ ձևերը: Սրանով անդուլ կերպով պետք է զբաղվեն սկզբնական կուսակցական կազմակերպությունները, կուսակցության շրջկոմները և քաղկոմները, հանրապետության կառավարությունը և Հայաստանի կոմկուսի Կենտկոմը:

Վերակառուցման խնդիրները պահանջում են բանվորական կադրերի պատրաստման բարելավում: Պետք է յուրաքանչյուր արտադրական ձեռնարկությունում կոնկրետ կերպով ձեռնամուխ լինել բանվորների որակավորման բարձրացմանը: Պետք է նաև ապահովել երիտասարդ բանվորական ներհամալրի պլանաչափ պատրաստումը: Պրոֆտեխկրթության բնագավառում եղած թերությունների վերացման տեմպերը մեզ չեն կարող գոհացնել: Շատ ձեռնարկությունների ղեկավարներ չեն փոխել իրենց վերաբերմունքը այդ կարևոր գործի նկատմամբ: Առաջվա պես նրանք պրոֆտեխուսումնարանների ավելի քիչ շրջանավարտներ են աշխատանքի ընդունում, քան նախապես հենց իրենք են հայտեր ներկայացրել: Անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծում երիտասարդ բանվորների աշխատանքի համար, չեն հոգում արտադրության մեջ նրանց ամրացման և հետագա որակական աճի մասին: Բայց ոչ մի կուսակցական կոմիտե գործի նկատմամբ այդպիսի վերաբերմունքի համար ղեկավարներին պատասխանատվության չի ենթարկել:

Սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և հոգևոր առաջադիմության հեռանկարները մեծապես կախված են կրթության համակարգից և նրա որակից: Մենք ձեռնամուխ ենք եղել հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի իրականացմանը: Բայց այն դեռևս դանդաղ, դժվարություններով է ընթանում, ուստի և պահանջում է թե՛ Կենտկոմի և թե հանրապետության կառավարության, բոլոր պատասխանատու մարմինների առանձնահատուկ, անդուլ ուշադրությունը: Ռեֆորմը պահանջում է նաև այդ գործի նկատմամբ լուսավորության մինիստր ընկ. Ս. Հախումյանի, պրոֆտեխկրթության պետական կոմիտեի նախագահ ընկ. Հ. Քոթանջյանի, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի, բազային ձեռնարկությունների և կազմակերպությունների բոլոր ղեկավարների առավել պատասխանատու վերաբերմունքը: Հարկավոր է հետևողականորեն իրականացնել նաև բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության վերակառուցումը:

Անհրաժեշտ է ամենալուրջ ուշադրություն նվիրել և նոր հիմքի վրա կառուցել նաև մասնագետների որակավորման բարձրացման ու վերապատրաստման համակարգը: Անընդհատ կրթության պետական համակարգի ստեղծումը համագումարի առաջադրած խնդիրն է, և մեր պարտքն է լուծել այն:

Ընկերնե՛ր: Կադրերի գնահատման, նրանց քաղաքական և քաղաքացիական դիրքորոշման գնահատման վճռական չափանիշը հանդիսանում է վերաբերմունքը վերակառուցման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների

նկատմամբ, դրանց իրականացմանը ուղղված կոնկրետ գործերը: Կուսակցական կոմիտեները պետք է առաջ քաշեն ու պաշտպանեն այն աշխատողներին, ովքեր ոչ միայն համամիտ են վերակառուցման կուրսին, այլև ակտիվորեն, ստեղծագործաբար են ներգրավվել նորացման պրոցեսի մեջ, իրենց բոլոր ուժերը, գիտելիքներն ու փորձը նվիրաբերում են ընդհանուր գործին, կարողանում են հասնել հաջողության, ռեալ արդյունքների: Իսկ նա, ով ի վիճակի չէ բարեշրջելու գործերը հանձնարարված տեղամասում, պասսիվ ու անտարբեր է մնում իրականացվող փոփոխությունների նկատմամբ, կառչում է հնից, ոչ մի կերպ չի համակերպվում հրապարակայնությանը, իրավունք չունի ղեկավար պաշտոն զբաղեցնելու:

Անհաշտ վերաբերմունք թերությունների նկատմամբ, ձեռնհասություն և բարձր պրոֆեսիոնալիզմ, կազմակերպվածություն և կարգապահություն, գաղափարական խոր համոզվածություն, քաղաքական ու բարոյական մեծագույն պատասխանատվություն երկրի բախտի համար, բոլշևիզմի լենինյան էթիկայի անշեղ կիրառում՝ այս պահանջները ներկա իրադրության մեջ առանձնակի սրությամբ են ներկայացվում մեր բոլոր կադրերին: Նրանք պետք է գաղափարական տոկունության, կուսակցական և պետական կարգապահության անշեղ պահպանման, խոսքին հավատարիմ լինելու, ազնվության, օրինավորության, անկաշառության, համեստության, սոցիալիստական բարոյականության նորմերից ամեն տեսակ շեղումների նկատմամբ անհանդուրժողության տիպար լինեն:

Արդարացի է ասված, որ առանց հասարակության բարոյական առողջության ամրապնդման մեզ չի հաջողվի լուծել վերակառուցման խնդիրները: Ինչպես հայտնի է, մարդկանց կողմից առանձնապես սուր է ընկալվում այն ամենը, ինչը կապված է կուսակցության անդամների և ամենից առաջ ղեկավարների բարոյական կերպարի հետ:

Անհրաժեշտ է վճռականորեն ազատվել հարմարվողներից, կարիերիստներից, կոնյունկտուրայով առաջնորդվողներից, նրանցից, ովքեր կուսակցության անդամի, տնտեսական ղեկավար աշխատողի կոչումը արատավորում են ընչաքաղցությամբ, ունձացմամբ, հարբեցողությամբ, անմաքրաբարոյությամբ, վճռական պայքար մղել պրոտեկցիոնիզմի դեմ, աշխատողներին հայրենակցության և անձնական նվիրվածության հատկանիշներով առաջ քաշելու դեմ: Պետք է ամենայն խստությամբ հաշիվ պահանջել նրանցից, ովքեր փորձում են իրենց պաշտպանության տակ առնել խաբեբաներին, հափշտակիչներին, կաշառակերներին: Ղեկավարի մաքուր ու ազնիվ կերպարի մասին հոգալը յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության, յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի, հանրապետական կուսակցական կազմակերպության առաջնահերթ պարտքն է:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն և քարտուղարությունը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները ավելի են խստացրել պահանջկոտությունը և պատժել այն ղեկավար աշխատողներին, ովքեր թույլ են տվել կուսակցական և պետական կարգապահության խախտումներ, չարաշահել պաշտոնեական դիրքը, գլորվել հանցագործությունների ճահիճը:

Այսօր հարկ է ամենայն շիտակությամբ ասել, որ կադրերի գործունեության մեջ եղած շատ լուրջ թերություններն ու սխալները, կուսակցական էթիկայի խախտման փաստերը, թույլ տված պաշտոնեական դիրքի չարաշահումները, քրեորեն պատժելի գործողությունները հետևանք են այն բանի, որ նրանց աշխատանքը վատ են վերահսկում կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները: Եթե հարկ եղած կուսակցական վերահսկողության տակ լիներ ժողովրդական դեպուտատների Ստեփանավանի քաղաքային սովետի և Կալինինոյի շրջանային սովետի գործկոմների այժմ արդեն նախկին ղեկավարներ Ռ. Օլոյանի և Կ. Ղազարյանի գործունեությունը, մի՞թե նրանք կկարողանային տարիներ շարունակ թույլ տալ չարաշահումներ և սոցիալիստական օրինականության կոպիտ խախտումներ: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն երկուսին էլ ազատեց գրաված պաշտոններից: Ռ. Օլոյանը հեռացված է ՍՄԿԿ շարքերից: Կ. Ղազարյանի կուսակցական պատասխանատվության հարցը քննության է առնվելու գործկոմի սկզբնական կուսկազմակերպությունում:

1984—85 թվականներին Թումանյանի շրջանի Օձունի և Արևածագի սովխոզների ու Թումանյանի պանրի գլխամասային գործարանի ղեկավար աշխատողներ կատարել էին հավելագրումներ և 36 հազար ռուբլի գումարի սոցիալիստական սեփականության հափշտակում: Իսկ չէ՞ որ այդ ամենը տեղի է ունեցել կոմունիստների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների աչքի առջև: Բայց ոչ ոք գործամոլների ձեռքը չի բռնել:



Կուսակցության Թումանյանի շրջկոմի բյուրոն վերոհիշյալ փաստին սկզբունքային գնահատական է տվել: Օձունի, Արևածագի սովխոզների ղեկավարները հեռացված են ՍՄԿԿ շարքերից: Կուսշրջկոմի նախկին առաջին քարտուղար ընկ. Ս. Սիմոնյանին հայտարարված է խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում, նա ազատված է նաև Թումանյանի անտառտնտեսության դիրեկտորի պաշտոնից: Հաշվառման քարտում գրանցումով խիստ նկատողություն է հայտարարված նաև կուսշրջկոմի երկրորդ քարտուղար ընկ. Վ. Դավթյանին, շրջսովետի գործկոմի նախագահ ընկ. Ս. Վարոսյանին, շրջանային ագրոարդյունաբերական միավորման նախագահ ընկ. Խ. Չոբանյանին: Վերջինս ազատված է գրաված պաշտոնից: Պատժված են նաև սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները:

Անցած տարի և ընթացիկ տարվա երկու ամսում հափշտակումների համար աշխատանքից հանված և քրեական պատասխանատվության են ենթարկված ՍՄԿԿ նախկին անդամներ՝ Սպիտակի քաղկոոպի դիրեկտոր Վ. Միրզոյանը, Ստեփանավանի անտառտնտեսության դիրեկտոր Ս. Այվազյանը, Մեղրու նավթաբազայի դիրեկտոր Վ. Աբրահամյանը, Աբովյանի քաղսովետի գործկոմի կոմունալ ձեռնարկությունների և բարեկարգման կոմբինատի դիրեկտոր Ռ. Էդիգարյանը, Արթիկի հանրախանութի դիրեկտոր Վ. Կոսալյանը և ուրիշներ: Կարելի՞ է արդյոք հավատալ, որ նրանց արարքների մասին կոլեկտիվում ոչ ոք չի իմացել:

Ոչ միայն ղեկավարի աշխատանքի վերահսկողության բացակայության, այլև խախտումների ու չարաշահումների համար վերադաս մարմինների կողմից պայմանների ստեղծման մասին է վկայում հետևյալ փաստը:

Ծաղկունյանի շրջանի «Նոր ուղի» կոլտնտեսության նախագահ, ՍՄԿԿ անդամ Մ. Հարությունյանը 1984 թվականին կոլտնտեսությունում ինքնագլուխ կերպով ստեղծել էր պիտակների թողարկման օժանդակ տնտեսություն, արտադրության պետ էր նշանակել հանցագործությունների համար նախկինում երեք անգամ դատված մարդու:

Շրջանային ագրոարդյունաբերական միավորման նախագահ, Ծաղկունյանի շրջսովետի գործկոմի նախագահի առաջին տեղակալ Ռ. Աբրահամյանը և գործկոմի պլանային բաժնի վարիչ Ս. Մուրադյանը «չնկատելով», որ կառավարության կողմից այդ առաջարկությունը մերժվել է, համերաշխորեն հավանություն էին տվել այդ «նախաձեռնությանը», չհետաքրքրվելով և չվերահսկելով դրա իրականացման ընթացքը: Ինչպես պարզվեց ավելի ուշ, օժանդակ տնտեսություն փաստորեն գոյություն չի ունեցել: Գործամոլները և խարդախները, օգտվելով թողտվությունից և անտնտեսվարությունից, համեմատաբար կարճ ժամանակամիջոցում (ինն ամիս) յուրացրել էին ավելի քան 81 հազար ռուբլի:

Հանցագործության անմիջական մասնակիցները մերկացվել և վերջերս դատապարտվել են ազատազրկման:

Իսկ ի՞նչ միջոցներ են ձեռնարկվել շրջսովետի գործկոմի նախագահի առաջին տեղակալի նկատմամբ: Նա մինչև օրս պատասխանատվության չի ենթարկվել: Մի՞թե սա խոսում է Ծաղկունյանի կուսշրջկոմի (քարտուղար՝ ընկ. Ռ. Թովմասյան), շրջսովետի գործկոմի (նախագահ՝ Ա. Նալբանդյան), գործկոմի սկզբնական կուսակցական կազմակերպության սկզբունքային դիրքորոշման մասին:

Իսկ չէ՞ որ կոմունիստն իր արարքների համար ամենից առաջ պետք է պատասխան տա սկզբնական կուսակցական կազմակերպության առջև: Սկզբնական կուսկազմակերպությունների դրսևորած լիբերալիզմի, անդիմության օրինակներ, ցավոք, կարելի է շատ բերել:

Կուսակցության քաղկոմները և շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է հետևողականորեն վարեն կուսակցական կյանքի և կոմունիստական բարոյականության նորմերից ոչ մի նահանջ թույլ չտալու գիծ, բարձրացնեն պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, օբյեկտիվորեն գնահատեն նրանց աշխատանքը, սաղմնային վիճակում բացահայտեն բացասական երևույթները և միջոցներ ձեռնարկեն դրանց վերացման համար: Մեր բոլոր կադրերը պետք է իմանան, որ կուսակցությունը միշտ պատասխան կպահանջի ցանկացած աշխատողից, որը խախտել է կանոնադրությունը, կորցրել վստահությունն ու հեղինակությունը: Այդ նպատակով պետք է ուժեղացնել վերահսկողությունը ինչպես «վերևից», այնպես էլ «ներքևից»:

Անհրաժեշտ է միջոցներ ձեռնարկել բարձրացնելու վերահսկողության մարմինների դերը ինչպես պետական ու հասարակական կազմակերպությունների, այնպես

Դա առանձնապես նկատելի է Դիլիջանի քաղսովետի (նախագահ՝ ընկ. Հ. Տոնոյան), Ազիզբեկովի շրջսովետի (նախագահ՝ ընկ. Է. Գրիգորյան), Անիի շրջսովետի (նախագահ՝ ընկ. Ա. Անդիկյան), Ամասիայի շրջսովետի (նախագահ՝ ընկ. Մ. Հակոբյան), Բաղրամյանի շրջսովետի (նախագահ՝ ընկ. Բ. Ավչյան), Թումանյանի շրջսովետի (նախագահ՝ ընկ. Ս. Վարոսյան), Սպիտակի շրջանային և քաղաքային սովետների (նախագահներ՝ ընկ. ընկ. Ս. Մաթևոսյան, Օ. Գրիգորյան) աշխատանքում:

Շատ սովետների ապարատում առաջվա պես առկա է բյուրոկրատիզմը: Դրանցում ամենից ավելի է դրսևորվում գործադիր մարմինների դերի ընդլայնումն ի վնաս ընտրովի մարմինների: Դրանց պատասխանատու աշխատողները, ապարատի աշխատողները հաճախ չեն ապահովում ընդունվող որոշումների կատարումը, թույլ են տալիս օրենքների կամայական մեկնաբանություններ, հետևաբար՝ նաև կամայական գործողություններ, երբեմն էլ նաև չարաշահումներ ու խախտումներ, որոնց մասին ասվեց զեկուցման մեջ: Այստեղ անելիք ունեն կուսակցական կոմիտեները ու կազմակերպությունները: Նրանք պետք է տեղական սովետներից, այդտեղ աշխատող կոմունիստներից խստիվ պահանջեն պայքարել բյուրոկրատիզմի, քաշքշուկի, բացասական երևույթների դեմ, վճռաբար բացառել սոցիալական անարդարության դրսևորումները, հատկապես, բնակարաններ բաշխելիս:

Արտադրական և սոցիալական հարցերի լուծման մեջ պետք է ավելի ակտիվ դիրքորոշում ունենան արհմիութենական կադրերը, որոնց պատասխանատվությունը զգալիորեն բարձրանում է աշխատավորական կոլեկտիվների լիազորությունների ընդլայնման, ինքնակառավարման զարգացման կապակցությամբ: Նոր պահանջների, սովետական արհմիությունների համագումարում առաջադրված խնդիրների ոգով պետք է իր աշխատանքը լրջորեն վերակառուցի նաև ՀԱՄԽ-ը (ընկ. Մ. Հարությունյան): Անհրաժեշտ է նաև ըստ ամենայնի զարգացնել կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնությունը: Նրանց անելիքների մասին հանգամանալի խոսակցություն ծավալվեց այդ կազմակերպությունների վերջերս կայացած համագումարներում, ուստի թույլ տվեք դրանց վրա կանգ չառնել:

Կենտկոմի պլենումի որոշումների լույսի ներքո կուսակցության քաղկոմները, շրջկոմները պետք է հատուկ ուշադրություն նվիրեն մինիստրությունների, գերատեսչությունների, պետական ապարատի մյուս օղակների կադրերի հետ տարվող աշխատանքին: Հարկավոր է բարձրացնել ապարատի կադրերի պատասխանատվությունը, բարելավել նրանց ընտրությունը, հասնել այն բանին, որ վերակառուցման պրոցեսում ակտիվացվեն ապարատների սկզբնական կուսակցական կազմակերպությունները: Հենց իրենք՝ մինիստրությունների, պետական կոմիտեների, մյուս գերատեսչությունների ղեկավարները պետք է առաջին հերթին վերակառուցեն իրենց աշխատանքները, օրինակ ծառայեն:

Սոցիալիստական օրինականության և իրավակարգի հետագա ամրապնդումը պատասխանատու խնդիրներ է դնում իրավապահպան մարմինների կադրերի առջև: Նրանք պարտավոր են հաստատակամորեն աշխատել սովորել դեմոկրատիայի ընդլայնման ու հրապարակայնության պայմաններում, հենվելով ամբողջ ժողովրդի վստահության ու պաշտպանության վրա, մշտապես հիշելով, որ նա, ով ծառայում է իրավապահպանման գործին, նախ և առաջ ինքը պետք է լինի ազնիվ, անբասիր, օրինապահ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի նախորդ պլենումում մենք սուր քննադատության ենթարկեցինք իրավապահպան մարմինների աշխատանքի թերությունները: Այդ մարմինների ղեկավարների Կենտկոմ ներկայացրած զեկուցագրերից երևում է, որ քննադատությունը ճիշտ է ընկալվել, նախատեսվել և իրագործվում են միջոցառումներ դրությունը շտկելու համար: Նրանք սկսել են ավելի սկզբունքային դիրք գրավել իրենց ծառայողական պարտականությունները վատ կատարող, արատավորված անձանցից այդ մարմինները ազատելու գործում: Անցյալ տարի ներքին գործերի մինիստրության մարմիններից բացասական մոտիվներով ազատվել է 219 աշխատակից, դատապարտվել 14-ը, աշխատանքները չգլխավորելու համար ազատված են երկու դատախազ, դատախազքննչական 20 աշխատող ենթարկված է վարչական խիստ տույժի, դրանցից 6-ը հեռացված է դատախազության համակարգից: Հետ է կանչվել մեկ ժողովրդական դատավոր:

Սակայն վերակառուցման անիվը դանդաղ է թափ առնում: Շատ ստորաբաժանումներում դեռ չեն արթնացել լեթարգիական քնից: Դեռևս հարկ եղածին պես վճռական և ակտիվ պայքար չի մղվում անաշխատ եկամուտների դեմ, առաջվա պես



ջանքերը կենտրոնացված են մանր հանցագործությունների վրա, աչքաթող անելով խոշոր գործամոլներին, հափշտակիչներին:

Հանրապետության դատախազ Ս. Օսիպյանը, ներքին գործերի մինիստր Հ. Շահինյանը, Գերագույն դատարանի նախագահ Ա. Գևորգյանը և արդարադատության մինիստր Ա. Դադայանը հունվարյան պլենումի պահանջների ոգով պետք է վերակառուցեն իրենց աշխատանքը, ուժեղացնեն պահանջկոտությունը համակարգի բոլոր աշխատողների նկատմամբ, բարձրացնեն անաշխատ եկամուտների դեմ մղվող պայքարի արդյունավետությունը, հասնեն այն բանին, որ ամեն կարգազանց, ժողովրդական բարիքը հափշտակող ու կաշառակեր արժանի պատիժ ստանա:

Իր աշխատանքը պետք է վերակառուցի նաև Կենտկոմի վարչական մարմինների բաժինը (ընկ. Մ. Դավթյան), որին տակավին պակասում են աշխատանքի պատշաճ ակտիվությունն ու պահանջկոտությունը:

Հանրապետության մինիստրությունների և գերատեսչությունների, արտադրական և մյուս ձեռնարկությունների ղեկավարները պարտավոր են ձեռնարկել ամենագործնական միջոցները սոցիալիստական սեփականության ամրապնդման ուղղությամբ, փակեն հափշտակությունների ու չարաշահումների բոլոր ուղիները: Կուսակցական կազմակերպությունները և կոմիտեները անաշխատ եկամուտների դեմ մղվող պայքարի գործը պետք է պահեն իրենց ամենօրյա ուշադրության կենտրոնում, ամենուրեք ակտիվացնեն այդ պայքարը, դրանում ընդգրկելով աշխատավորական լայն զանգվածների, այն համարելով սոցիալական արդարության հաստատման կարևորագույն պայմաններից մեկը:

Ընկերնե՛ր: Մենք 1986 թվականի հոկտեմբերին Կենտկոմի պլենումում քննության առանք «Հայաստանի կուսակցական կազմակերպությունում գաղափարախոսական աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թվականի օգոստոսի 12-ի որոշման կատարման ուղղությամբ հանրապետական կուսակցական կազմակերպության անելիքները: Մի շարք թերություններ վերացված են: Սակայն որոշմամբ պահանջվող վերակառուցման խորության մենք այստեղ դեռ չենք հասել: Կենտկոմի գաղափարախոսական բաժինները (ընկ. ընկ. Գ. Ասատրյան, Ա. Մելքոնյան, Ա. Ստեփանյան) դեռևս բավարար ակտիվությամբ չեն իրացնում մեր կողմից ընդունված որոշումները, այդ գործում հանդես են բերում անհետևողականություն, պահանջկոտություն չենք դրսևորում համապատասխան ծառայությունների նկատմամբ՝ այն հաշվով, որպեսզի նրանք լիովին իրացնեն ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումները: Միջոցառումների իրականացման ուղղությամբ պետք է առավել ակտիվ աշխատանք տանի Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Ս. Ավետիսյանը:

Մեր գաղափարախոսական աշխատողների հրատապ խնդիրն է հունվարյան պլենումի գաղափարները հասցնել մասսաներին, նրանց զինել վերակառուցման պատմական անհրաժեշտության ըմբռնումով, օգնել յուրաքանչյուրին գտնելու իր տեղը արագացման համար մղվող համաժողովրդական պայքարում:

Ամեն ոք վերակառուցումը պետք է սկսի իրենից: Ի դեպ, այս մասին շիտակ ու տպավորիչ գրել էր մեր անվանի բանվոր, սոցիալիստական աշխատանքի հերոս, ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ ընկ. Ս. Պետրոսյանը «Սովետական Հայաստան» թերթում տպագրած իր «Սկսիր քեզնից» հոդվածում:

Կուսակցական կոմիտեները պետք է գաղափարախոսական տեղամասերն ամրապնդեն բարձրորակ, պատրաստված կադրերով, որոնք լիովին ու խորապես հասկանան առաջադրված խնդիրների էությունը, կարողանան արդյունավետ պրոպագանդել կուսակցության քաղաքականությունը, համոզել և կազմակերպել մարդկանց:

Հասարակական վերափոխումների նոր փուլը պատասխանատու խնդիրներ է առաջադրում ստեղծագործական մտավորականությանը, մշակույթի ոլորտի բոլոր աշխատողներին: Նրանց պարտքն է հարստացնել հասարակության հոգևոր կյանքը, նպաստել աշխատանքի մարդու գաղափարական ու բարոյական վեհացմանը:

Վերակառուցման խնդիրների իրականացմանը, հրապարակայնության, առողջ քննադատական մթնոլորտի հաստատմանը ակտիվորեն նպաստում են մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն:

Թերությունների ու բացթողումների կոնստրուկտիվ և սկզբունքային քննադատության հետ մեկտեղ մասսայական ինֆորմացիայի մեր միջոցները պետք է ապահովեն նաև վերակառուցման պայմաններում աշխատավորական կոլեկտիվների, կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների, ղեկավար կադրերի աշխատանքի փորձի ավելի լայն արտացոլումը:

Շատ կարևոր և լավ է, որ մեր մասսայական ինֆորմացիայի միջոցները ակտիվորեն քննադատում են թերությունները: Այդ գործը պետք է այսուհետև էլ ծավալել, հետևողականորեն վարել: Մյուս կողմից, հաշվի առնելով իրենց հանդեպ մասսաների տածած մեծ հարգանքն ու վստահությունը, նրանք պետք է խուսափեն սենսացիաներից, առանձին, արտառոց փաստերի ըմբռշխնումից, չդիպչեն քննադատվող անձանց արժանապատվությանը: Մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի աշխատողներին են լիովին վերաբերում այն ընդհանուր պահանջները, որ կուսակցությունը ներկայացնում է կադրերին. գաղափարայնություն, պրոֆեսիոնալիզմ, պարտքի զգացում, սկզբունքայնություն և մեծ պատասխանատվություն հասարակական դատին ներկայացվող փաստերի հավաստիության ու ճշտության համար, կուսակցական վերաբերմունք քննադատության նկատմամբ:

Ընկերնե՛ր: Գործնականում վերակառուցման խորացման հասնելու համար մենք պետք է առաջին հերթին վերակառուցենք հանրապետական կուսակցական կազմակերպության, նրա կադրերի աշխատանքը բոլոր մակարդակներում՝ Կենտրոնական կոմիտեից մինչև սկզբնական կուսկազմակերպություններ:

Բնական է, ամենից առաջ իրենց աշխատանքը պետք է վերակառուցեն Կենտկոմի բյուրոն և քարտուղարությունը: Ի՞նչ կարելի է այսօր այդ առթիվ զեկուցել պլենումին: ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի և քարտուղարության աշխատանքը ակտիվորեն նպատակամղվել է կուսակցության մշակած արագացման կուրսի և վերակառուցման իրականացմանը, նոր պահանջներին համապատասխան կուսակցական-կազմակերպական և գաղափարադաստիարակչական աշխատանքի բարելավմանը և կատարելագործմանը: Գործնական միջոցառումներ են իրականացվել ընդունվող որոշումների մակարդակն ու որակը բարձրացնելու համար, կրճատվել է դրանց քանակը: Ներկայումս որոշումները ընդունվում են կուսակցական աշխատանքի, տնտեսական ու կուլտուրական շինարարության կարևոր, գլխավոր ուղղությունների վերաբերյալ: Կադրային հարցերն առաջվա պես քննարկվում և լուծվում են կոլեգիալ կարգով, Կենտկոմի բյուրոյի բոլոր անդամների, Կենտկոմի քարտուղարների միասնական համաձայնության դեպքում միայն: Ուժեղացվել է ընդունված որոշումների կատարումը կազմակերպելու և վերահսկելու աշխատանքը, բարձրացվել են բաժինների պատասխանատվությունն ու ակտիվությունն այդ գործում: Բյուրոյի անդամները, Կենտկոմի քարտուղարները ավելի հաճախ են լինում սկզբնական կուսակցական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում, անմիջականորեն տեղերում ծանոթանում գործերի վիճակին, օգնում լուծելու ծագած հարցերն ու պրոբլեմները: Լայնորեն կիրառվում է կուսակցության և կառավարության որոշումների կատարման մասին կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների, սովետական ու տնտեսական ղեկավարների հաշվետվությունները լսելու պրակտիկան, սկզբունքային գնահատական է տրվում սխալներին, թերություններին և բացթողումներին: Ղեկավար աշխատողներից ավելի խիստ հաշիվ է պահանջվում իրենց կուսակցական և ծառայողական պարտքի կատարման համար: Կենտկոմի բյուրոյում և քարտուղարությունում հարցերի քննարկումները ընթանում են գործարար մթնոլորտում, կուսակցական սկզբունքայնության, կարծիքների անկեղծ, ազատ փոխանակման ոգով:

Դրա հետ մեկտեղ ասել, թե այդ մարմինների աշխատանքը լիովին համապատասխանում է վերակառուցման խնդիրներին, այսօր չի կարելի: Նրանք դեռևս չեն հասել այն բանին, որ ամեն մի կուսակցական կոմիտե և կուսկազմակերպություն ակտիվորեն լծվի վերակառուցման գործին: Մի շարք հրատապ հարցերի քննարկումը ձգձգվում է: Երբեմն ընդունվող որոշումները չեն ընդգրկում պրոբլեմների առավել լրիվ շրջանակը, պակասում է հարկ եղած նպատակասլացությունը, որի հետևանքով նվազում է դրանց մոբիլիզացնող ուժը: Մենք դեռևս չենք հասել ընդունված բոլոր որոշումների լրիվ ու ժամանակին կատարմանը, կատարողական կարգապահության շեշտակի բարձրացման: Սրանում մենք տեսնում ենք ամենից առաջ Կենտկոմի քարտուղարների, բյուրոյի անդամների աշխատանքի թերացումները: Զեկուցման մեջ այդ մասին խոսվեց: Եվ մենք՝ սկսած Կենտկոմի առաջին քարտուղարից, բյուրոյի յուրաքանչյուր անդամից, պետք է ամենից առաջ վերակառուցվենք, հավելենք մեր աշխատանքը և այն ժամանակ բարոյական իրավունք կունենանք նույնը պահանջելու մյուսներից: Սա հավուր պատշաճի չէ, որ ասվում է, սա տուրք չէ «մոդային»: Եթե կարելի է այսպես արտահայտվել, վերակառուցումը պետք է խորապես ապրվի յուրաքանչյուրի կողմից: Սա կենսական անհրաժեշտություն է:



ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումների իրացման գործում մեծ պատասխանատվություն է ընկած ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղարի, ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Հ. Ոսկանյանի, հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ֆ. Սարգսյանի վրա:

Նրանք պետք է բարձրացնեն ինչպես վերակառուցման պրոցեսի, այնպես էլ սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ծրագրի իրականացման ուղղությամբ բոլոր մարմինների գործունեության ղեկավարման մակարդակը: Կենտկոմի քարտուղարներ ընկ. ընկ. Յու. Կոչետկովը, Ռ. Արզումանյանը. Կ. Ղամբարյանը, Թ. Դիլանյանը, Մ. Մուրադյանը, բյուրոյի յուրաքանչյուր անդամ, որը ղեկավարում է աշխատանքի որոշակի, կոնկրետ ասպարեզ, պետք է ձգտի տնօրինվող բնագավառում հասնելու դրական տեղաշարժերի, ապահովի կուսակցության առաջադրած խնդիրների իրացումը և լիակատար պատասխանատվություն կրի գործերի վիճակի համար: Այս մասին մենք հաստատապես պայմանավորվել ենք Կենտկոմի բյուրոյում:

Նույնը պետք է պահանջել հանրապետության Գերագույն սովետի, կառավարության մյուս ղեկավար աշխատողներից, ՀԱՄԽ-ի, կոմերիտմիության, հասարակական մյուս կազմակերպությունների ղեկավարներից:

Վերակառուցման, արագացման բախտը շատ բանով կախված է կուսակցության շրջկոմների և քաղկոմների աշխատանքի արագ վերակառուցումից:: Չէ՞ որ նրանք են անմիջականորեն իրականացնում հանրապետության կուսակցական կազմակերպության կապերն իր սկզբնական օղակների, աշխատավորական կոլեկտիվների հետ: Հարկավոր է ուշադրությունը կենտրոնացնել հենց այդ օղակի վրա: Պետք է ասել, որ մեր կուսակցական կոմիտեների և նրանց ղեկավարների մեծ մասը ակտիվորեն է ներգրավվել վերակառուցման պրոցեսի մեջ: Դրա հետ մեկտեղ տեսանելի խզում է գոյացել վճռաբար առաջ գնացածների և տեղում դոփողների միջև:

Այսօր կուսակցական կոմիտեների ուղղություն տվող, կոորդինացնող դերը պետք է դրսևորվի նրանով, որ բոլոր ոլորտներում աշխատող կադրերին օգնություն ցույց տրվի՝ գիտակցելու մոմենտի խնդիրները, և խիստ հաշիվ պահանջվի հանձնարարված գործի համար: Հարկավոր է վճռաբար հրաժարվել կուսակցական մարմիններին ոչ հատուկ կառավարչական ֆունկցիաներից, ուրիշների փոխարեն հարցերը լուծելու, սովետական մարմիններին, տնտեսական և հասարակական կազմակերպություններին փոխարինելու պրակտիկայից, աշխատանքի «վարչարարաճնշումային», տեխնոկրատական ոճից, որը քիչ վնաս չի հասցրել կուսակցական գործին, ամենից առաջ մարդկանց հետ տարվող աշխատանքին, որ գլխավորն է կուսակցության գործունեության մեջ:

Կուսակցական կոմիտեների ուշադրության կենտրոնում պետք է լինեն հոգատարությունը մարդու, նրա աշխատանքի, կենցաղի և հանգստի պայմանների նկատմամբ, մարդկանց գիտակցության ձևավորումը: Իհարկե, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում, ոչ ոք չի կարող կուսակցական կոմիտեներին ազատել էկոնոմիկայի հոգսերից և նրանում տիրող վիճակի համար պատասխանատվությունից: Խոսքը ոչ թե այդ մասին է, այլ կուսակցական ղեկավարման մեթոդների այնպիսի կատարելագործման մասին, որը բացառի տնտեսական մարմինների, աշխատավորական կոլեկտիվների փոխարինումն ու մանրախնդիր խնամակալությունը: Կուսակցական ղեկավարման ոճի մեջ շեշտը գործնականորեն պետք է տեղափոխվի մասսաների մեջ տարվող կենդանի աշխատանքի, ընդունվող որոշումների և նախատեսվող պլանների գործնական կատարման կազմակերպման, ժողովրդի նախաձեռնության պաշտպանության, նորարարական որոնման խրախուսման վրա:

Մեր ուսումնասիրությունները, Կենտկոմի բյուրոյում առանձին շրջանային ու քաղաքային կուսկազմակերպություններում վերակառուցման ընթացքի քննարկումը ցույց են տալիս, որ նրանց կողմից այդ խնդիրները դեռևս ինչպես հարկն է, չեն լուծվում, շատ բան մնացել է առաջվա պես, կադրերն աշխատում են այնպես, ինչպես նախկինում:

Այդպես են գործերը կուսակցության Մարտունու շրջկոմում: Շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ազիզյանի հաշվետվության քննարկումից պարզվեց, որ կուսշրջկոմն իր աշխատանքը չի վերակառուցել ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի որոշումների ոգով: Այստեղ առկա է անթույլատրելի պահպանողականություն: Կուսշրջկոմը, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետի գործկոմը (նախագահ՝ ընկ. Մ. Գալստյան) նոր մոտեցումներ չեն մշակել շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման արմատական հարցերի նկատմամբ: Կադրերը չեն տիրապետում տնտեսավարման տնտեսագիտա-

կաՆ մեթոդՆերիՆ։ Կուսակցության շրջաՆայիՆ կոմիտեՆ տՆտեսակաՆ ղեկավարՆերի աշխատաՆքում ստեղծագործակաՆ սկզբուՆքՆերի ըստ ամեՆայՆի զարգացմաՆ փոխարեՆ իր վոլյուՆտարիզմով ի դերև է հաՆում մասՆագետՆերի ՆախաձեռՆությունը։ ՆույՆիսկ բաՆը հասել է այՆտեղ, որ 1986 թվակաՆիՆ կուսշրջկոմի ցուցումով շրջաՆի բոլոր տՆտեսություՆՆերի համար սահմաՆվել է մեկ կովի միջիՆ կաթՆատվության միատեսակ պլաՆ՝ 1630 կիլոգրամ։ ԲՆակաՆ է, որ պլաՆավորմաՆ մեջ ՆմաՆ «Նորամուծությունը» շատ շուտով հաՆգեցրեց այդ ցուցաՆիշի իջեցմաՆ, աՆգամ այՆ տՆտեսություՆՆերում, որոՆք 1985 թվակաՆիՆ բարձր արդյուՆքՆերի էիՆ հասել։ ԿոՆկրետ միջոցՆեր չեՆ ձեռՆարկվել Նաև սոցիալակաՆ ոլորտում տիրող վիճակի բարելավմաՆ համար։

ԿեՆտկոմի բյուրոՆ գտՆում է, որ վերակառուցմաՆ աշխատաՆքը ցաՆկացած ուղղությունում պետք է գՆահատվի ըստ ձեռք բերված կոՆկրետ դրակաՆ տեղաշարժերի։ Եթե աշխատավորՆերը ոչ մի բարելավում, ոչ մի դրակաՆ փոփոխություՆ չզգաՆ, ապա էլ ի՞Նչ վերակառուցմաՆ մասիՆ կարող է խոսք լիՆել։ ԱՆհաՆգստացՆում է Նաև մեկ այլ բաՆ։ Մի շարք քաղաքՆերում ու շրջաՆՆերում, որտեղ գործերՆ ըՆդհաՆուր առմամբ վատ չեՆ ըՆթաՆում, պլաՆՆերը կատարվում եՆ, կուսակցակաՆ կոմիտեՆերի աշխատողՆերի մեջ այՆ բարեհոգի կարծիքը կա, թե վերակառուցումՆ արդեՆ իրակաՆացված է և այլևս աՆելու ոչիՆչ չկա։ Իսկ այՆ, որ ՆույՆ ժամաՆակ, ասեՆք հասարակակաՆ սՆՆդի վիճակը ինչպես կար, այՆպես էլ վատ է մՆացել, այՆ, որ թերակշռմաՆ և գՆորդՆերիՆ խաբելու դեմ մղվող պայքարի վիճակը ինչպես կար, այՆպես էլ մՆացել է թերի, այՆ, որ առաջվա պես աՆբավարար է մարդկաՆց կոմուՆալ սպասարկմաՆ դրվածքը, ՆրաՆց այՆքաՆ էլ չի հետաքրքրում, դա ՆրաՆց համար այսօր էլ առաՆձՆապես կարևոր չէ։ Չէ՞ որ գլխավոր խՆդիրը լուծված է՝ պլաՆՆերը կատարված եՆ, ամբողջությամբ վերցված զարգացումՆ ապահովվում է, էլ ուրիշ ի՞Նչ է հարկավոր։ Այս ցավով տառապում եՆ ԵրևաՆի և ԼեՆիՆակաՆի կուսշրջկոմՆերի մի շարք քարտուղարՆեր։ ՆրաՆք պետք է որքաՆ կարելի է արագ թոթափեՆ այՆ։ ՔաղկոմՆերի առաջիՆ քարտուղարՆեր ընկ. ընկ. Լ. ՍահակյաՆը և Դ. ՀարությունյաՆը պետք է այդ հարցերում բարձրացՆեՆ պահաՆջկոտությունը ՆրաՆց Նկատմամբ, բոլոր կադրերի Նկատմամբ։ ԿրկՆում եՆք՝ վերակառուցումը պետք է վերաբերի կեՆսագործուՆեության բոլոր ոլորտՆերիՆ։ Պետք է իրավիճակի բարելավմաՆ հասՆել ամեՆուրեք և ամեՆ ինչում։

Եվ ապա։ Եթե յուրաքաՆչյուր կուսակցակաՆ կոմիտե վերակառուցմաՆ ըՆթացքում չհասՆի մարդկաՆց, կոՆկրետ կատարողՆերիՆ, ապա ոչիՆչ չի ստացվի, վերակառուցումը կըՆդհատվի։

ՎերակառուցմաՆ համար, երկրի սոցիալ-տՆտեսակաՆ զարգացումՆ արագացՆելու համար մղվող պայքարի հիմՆակաՆ օղակը սկզբՆակաՆ կուսակցակաՆ կազմակերպություՆՆերՆ եՆ, աշխատավորակաՆ կոլեկտիվՆերը։ Այստեղ է աշխատում կոՆկրետ կոմուՆիստը, կոՆկրետ կատարողը։ Այստեղ է իրացվում կուսակցության քաղաքակաՆությունը, կուսակցությունՆ այստեղ է շփվում ամեՆօրյա կյաՆքի հետ, հաղորդակից լիՆում աշխատավորՆերի գործերիՆ ու հոգսերիՆ։ ՍկզբՆակաՆ կուսակցակաՆ կազմակերպություՆՆերի կազմակերպակաՆ ու գաղափարաքաղաքակաՆ ամրապՆդումը, ՆրաՆց մարտուՆակության և ակտիվության բարձրացումը հաՆրապետության կուսշրջկոմՆերի, քաղկոմՆերի, կոմկուսի ԿեՆտկոմի կարևորագույՆ խՆդիրՆ եՆ։ Չէ՞ որ գաղտՆիք չէ, որ սկզբՆակաՆ կուսակցակաՆ շատ կազմակերպություՆՆեր այսօր էլ խույս եՆ տալիս սուր հարցերի քՆՆարկումից, կոլեկտիվՆերի աՆդամՆերի առաջադրած հարցերի լուծումից։ Դա հատկապես բՆորոշ է այՆ կազմակերպություՆՆերի աշխատաՆքիՆ, որտեղ ազատված քարտուղարՆեր չեՆ աշխատում։ Այստեղ հարկավոր եՆ կուսակցության շրջկոմՆերի ու քաղկոմՆերի աջակցությունը և ուշադիր վերաբերմուՆքը։

ՔՆՆադատակաՆ մոտեցումը կադրերի աշխատաՆքի գՆահատմաՆը, բարձր պահաՆջկոտությունը պետք է լիՆեՆ կուսակցակաՆ կոմիտեՆերի ու կազմակերպություՆՆերի գործուՆեության մշտակաՆ հատկաՆիշը։

ՍակայՆ դրա հետ մեկտեղ արդի փուլը Նաև պահաՆջում է հատուկ հոգատարություՆ ցուցաբերել և օգՆել կադրերիՆ։ Չէ՞ որ, ըՆկերՆեր, մեՆք ապրում եՆ հասարակության, մեր կյաՆքի հեղափոխակաՆ ՆորացմաՆ շատ բարդ և պատասխաՆատու ժամաՆակաշրջաՆում։ ԱՆհրաժեշտ է հստակորեՆ զաՆազաՆել, թե ով չի կամեՆում և ով՝ չՆայած մեծ ցաՆկությաՆը, չի կարողաՆում վերակառուցվել, ում մոտ առայժմ չի ստացվում դա, ով առայժմ ճիշտ չի կողմՆորոշվում։ ԱռաջիՆՆերից պետք է ազատվել, երկրորդՆերի հետ հետևողակաՆ աշխատաՆք տաՆել, ՆրաՆց ճիշտ կողմՆորոշել, դաստիարակել, ոչ թե քաշքշել, Նյարդայնացնել, այլ մղել ստեղծագործելու, Նոր գործերի, հաստատուՆ կերպով տրամադրել վերակառուցմաՆ։



ԿադրերիՆ պետք է առաջ մղի ոչ թե վախը, այլ առաջադրված խՆդիրՆերի, կաՆխաՆշված Նպատակների աՆհրաժեշտության, ճշմարտացիության համոզմուՆքը։ ՆրաՆց պետք է զգաստացՆեՆ, կարգապահ դարձՆեՆ ոչ թե վախը, ոչ թե պետերի բղավոցը, այլ հաՆրապետության, ամբողջ երկրի բախտի համար պատասխաՆատվության և պարտքի բարձր զգացումը։ Դա պետք է լիՆի գիտակցված պատասխաՆատվություՆ, քաղաքացիակաՆության, հայրեՆասիրության ու իՆտերՆացիոՆալիզմի պատասխաՆատվություՆ։ Կադրերի դաստիարակության Նկատմամբ այդպիսի մոտեցմաՆ դեպքում մեՆք կարող եՆք հաջողություՆ ակՆկալել, պահպաՆել մեր կադրերիՆ։

ՎերակառուցմաՆ կապակցությամբ աՆհրաժեշտ է բարելավել ՆոմեՆկլատուրայիՆ աշխատողՆերի հետ տարվող աշխատաՆքը, վերաՆայել կուսակցակաՆ կոմիտեՆերի ՆոմեՆկլատուրաՆ։ ԱյՆ կազմված է առաՆց հաշվի առՆելու քաղաքայիՆ ու շրջաՆայիՆ կազմակերպություՆՆերի առջև այսօր ծառացած Նոր խՆդիրՆերը, փոփոխվող տՆտեսակաՆ մեխաՆիզմը, արտադրության դեմոկրատացումը։

ԱռաջիՆը, որ հարկավոր է աՆել, ՆոմեՆկլատուրայի հիմՆավոր կրճատումՆ է, և դա պետք է սկսել ԿեՆտկոմի ՆոմեՆկլատուրայից։

Կուսակցության ԵրևաՆի քաղկոմի ՆոմեՆկլատուրայում կա ավելի քաՆ հազար աշխատող։ ԿիրովակաՆի կուսքաղկոմում՝ 970, ԱՆիի կուսշրջկոմում՝ 957, Ամասիայում՝ 787, ԱբովյաՆում՝ 722 աշխատող։ Եթե ըՆկերՆերիՆ հետ չպահեՆ, երևի ՆրաՆք շրջկոմՆերի ՆոմեՆկլատուրայի մեջ կմտցՆեՆ շրջաՆՆերի ամբողջ աշխատուՆակ բՆակչությաՆը։ Այսպիսի ճյուղավորված ՆոմեՆկլատուրաՆ Նախ իջեցՆում է այլ (Նախ և առաջ՝ սովետակաՆ) մարմիՆՆերի պատասխաՆատվությունը իրեՆց կադրերի հետ տարվող աշխատաՆքի համար, մյուս կողմից պակասում եՆ կադրերի հետ իսկակաՆ աշխատաՆքի հեՆց կուսակցակաՆ կոմիտեՆերի հՆարավորություՆՆերը։

ԸՆկերՆե՛ր։

ՄեՆք բոլորս՝ կուսակցակաՆ կոմիտեՆերը, սովետակաՆ մարմիՆՆերը, միությունները ու գերատեսչություՆՆերը, ՀԱՄԽ-ը, ՀայաստաՆի ԼԿԵՄ ԿեՆտկոմը, մյուս հասարակակաՆ կազմակերպություՆՆերի ղեկավար մարմիՆՆերը, պետք է գործՆակաՆ միջոցառումՆեր իրակաՆացՆեՆք կուսակցության XXVII համագումարի և ՍՄԿԿ ԿեՆտկոմի հուՆվարյաՆ պլեՆումի հիմՆադրույթՆերի լույսի Ներքո կադրերի հետ տարվող աշխատաՆքի բարելավմաՆ համար։ Սա մեծ ու պատասխաՆատու խՆդիր է, որի կատարմաՆ համար մեՆք չպիտի խՆայեՆք ոչ ուժ, ոչ էլ եռաՆդ։

ԿեՆտկոմի բյուրոՆ վստահ է, որ մեր ամբողջ կուսակցակաՆ կազմակերպության ջաՆքերով վերափոխումՆերը հաՆրապետության տՆտեսակաՆ, սոցիալակաՆ և հոգևոր ոլորտՆերում կըՆդլայՆվեՆ ու կխորաՆաՆ։ Դրա գրավակաՆը հաՆրապետության կոմուՆիստՆերի, բոլոր աշխատավորՆերի կողմից կուսակցության լեՆիՆյաՆ Ներքին ու արտաքիՆ քաղաքակաՆությաՆը, սկսված վերակառուցմաՆը ցույց տրվող ջերմ պաշտպաՆությունՆ է, տասՆերկուերորդ հՆգամյակի պլաՆՆերի հաջող կատարմաՆ համար լայՆորեՆ ծավալված հայրեՆասիրակաՆ շարժումը։

1987 թվակաՆը առաՆձՆահատուկ, ՆշաՆակալից տարի է։ Դա մեծ Հոկտեմբերի 70-ամյակի տարիՆ է։ Դա այՆ տարիՆ է, որիՆ շատ կարևոր դեր է վերապահված արագացմաՆ կուսակցության ստրատեգիակաՆ կուրսի իրացմաՆ գործում։ ԱյՆ բաՆից, թե մեՆք ինչպես կաշխատեՆք, կախված կլիՆի ամբողջ հՆգամյակի, մեր կարևորագույՆ ձեռՆարկումՆերի և հեռաՆկարայիՆ պլաՆՆերի կատարմաՆ հաջողությունը։

Ահա թե ինչու այՆքաՆ կարևոր է ուշադրությունը կեՆտրոՆացՆել կոՆկրետ գործերի, ամբողջ ՆախատեսվածԻ իրացմաՆ վրա։ ԱՆհրաժեշտ է ապահովել հոբելյաՆակաՆ տարվա տՆտեսակաՆ և քաղաքակաՆ խՆդիրՆերի լրիվ կատարումը։ ՅուրաքաՆչյուր աշխատավորակաՆ կոլեկտիվ պետք է աՆպայմաՆորեՆ ապահովի մեծ Հոկտեմբերի 70-ամյակի պատվիՆ ստաՆձՆած սոցիալիստակաՆ բոլոր պարտավորություՆՆերի կատարումը։

Թույլ տվեք վստահություՆ հայտՆել, որ այժմ, երբ մեր կուսակցությունը մշակել է ժամաՆակի պահաՆջՆերիՆ համապատասխաՆող քաղաքակաՆ կուրս, հստակորեՆ Նշել դրա իրացմաՆ ուղիՆերը, մեր յուրաքաՆչյուր սկզբՆակաՆ կուսկազմակերպություՆ ու կուսակցակաՆ կոմիտե, յուրաքաՆչյուր ղեկավար, յուրաքաՆչյուր կոմուՆիստ խորապես կգիտակցի Ներկա մոմեՆտի գլխավոր խՆդիրը, կգործի առավել ակտիվորեՆ, համարձակ, ձեռՆհաս, ստեղծագործաբար, աՆվերապահորեՆ կիրակաՆացՆի կուսակցության XXVII համագումարի, ՍՄԿԿ ԿեՆտկոմի հուՆվարյաՆ պլեՆումի առաջադրած բոլոր խՆդիրՆերը։

Վ. Ի. Լենինի ծննդյան

117-ամյակի առթիվ

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԴԻՐ

**Վ. ՄԱՅԻԼՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ**

ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԸ, մեծ նշանակություն տալով բոլշևիզմի՝ որպես բանվոր դասակարգի քաղաքական կուսակցության պատմության ուսումնասիրությանը, գրել է. «Գիտակից բանվոր չի կարող լինել նա, ով իր շարժման պատմությանը վերաբերվում է ինչպես Իվան Նեպոմնյաշչին» (**ԵԼԺ,** հ. 25, էջ 161):

Կուսակցության ողջ գործունեության պատմության, նրա փորձի, ավանդույթների, մասսաներին ճիշտ ղեկավարելու լենինյան նորմերի ստեղծագործաբար ուսումնասիրությամբ միայն իրականացվում են կադրերի պատրաստման հաջորդայնությունը, կոմունիզմի համար մղվող պայքարում սովետական ժողովրդի առջև ծառացող խնդիրների լուծումը: ՍՄԿԿ պատմության ուսումնասիրումն օգնում է աշխատավորությանը դաստիարակելու մարքսիզմ-լենինիզմի ոգով, բարձր գաղափարայնությամբ, այն հակակոմունիզմի գաղափարախոսության դեմ պայքարի գործուն միջոց է և, ինչպես հասարակական գիտելիքների մյուս ճյուղերը, գտնվում է կուսակցության գաղափարադաստիարակչական աշխատանքների կենտրոնում: «Ստեղծագործության մթնոլորտը, որը կուսակցությունը հաստատում է կյանքի բոլոր բնագավառներում,— նշեց Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ XXVII համագումարում,— առանձնապես արգասավոր է հասարակական գիտությունների համար: Մենք հուսով ենք,— շարունակեց նա,— որ մեր տնտեսագետներն ու փիլիսոփաները, իրավաբաններն ու սոցիոլոգները, պատմաբաններն ու գրականագետներն այդ մթնոլորտն ակտիվորեն կօգտագործեն նոր պրոբլեմների համարձակ, նախաձեռնողական առաջադրման համար, դրանց ստեղծագործական տեսական մշակման համար» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 119—120):

Կուսակցության պատմության ուսումնասիրության գործում զգալի տեղ է հատկացվում նրա պատմագրությանը: Դրա շատ պրոբլեմներ դեռևս թույլ են լուսաբանված, այդ պատճառով էլ խիստ հրատապ են և գտնվում են հետազոտողների ուշադրության կենտրոնում:

ՍՄԿԿ պատմության պատմագրությունը կուսակցության կազմավորման ու զարգացման տարեգրության մարքս-լենինյան իմաստավորումն է, համակարգումը: Պատմակուսակցական գիտության պատմագրության սկզբնավորումը անխզելիորեն առնչվում է Ռուսաստանում մարքսիստական կուսակցության ստեղծման ու ամրապնդման համար Վ. Ի. Լենինի և նրա զինակիցների ծավալած պայքարի հետ: Նրա առանձին պրոբլեմների մշակումն սկիզբ առավ ՌՍԴԲԿ-ի ձևավորվող պատմության ուսումնասիրման հետ զուգընթաց:

Վ. Ի. Լենինը, լինելով կուսակցության ստեղծողն ու առաջնորդը, միաժամանակ դարձավ նրա պատմության, ինչպես նաև այդ գիտության պատմագրության հիմնադիրը: Կուսակցության պատմության ուսումնասիրության տեսական հիմքը Լենինը



տեսնում էր Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հարուստ գիտական ժառանգության մեջ: Դրա հետ մեկտեղ, նրա եզրակացությունները և ընդհանրացումները կուսակցության պատմության և պատմագրության մեջ երբեք չեն անջատվել կուսակցության որոշումներից ու վավերագրական աղբյուրներից, որոնք անմիջականորեն արտացոլել են հեղափոխական բանվորական ու սոցիալ-դեմոկրատական շարժումները Ռուսաստանում և արտասահմանում: Լենինն օգտագործել է նաև ընթացիկ մամուլի նյութերը, անձնական դիտողությունների հարուստ փորձը, սոցիալ-դեմոկրատական շատ գործիչների հետ ունեցած զրույցներն ու ծավալուն գրագրությունները կուսակցության պատմության հարցերի վերաբերյալ:

Կուսակցության պատմության պատմագրության հիմնական պրոբլեմները Լենինը մշակել է դասակարգային մարտերում, աշխատավորության շահերի համար մղվող իր գաղափարական-քաղաքական պայքարի և կազմակերպչական գործունեության ընթացքում: Պատմագրության վերաբերյալ լենինյան ցուցումներ պարունակվում են նրա շատ աշխատություններում: Բայց անմիջականորեն այդ գիտելիքների մարզում Վ. Ի. Լենինն իր դրույթներն արտահայտել է պատմակուսակցական թեմայի հետ կապված հարցեր լուսաբանող երկերում: Դրանցից են, օրինակ, **ՌՍԴԲԿ պառակտման համառոտ ակնարկ, Առաջաբան «12 տարում» ժողովածուի,** ինչպես և **Իվան Վասիլևիչ Բաբուշկին** մահախոսականը, այնուհետև, լենինյան դիտողությունները Մ. Ն. Պոկրովսկու **Ռուսական պատմությունը ամենահակիրճ ակնարկում** հետազոտությունների և **Առաջաբան Ի. Ի. Ստեպանովի «ՌՍՖՍՀ էլեկտրիֆիկացումը համաշխարհային տնտեսության անցումնային փուլի կապակցությամբ»** գրքի առթիվ:

Պատմակուսակցական գիտության պրոբլեմները նրա պատմագրության ասպեկտում Լենինը լուսաբանել է նաև ամերիկյան հրատարակության առթիվ գրած Ջոն Ռիդի **10 օր որ ցնցեցին աշխարհը** գրքի առաջաբանում, Ա. Թոդորսկու **Մեկ տարի՝ հրացանի և գութանի հետ** աշխատության մասին, **Փոքրիկ պատկեր մեծ հարցեր պարզելու համար** վերնագրով հոդվածատիպ գրախոսականում, Բելա Կունի **Հեղափոխությունից դեպի հեղափոխություն** բրոշյուրի մասին կարծիքում և այլ աշխատություններում, որոնք բովանդակում են նրա հիմնակազմիկ սահմանումները կուսակցության պատմության հետազոտման, մեթոդաբանության և մեթոդիկայի վերաբերյալ:

Այն աշխատություններում, որտեղ նյութեր կան պատմակուսակցական գիտության պատմագրության վերաբերյալ, Վ. Ի. Լենինը նրանց հեղինակներին նախազգուշացնում էր հեռու մնալ իրականությունը խեղաթյուրելու, դեպքերը և երևույթները իդեալականացնելու փորձերից: «Չի կարելի պատրանքներով տարվել,— գրել է նա,— առասպելներ ստեղծել իր համար— պատմության մատերիալիստական ըմբռնումը և դասակարգային տեսակետը անհաշտ թշնամին են դրան» (**ԵԼԺ,** հ. 10, էջ 263):

Վ. Ի. Լենինը անթույլատրելի էր համարում պատմական աշխատություններում լուսաբանված նյութերը գնահատել՝ առանց հաշվի առնելու այն պայմանները և հնարավորությունները, որոնք եղել են պատմական երևույթների նկարագրման ժամանակ: «Պատմական ծառայությունների մասին դատում են ոչ թե նրանով, թե ինչ **չեն տվել** պատմական գործիչները ժամանակակից պահանջների համեմատությամբ, այլ նրանով, թե նրանք ի՛նչ **նոր բան են տվել** իրենց նախորդների համեմատությամբ» (**ԵԼԺ,** հ. 2, էջ 220):

Պատմակուսակցական գիտության մեջ Վ. Ի. Լենինը ոչ միայն սկզբունքային գնահատականներ տվեց, այլև հսկայական աշխատանք կատարեց մերկացնելու ՌՍԴԲԿ պատմության կեղծարարներին՝ սևհարյուրականների, լիբերալ-բուրժուական և օպորտունիստական կուսակցությունների ներկայացուցիչներին, որոնք ձգտում էին երկրում հեղափոխական բանվորական և սոցիալ-դեմոկրատական շարժումների փաստերն աղճատել իրենց օգտին: Այսպես, իր վաղ աշխատություններում արդեն, պաշտպանելով Ռուսաստանում հեղափոխական շարժման պատմության մարքսիստական կոնցեպցիան, նա դեմ դուրս եկավ «էկոնոմիստներին», որոնք չէին գնահատում 70-ական թվականների հեղափոխականներին, գերագնահատում էին լիբերալ նարոդնիկ Ն. Կ. Միխայլովսկուն և չէին տեսնում այն սկզբունքային տարբերությունը, որ բաժանում էր ռուսական մարքսիստներին նրանց նախորդներից:

Այդ տեսանկյունից Լենինը սուր քննադատության ենթարկեց հատկապես Դ. Բ. Ռյազանովի 1901 թ. «Զարյա» ամսագրի համար գրած **Երկու ճշմարտություն** վերտառությամբ հոդվածը, որը մերժվեց խմբագրության կողմից ու չհրապարակվեց (տե՛ս **ԵԼԺ,** հ. 5, էջ 503—505):

Վ. Ի. Լենինի այդ ժամանակաշրջանի աշխատություններում, երբ դեռ պայքար էր գնում ՌՍԴԲԿ-ի ստեղծման համար, կուսակցության պատմության լենինյան սկզբունքների հիմքը դրվեց: Դրանք արտացոլվեցին այն դրույթներում, որտեղ մերկացվում էր Ռուսաստանի բանվոր դասակարգի քաղաքական ոչ հասունության և իր կուսակցությունը ստեղծելու անընդունակության մասին «էկոնոմիստների» սխալ տեսակետները:

Այդ առումով կարևոր էին Լենինի **Ռուսական սոցիալ-դեմոկրատների խնդիրները** (1897 թ.), **Հետընթաց ուղղություն ռուսական սոցիալ-դեմոկրատիայի մեջ** (1899), **Մեր շարժման կենսական խնդիրները** (1900), **Ի՞նչ անել** (1902), **Ռուսական սոցիալ-դեմոկրատների խնդիրները** բրոշյուրի երկրորդ հրատարակության առթիվ առաջաբանը և այլ աշխատությունները, որտեղ նա հանդես եկավ ոչ միայն «էկոնոմիզմի» տեսական, քաղաքական և կազմակերպչական հիմունքների դեմ, այլև վճռականորեն քննադատեց նրանց սխալ հայացքները երկրում բանվորական և սոցիալ-դեմոկրատական պատմության շարժման վերաբերյալ:

Ռուսաստանում բանվորական շարժման ներսում եղած հեղափոխական և օպորտունիստական թևերի միջև գաղափարական-տեսական և քաղաքական պայքարը տեղափոխվեց նաև պատմակուսակցական գիտության բնագավառը:

Առաջիններից մեկը, որ օպորտունիստական գրականության մեջ սկիզբ դրեց ռուսական սոցիալ-դեմոկրատական պատմության նպատակամետ խեղաթյուրմանը, «էկոնոմիստների» լիդեր Վ. Ակիմովն (Մախնովեց) էր, որը 1905 թ. Ժնևում հրատարակեց **Նյութեր ռուսական սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության զարգացման բնութագրման համար** վերնագրով բրոշյուրը: Հետո այն վերահրատարակվեց Ռուսաստանում և լույս տեսավ **Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատական զարգացման ակնարկներ** նոր վերնագրով (СПб, 1906 г.): Բացի դրանից նա գրեց նաև մի շարք հոդվածներ՝ **Մայիսի մեկը Ռուսաստանում, Ապագայի կառուցողները, Ռուսական ս.-դ. կուսակցության առաջին համագումարը, ՌՍԴԲ կուսակցության երկրորդ համագումարի պատմության առթիվ** և այլն (տե՛ս «Былое», 1906 г., №№ 10, 11, 12; «Образование», 1907 г., №№ 4, 5, 6; «Минувшие годы», 1908 г., №№ 2, 7):

Այդ աշխատություններում ռուսական սոցիալ-դեմոկրատիայի ողջ պատմությունը Վ. Ակիմովը պատկերում է որպես գործնականում «էկոնոմիզմի» տեսության կենսագործում: Նա ՌՍԴԲԿ-ն բնութագրում է որպես «բանվորական տարերային շարժման գիտակցված դրսևորողի»: Հենց այդ դիրքերից էլ Ակիմովը պաշտպանում է «էկոնոմիստների» այն գաղափարը, թե շարժումն ամեն ինչ է, իսկ գիտակցությունը՝ ոչինչ, մանրուք: «Փուլի տեսության» հիման վրա նրա շարադրած կուսակցության պատմությունը բովանդակում էր զարգացման միանգամայն սխալ պարբերացում: Առաջինը խմբակային փուլն էր (80—90-ական թվականների առաջին կեսը), դրան հաջորդում է տնտեսական պայքարի փուլը (1895—1897 թթ.), հետո՝ հասարակական-իրավական պայքարի, հեղինակի արտահայտությամբ, «այսպես կոչված էկոնոմիզմի փուլը» (1897—1900 թթ.) և, վերջապես, «Իսկրայի» (1900—1903 թթ.) հատկանշական քաղաքական պայքարի փուլը, որը նա դիտում էր որպես Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատական կուսակցության «նորմալ» ուղուց շեղվող զարգացում և պայքարում էր այն վերադարձնել ՌՍԴԲԿ պատմության, ինչպես Լենինն է բնութագրել «տարընթացությունների և տատանումների» ժամանակաշրջանը: Վ. Ակիմովը ռուսական սոցիալ-դեմոկրատական կուսակցության համար որպես ընդօրինակման արժանի մատնանշում էր արևմտաեվրոպական օպորտունիզմը, որը գաղափարապես և կազմակերպչորեն խզվեց հեղափոխական մարքսիզմից:

Կուսակցության պատմության լուսաբանման նման միտումը իրենց աշխատություններում շարունակեցին և մենշևիկյան հեղինակները: Նրանց գլխավոր ձգտումն էր արատավորել բոլշևիկներին և արդարացնել կուսակցությունը ներսից պառակտելու իրենց կազմալուծիչ գործողությունները: Մենշևիկները ցանկանում էին ապացուցել, որ բոլշևիկները, Լենինի գլխավորությամբ, իբր թե հեռացել են մարքսիզմից, իսկ իրենք, հակառակ դրան, պաշտպանում են հեղափոխական ճիշտ դիրքերը: Նման կեղծարարությունը նրանց մղում էր դեպի կուսակցության պատմության խեղաթյուրում և, փաստորեն, մարքսիզմի փոխարինումը բեռնշտայնականությամբ, դեպի II ինտերնացիոնալի առաջնորդների տեսական ու պրակտիկ գործունեության ջատագովում: Մենշևիկները մարքսիզմը դիտում էին որպես դոգմա և ոչ թե գործողության ղեկավար սկզբունք: Հենց Մարքսի և Էնգելսի ուսմունքի նկատմամբ ստեղծագործական մոտեց-



ման բացակայությունը, Ռուսաստանում բանվորական հեղափոխական շարժման յուրահատկությունը չըմբռնելը, հասարակական-տնտեսական երևույթների և ռուսական իրականության մեջ դրանց զարգացումն Արևմտյան Եվրոպայի պայմանների հետ նույնացնելը հանգեցրին այն լուրջ սխալներին, որոնք վճռական դեր խաղացին մենշևիկների օպորտունիզմի ձևավորման և հակահեղափոխական ուժերի հետ ուղղակի համաձայնության գալու գործում:

ՌՍԴԲԿ պատմության մենշևիկյան կեղծարարությունը սկսվեց բոլշևիկների դեմ նրանց պառակտիչ գործողություններով կուսակցության II համագումարից անմիջապես հետո: Այն ավելի ցայտուն արտահայտվեց Յու. Օ. Մարտովի, Պ. Բ. Ակսելրոդի, Վ. Ի. Զասուլիչի և այլ մենշևիկների հոդվածներում, որոնք երևացին նոր «Իսկրայի» էջերում (տե՛ս **За два года.** Сборник статей, изд. «Искры», СПб. 1906 г.):

Նրանք փորձում էին խեղաթյուրել Ռուսաստանում բանվորական սոցիալ-դեմոկրատական հեղափոխական նոր տիպի կուսակցության ստեղծման համար Վ. Ի. Լենինի և նրա կողմնակիցների ծավալած պայքարի իսկական իմաստը: Այդ հեղինակների գրվածքներում հաճախ լռության էր մատնվում ՌՍԴԲԿ-ում եղած երևույթների իրական վիճակը:

1904 թվականին մենշևիկները II ինտերնացիոնալի Ամստերդամի միջազգային սոցիալիստական կոնգրեսին ներկայացրին Ֆ. Դանի գրած հաշվետվության նման մի զեկուցում, որտեղ աղավաղել էին ռուսական բանվորական և սոցիալ-դեմոկրատական շարժումը: Նրանք կեղծել էին լենինյան «Իսկրայի» գործունեությունը, լռության էին մատնել հանուն պրոլետարիատի հեգեմոնիայի և հեղափոխական կուսակցություն ստեղծելու պայքարի գաղափարը: Մենշևիկներն իրենց զեկուցման մեջ կամենում էին ցույց տալ, որ Ռուսաստանում ցարիզմի դեմ հասարակական շարժման ասպարեզում դեմոկրատական միտումն իբր թե գերակշռող էր սոցիալիստականի հանդեպ: Նրանք անդրադարձել էին երկրում պրոֆեսիոնալ հեղափոխականների և նրանց ղեկավար կենտրոնի կազմակերպությունների կազմավորման նշանակությանը: Զեկուցման մեջ ՌՍԴԲԿ-ն գնահատվում էր իբրև առավելապես ինտելիգենտների և ոչ թե բանվորների կազմակերպություն: Մենշևիկների հաշվետվությունը կոնգրեսին փաստորեն զրպարտանք էր բոլշևիկների ու Լենինի դեմ, և «լրկին հաստատում էր, որ օպորտունիզմը պատմական ճշմարտության հետ անհաշտ է» (տե՛ս **Из истории создания партии нового типа.** Доклад большевиков международному социалистическому конгрессу в 1904 г., М., 1963 г., с. 6):

Վ. Ի. Լենինը, հասկանալի է, չէր կարող հաշտվել երկրում բանվորական և սոցիալ-դեմոկրատական շարժման պատմության և ՌՍԴԲԿ II համագումարից հետո երկրում գործերի իրական դրության նման կեղծման հետ: Լենինը որոշեց նույն կոնգրեսին ներկայացնել առանձին զեկուցում բոլշևիկների կողմից: Այն գրվեց **Վլադիմիր Իլյիչի** անմիջական ղեկավարությամբ՝ կուսակցական հայտնի գործիչներ **Մ. Լյադովի, Պ. Կրասիկովի**, Ն. Մալինինի մասնակցությամբ: Զեկուցումը լույս տեսավ գերմաներեն որպես բրոշյուր և Վ. Ի. Լենինի առաջարկությամբ վերնագրված էր. **Նյութեր Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցությունում ճգնաժամը պարզաբանելու առթիվ:** Նա գտնում էր, որ միայն ռուսական բանվորական և սոցիալ-դեմոկրատական շարժման իսկական լուսաբանումը կարող է հստակ պատասխան տալ և ճշմարտացիորեն բացատրել բոլշևիկների տարաձայնությունները մենշևիկների հետ և ցույց տալ նրանց ներկուսակցական պայքարի էությունը: Զեկուցումը մեծ հետաքրքրություն առաջացրեց կոնգրեսի մասնակիցների շրջանում: Ուշադրություն չդարձնելով մենշևիկների զայրույթի վրա, բոլշևիկյան հաշվետվությունն ընթերցվեց յուրաքանչյուր պատվիրակի կողմից: Վ. Ի. Լենինի անմիջական նախաձեռնությամբ գրված այդ փաստաթուղթը համարվում է առաջին ընդհանրացնող պատմակուսակցական ակնարկը բոլշևիկյան գրականության մեջ:

Կուսակցական ընդհանուր հարցերին զուգընթաց նրանում լուսաբանվեցին նաև տեղերում, այդ թվում և Անդրկովկասում, բանվորական և սոցիալ-դեմոկրատական շարժման պատմության հետ կապված պրոբլեմներ: Զեկուցման մեջ մեկ անգամ չէր, որ հիշատակվում էին Թիֆլիսի, Բաքվի, Բաթումի կոմիտեները և ՌՍԴԲԿ կովկասյան համագումարը: Մասնավորապես նրանց մասին Վ. Ի. Լենինը գրում է այդ աշխատության վերջին գլխում՝ որպես ամբողջությամբ բոլշևիզմի դիրքերում կանգնած կուսակցական կազմակերպությունների (նույն տեղը, էջ 89—90):

Մենշևիկները, նախկին իսկրայականները, ընտրելով օպորտունիզմի ուղին, հրաժարվեցին իրենց նախկին հայացքներից և միանգամայն այլ դիրքերից էին նայում Ռուսաստանում բանվորական և սոցիալ-դեմոկրատական շարժման հարցերին, դրանց թվում և՝ կուսակցության պատմությանը:

Այդ տեսակետից նրանցից ամենաբնութագրականը վարքագիծը Մարտովինն էր, որը սկզբից պաշտպանում էր «Իսկրայի» գաղափարները «էկոնոմիզմի» դեմ պայքարում՝ իր **Կարմիր դրոշը Ռուսաստանում** բրոշյուրում նշելով, որ XIX դարի 90-ական թվականների կեսերին տեղի ունեցավ սոցիալիզմի միացումը բանվորական շարժման հետ: Բայց այդ աշխատության «ուղղված» երկրորդ հրատարակության մեջ արդեն, երբ հեղինակը սահեց մենշևիզմի դիրքերը, նա նախկինին հակառակ հայտարարեց, որ կուսակցության II համագումարից հետո նույնիսկ «սոցիալիզմի միացման և պրոլետարիատի դասակարգային պայքարի՝ տարերային զարգացման հարցերը... դեռևս առաջիկայում են (Л. Мартов, **Пролетарская борьба в России**. СПб, 1906 г., с. 132):

ՌՍԴԲԿ պատմության կեղծումը լիովին դրսևորվեց մենշևիկ Ա. Ն. Պոտրեսովի մոտ: Խեղաթյուրելով հին «Իսկրայի» գործունեությունը, նա այն ներկայացնում էր որպես «ինտելիգենտական», մասսաներից կտրված կազմակերպություն: Զախազանցնելով հեղափոխության մեջ պրոլետարիատի հեգեմոնիայի գաղափարը՝ Պոտրեսովը նսեմացնում էր պրոֆեսիոնալ հեղափոխականների աշխատանքը, արհամարհանքով արտահայտվում դրա մասին: **Մեր եզրահանգումները** հոդվածում նա կուսակցությունը որակում էր որպես ինտելիգենտների կազմակերպություն, ընդ որում Վ. Ի. Լենինը իբր թե նույնպես նման սահմանման կողմնակից էր և դա պրոպագանդում էր իր **Ի՞նչ անել** աշխատությունում (տե՛ս А. Н. Потресов, Этюды о русской интеллигенции. Сборник статей, СПб, 1906 г., с .276): Լենինյան «Իսկրայում» պրոլետարիատի հեգեմոնիայի հարցի մշակման պատմությունը խեղաթյուրելու Պոտրեսովի փորձերը Վ. Ի. Լենինը սուր քննադատության ենթարկեց իր **Բանվորական և բուրժուական դեմոկրատիա** աշխատության մեջ:

1905—1907 թթ. հեղափոխության պարտությունից հետո Ռուսաստանում բոլշևիկների և մենշևիկների միջև կուսակցության պատմության հարցերի վերաբերյալ պայքարն էլ ավելի սուր բնույթ կրեց:

Այդ տարիներին ՌՍԴԲԿ պատմության լուսաբանման վերաբերյալ մենշևիկների հրատարակած **Հասարակական շարժումները Ռուսաստանում դարասկզբում** բազմահատոր կոլեկտիվ աշխատությունը, ուր զետեղված էին Մարտովի, Մասլովի, Պոտրեսովի և այլոց հոդվածները, համարվում էր լիկվիդատորություն և ուղղված էր կուսակցության դեմ:

1909 թ. Պետերբուրգում **Հասարակական շարժումները Ռուսաստանում XX դարասկզբում** առաջին հատորի լույս ընծայումից հետո, Վ. Ի. Լենինն իսկույն ևեթ այդ գիրքը սուր քննադատության ենթարկեց **Բուրժուազիայի «ձախացումը» և պրոլետարիատի խնդիրները, Լիկվիդատորության լիկվիդացիան, Ժամանակակից գաղափարական տարրնթացության մի քանի աղբյուրների մասին, Հրապարակախոսի նոթեր, Ներկուսակցական պայքարի պատմական իմաստը Ռուսաստանում** և այլ հոդվածներում, որոնք հրապարակվեցին բոլշևիկյան պարբերական մամուլում:

Դրանցում բացահայտվեց մենշևիկյան հայացքների հակագիտական էությունը և հաստատվեց, որ կուսակցության պատմության և Ռուսաստանում հեղափոխական շարժման հարցերի լուսաբանումը կրում է օպորտունիստական բնույթ: ՌՍԴԲԿ պատմության լրիվ կեղծումը նրանց հասցրեց այն բանին, որ Յու. Օ. Մարտովը ժողովածուում Ա. Եգորով կեղծանվան տակ տեղադրված **Քաղաքական կուսակցությունների ծագումը և նրանց գործունեությունը** հոդվածում ուղղակի հաստատում էր, որ լենինյան «Իսկրայի» կողմից անցկացվող ցենտրալիզմն իբր թե այն վերածեց դավադրական կազմակերպության, իսկ II համագումարում ստեղծված կուսակցությունը կտրված է մասսաներից և իր կազմով հիմնականում ընդգրկել է ինտելիգենցիային, որը կապ չունի բանվորական շարժման հետ Ռուսաստանում (տե՛ս **Общественное движение в России в начале XX века**, СПб, 1909 г., т. 1, с. 398 — 414): Հակառակ փաստերին, նա բոլշևիկներին մեղադրում էր բլանկիզմի մեջ: Նույն վարկածը ամբողջությամբ պաշտպանում էր Ա. Մ. Մարտինովը: Նա դեմ դուրս գալով բոլշևիկներին, փորձում էր Վ. Ի. Լենինին նույնիսկ ներկայացնել որպես «էկոնոմիզմի» տեսության հիմնադիր (А. Мартынов. **Главнейшие моменты в истории русского марксизма.** Общественное движение в России в начале XX века. СПб, 1910 г., т. 2, ч. II):



Մենշևիկյան այդ գիրքը, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, ներծծված էր հրեշայնությամբ, ուրացողության գաղափարով այն մասին, որ «գյուղացիական շարժումը հետադիմական է, որ կադետը տրուդովիկից առաջադեմ է», որ «պրոլետարիատի և գյուղացիության դիկտատուրան»... հակասում է երկրի «տնտեսական զարգացման ամբողջ ընթացքին» (տե՛ս Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 47, էջ 278):

Այսպիսով, կուսակցության պատմության ասպարեզում բացահայտելով մենշևիկյան աղավաղումներն ու կեղծումները, Լենինը բոլշևիկյան սկզբունքայնությամբ ցույց տվեց նրա գաղափարական-քաղաքական նպատակը՝ արդարացնել 1905—1907 թթ. հեղափոխության ժամանակ օպորտունիստների դավաճանությունը, կեղծել իրականությունը, հրաժարվել անլեգալ աշխատանքից ռեակցիայի տարիներին ու, այդպիսով, լիկվիդացնել ՌՍԴԲԿ-ն, հաճոյանալով II ինտերնացիոնալի առաջնորդներին՝ այն վերածել բեռնշտայնականության դիրքերին կանգնած կազմակերպության:

ՌՍԴԲԿ պատմության մենշևիկյան բացատրությունները ավելի մանրամասնորեն Մարտովի կողմից շարադրված են **Ռուսական սոցիալ-դեմոկրատիայի պատմություն: 1898—1907 թթ. ժամանակաշրջան** գրքում: Այն գրվել է մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը, բայց լույս է տեսել 1923 թ.: Այստեղ նա թշնամաբար է վերաբերվում նոր տիպի կուսակցություն ստեղծելու լենինյան սկզբունքներին: Բոլշևիկներին մեղադրելով մարքսիզմից հեռանալու մեջ, Մարտովը ամեն կերպ արդարացնում է մենշևիկների օպորտունիստական գործողությունները: Իր համախոհների տեսությունն ու տակտիկան նա ներկայացնում է որպես իսկական հեղափոխական գաղափարախոսություն, որը, իբր թե, ծառայում է բանվորների շահերին: Գրքում, շրջանցելով Վ. Ի. Լենինի **Ի՞նչ անել** աշխատությունը և չբացառելով նրա դրական նշանակությունը կուսակցության ստեղծման պայքարում «Իսկրայի» գաղափարները տարածելու առումով, հատկապես ի նկատի ունենալով այն հատվածը, որտեղ խոսքը բանվորական տարերային շարժման մեջ սոցիալիստական գիտակցություն մտցնելու մասին է, Մարտովն այդ կարևոր դրույթը կասկածի տակ է դնում և վճռականորեն պնդում, թե մարքսիզմի տեսակետից այն իբր հիմնավորված չէ: ՌՍԴԲԿ II համագումարի պատմությունը և բոլշևիկների ու մենշևիկների միջև հետագա ներկուսակցական պայքարը Մարտովը լիովին կեղծել է: Այսպես, կուսակցության գաղափարական անաղարտության և միասնականության, նրա շարքերի ամրապնդման և ՌՍԴԲԿ կենտրոնական օրգանների շուրջը համախմբելու համար Վ. Ի. Լենինի անհաշտ պայքարը Մարտովը դիտում է որպես կուսակցական կազմակերպություններում բոլշևիկների կողմից իրենց «դիկտատուրան» հաստատելու ձգտում: Այնուամենայնիվ, Ռուսաստանում պատմական դեպքերի միտումնավոր լուսաբանմամբ հանդերձ, նա ստիպված է ընդունել, որ Լենինի կողմնակիցների վարքագիծը 1905—1907 թթ. տարիներին եղել է ավելի ճիշտ, քան մենշևիկներինը, քանի որ արտացոլել է մասսաների պայքարի օբյեկտիվ պայմանները ընդդեմ ցարիզմի:

Կուսակցության պատմության վերաբերյալ հիմնադրույթները, որ առաջ է քաշել Մարտովն իր այդ գրքում, բնութագրական են և մյուս մենշևիկների համար: Դրանք առկա են նաև Գ. Պլեխանովի, Ա. Պոտրեսովի, Վ. Զասուլիչի, Յու. Լարինի, Ֆ. Բուլկինի և այլ մենշևիկ տեսաբանների աշխատություններում, որոնք կանգնեցին կուսակցության պատմությունը կեղծելու ուղու վրա: Այդ առումով ավելի հատկանշական է լիկվիդատորական «Ժիվայա ժիզն» թերթում (№ 8, 19 հուլիսի, 1913 թ.) Վ. Զասուլիչի **Մի հարցի առթիվ** հրատարակած հոդվածը: Հակառակ անժխտելի փաստերի, նա ձգտել է ապացուցել, որ Ռուսաստանում գոյություն չունի բանվորական հեղափոխական կուսակցություն:

Վ. Ի. Լենինը **Ինչպես է Վ. Զասուլիչը սպանում լիկվիդատորությունը** հոդվածում դատապարտում է նրա մենշևիկյան պնդումները, որ նպատակամղված էին պաշտպանելու կուսակցության պատմության օպորտունիստական լուսաբանումները: Նկատի ունենալով Զասուլիչի նման գրպարտությունները, Վ. Ի. Լենինը հայտնում է, որ նա «այնպես է գրում կուսակցության պատմությունը, որ յուրաքանչյուր քայլափոխի հանդիպում ես փաստերի զարմանալի՛, անհավատալի՛ աղավաղման» (**ԵԼԺ**, հ. 24, էջ 38): Հակառակ Զասուլիչի ցանկության՝ ապացուցելու, որ ՌՍԴԲԿ կտրված է եղել բանվորներից, Լենինը շեշտում է նրա շաղկապվածությունը ռուսական պրոլետարիատի առաջավոր ներկայացուցիչների հետ, որոնք կուսակցության մեջ մտած մտավո-

րականության հետ մեկտեղ մշտապես և ակտիվորեն մասնակցել են ագիտացիոն-պրոպագանդիստական և կազմակերպչական աշխատանքներին կենտրոններում ու տեղերում: Լենինն այն կարծիքին էր, որ կուսակցության մասին Զասուլիչի լիկվիդատորական հայտարարությունները նշանակում են «ոչ միայն թույլ տալ խոշորագույն աղաղակող պատմական անճշտություն: Դա նշանակում է **հրաժարվել կուսակցությունից»** (նույն տեղը, էջ 28):

Լենինի աշխատություններում կուսակցության պատմության լուսաբանման մարքսիստական կոնցեպցիան սկզբունքորեն անհարիր էր նաև Լ. Տրոցկու մանրբուրժուական դիրքերին, որը հանդես էր գալիս բոլշևիկների դեմ: Դեռևս 1904 թ. Ժնևում հրատարակված **Մեր քաղաքական խնդիրները** վերնագրով բրոշյուրում նա փորձում էր արդարացնել մենշևիկների պառակտիչ գործողությունները, խեղաթյուրել ՌՍԴԲԿ II համագումարի իմաստը, աքողել ներկուսակցական պայքարի սրությունը և կասկածի տակ դնել բոլշևիզմի առաջացման օբյեկտիվ օրինաչափությունը: Տրոցկին իր աշխատությունում նպատակ էր հետապնդում «հերքել» պրոլետարական կուսակցության կառուցման լենինյան գաղափարական-կազմակերպչական սկզբունքները:

**Ներկուսակցական պայքարի պատմական իմաստը Ռուսաստանում** հոդվածում Վ. Ի. Լենինը գիտականորեն հիմնավորեց Մարտովի և Տրոցկու կողմից ՌՍԴԲԿ պատմության կեղծումը, ցույց տվեց ներկուսակցական պայքարի իսկական բովանդակությունը, այն է՝ երկրի բանվորական շարժման մեջ բոլշևիկները միշտ պաշտպանել են պրոլետարական-հեղափոխական, իսկ մենշևիկները՝ բուրժուա-լիբերալ գիծը:

Իր աշխատություններում Վ. Ի. Լենինը մերկացրեց մենշևիկների ու տրոցկիստների և մեկ ուրիշ վարկած, որ իբր բոլշևիկների հետ իրենց տարաձայնությունները հանդիսանում են մասսաների և առաջին հերթին «չհասունացած պրոլետարիատի» վրա գաղափարապես, քաղաքականապես ազդեցություն ունենալու պայքարը: Պատմական համոզիչ փաստերով նա ցույց տվեց, որ Ռուսաստանում բանվոր դասակարգի քաղաքական հետամնացության մասին օպորտունիստական «դրույթը» զրպարտություն է ռուս պրոլետարիատի հերոսական պայքարի հասցեին, պրոլետարիատ, որը ցուցադրեց անօրինակ արիություն և մասսայական հերոսություն 1905—1907 թթ. հեղափոխության ժամանակ:

Բացահայտելով մենշևիկների և տրոցկիստների սոցիալական և գաղափարական արմատները, Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ նրանք իրենց տեսական աշխատություններում, կանգնելով սուբյեկտիվիզմի և դոգմատիզմի դիրքերում, ՌՍԴԲԿ պատմությունը լուսաբանելու հարցերում միաժամանակ հրաժարվեցին կուսակցական սկզբունքներից և հետևողական պատմականությունից:

Կուսակցության պատմության և հեղափոխական շարժման կեղծումների վերաբերյալ լենինյան քննադատությունը ուղղված էր և բուրժուա-լիբերալ գործիչների դեմ Ռուսաստանում: Այնպիսի իդեոլոգներ, ինչպիսիք էին Պ. Ն. Միլյուկովը, Պ. Բ. Ստրուվեն, Ա. Ա. Կազեվիտտերը և ուրիշներ, իրենց աշխատություններում գլխավոր ուշադրությունը դարձնում էին լուսաբանելու բուրժուական դասակարգի ներսում տարբեր խմբերի ու կուսակցությունների քաղաքական ձգտումները՝ ներկայացնելով այդ պայքարը որպես հեղափոխության հիմնական բովանդակություն: Դրա հետ մեկտեղ, նրանք հակված էին ընդունելու աշխատավորության, հատկապես բանվորների և նրանց կուսակցության դերը ցարիզմի դեմ պայքարում:

Այդ տեսանկյունից հատկապես բնութագրական էին կադետ Միլյուկովի արտահայտությունները: «Քաղաքական կուսակցությունները երկրում և Դումայում» զեկուցման մեջ, որը ջախջախիչ քննադատության ենթարկեց Վ. Ի. Լենինը «Սոցիալ դեմոկրատ» թերթում (№ 10, 21. 12.1909 թ.) հրատարակված **Ռուսական լիբերալիզմի վերջին խոսքը** հոդվածում, Միլյուկովը հաստատում է, որ իբր սեհարյուրակային-բուրժուական ուժերը՝ միապետականները, կադետները և օկտյաբրիստները, ռուսական հեղափոխության մեջ ներկայացնում էին քաղաքական հիմնական ուղղությունները, իսկ մնացած կուսակցություններին, որ պաշտպանում էին ժողովրդի դեմոկրատական խավերի շահերը, նա դիտում էր ինչ-որ երկրորդային սոցիալական պայքարում՝ հանուն այն վերափոխումների իրականացման, որոնք օբյեկտիվորեն հասունացել էին Ռուսաստանում:

Վ. Ի. Լենինն իր աշխատություններում մշտապես մերկացնում էր բուրժուական խեղաթյուրումների ոչ գիտական բնույթը, որտեղ դասակարգային, շահադիտական



նպատակներով լռության էին մատնվում երկրի աշխատավորության և նրանց կուսակցությունների հեղափոխական պայքարի պատմության կարևորագույն հարցերը: «Արդ, կարելի՞ է, արդյոք պատկերացնել ավելի շահախնդիր դասակարգային կուրություն, պատմության ավելի մեծ աղճատում և պատմական գիտության այբբենական ճշմարտությունների մոռացում, ավելի ողորմելի խառնաշփոթություն, դասակարգի, կուսակցության ու անձնավորությունների խառնաշփոթում:

Ամեն մի կույրից ավելի վատթար է նա, **ով չի կամենում** տեսնել դեմոկրատիան ու նրա ուժերը» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 20, էջ 405):

Ռուսաստանում հեղափոխական շարժման, մասնավորապես ՌՍԴԲԿ պատմության լուսաբանման մեջ բուրժուական և օպորտունիստական նման կեղծումների քննադատությունը Վ. Ի. Լենինի կողմից հանդիսացավ ոչ միայն մարքսիստական մեթոդաբանության վրա հիմնված պատմակուսակցական գիտության իսկ հաստատման կարևոր գործոններից, այլև նրա պատմագրության ձևավորումը:

Ներկայումս բուրժուական աշխարհի ջատագովները, կրկնելով ՌՍԴԲԿ պատմության վերաբերյալ Լենինի մերժած կոնցեպցիաները, հետհայաց նպատակներ են հետապնդում՝ արատավորել բոլշևիզմը, կյանքի կոչել գաղափարները և քաղաքականությունը այն գործիչների, որոնք ժամանակին, դեմ դուրս գալով լենինիզմին, ձգտում էին լիկվիդացնել բանվոր դասակարգի հեղափոխական կուսակցությունը Ռուսաստանում: «Էկոնոմիստ» Ակիմովի, մենշևիկ Մարտովի, լիկվիդատոր Պոտրեսովի և այլ գործիչների բուրժուաօպորտունիստական հայացքները, որ խեղաթյուրում էին կուսակցության պատմությունը, վերածվել են ժամանակակից հակակոմունիզմի գաղափարախոսների և պրոպագանդիստների զինանոցի՝ «աշխատությունները» գրելու համար: Բուրժուական էպիգոններ Ռ. Փայպսը (ԱՄՆ), Դ. Գեյերը (ԳՖՀ), Զ. Ֆլետչերը (Անգլիա) և ուրիշներ իրենց աշխատություններում կրկնում են պատմության կողմից վաղուց հերքված նրանց հայացքները:

Բուրժուական պատմագիրների ընդհանուր ցանկությունն է ՍՄԿԿ պատմության և քաղաքականության ննենգափոխման միջոցներով հակադրել լենինիզմը մարքսիզմին՝ Լենինին և բոլշիկներին վերագրելով բլանկիզմի, հեղափոխական վոլյունտարիզմի գաղափարները: Այսպես, անգլիական պատմաբան Լ. Շապիրոն **Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը** գրքում փորձում է հիմնավորել, որ իբր բոլշևիկները կողմնակից էին դավադրական տակտիկայի, կապված չէին մասսաների հետ նույնիսկ Հոկտեմբերյան հեղափոխության իրականացման ընթացքում (տե՛ս Критика буржуазных концепций истории и политики КПСС. Л., 1974 г., с. 64): Բուրժուական գրականության մեջ, մասնավորապես, Ա. Մեյսերի **Լենինիզմ** աշխատությունում, առաջ է քաշված մեկ ուրիշ կեղծ դրույթ այն մասին, որ իբր թե բոլշևիկները հեռացան Մարքսի բացահայտած դետերմինիզմի սկզբունքից, որի հետևանքով լիբերալիզմը դարձավ պատմական պրոցեսի մանիպուլյատիվ տեսություն (նույն տեղը):

Արտասահմանյան պատմաբաններ Ն. Կոխը, Ա. Վեբերը, Պ. Մաուրախը, Ֆ. Ստեփանը, Ա. Զիգլերը և ուրիշներ ճգնում են Լենինին և բոլշևիկներին մեղադրել նույնպես հակադեմոկրատիզմի և «կուսակցության ընտրախավ» ստեղծելու մեջ՝ փորձելով իրենց դիկտատորությունը դնել մասսաների վրա» (նույն տեղը, էջ 65):

Ժամանակակից կեղծարարների նման գաղափարները ինքնատիպ չեն, այլ կրկնում են բոլշևիկյան կուսակցության դեմ ուղղված օպորտունիստների և հակահեղափոխության նախկին դոգմաները: Նրանք վկայակոչում են և Տրոցկուն, որն իր **Հոկտեմբերի դասերը** հոդվածում պնդում էր, թե իբր բոլշևիկները Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության իրականացման նախօրյակին հրաժարվեցին լենինիզմից և որպես ղեկավար գաղափար ընդունեցին տրոցկիստական «պերմանենտ հեղափոխության» տեսությունը, որը, ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինի կողմից ջախջախիչ քննադատության է ենթարկվել դեռևս ռեակցիայի ժամանակաշրջանում՝ որպես ռուսական իրականության մեջ աշխատավորության դասակարգային պայքարի օբյեկտիվ օրինաչափությունները արհամարհող ավանտյուրիստական քաղաքականություն (տե՛ս Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 17, էջ 461—465):

Պատմակուսակցական գիտության պատմագրության վերաբերյալ Լենինի գրական ժառանգության մեջ ձևակերպված են պայքարի հիմնական չափանիշները և եղանակները, որոնց ստեղծագործաբար յուրացումը ներկայումս ՍՄԿԿ քաղաքականությունը և պատմությունը աղճատող ամեն կարգի կեղծ դրույթները մերկացնելու համար վճռական գործողությունների կարևոր պայման է:

Պատմության պատմագրության վերաբերյալ Լենինի տված դասերն այսօր բացառիկ կարևոր նշանակություն են ձեռք բերել աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում: Պատմական վերլուծության լենինյան վարպետությունը, քաղաքական գնահատականների սկզբունքայնությունը և սոցիալական կանխատեսության գիտական ճշգրտությունը իրենց հետագա զարգացումն են ստացել սովետական պատմագրության մեջ:

Պատմագրության հարցերի վերաբերյալ լենինյան թեմատիկայի շատ դրույթներ պատմակուսակցական գիտելիքների բնագավառում պարունակում են Պ. Պոսպելովի, Ն. Մասլովի, Ա. Կոստինի, Ա. Զեվելևի և ուրիշների աշխատություններում:

ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում արտակարգ կարևոր են դարձել կուսակցական, պետական, հասարակական կազմակերպությունների գաղափարական գործունեության հարցերը, հասարակության զարգացման պրոցեսների իմացաբանությունը, որը ստեղծագործական խթան է սովետական հասարակագիտության բազմահազար աշխատողների, նրանց թվում ՍՄԿԿ պատմությունը և նրա պատմագրությունը հետազոտողների համար:

«Կուսակցությունը,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— իր կարևորագույն պարտականությունն է համարում մարքս-լենինյան տեսության հետագա ստեղծագործական զարգացումը սովետական հասարակության կյանքի նոր երևույթների ուսումնասիրման և ընդհանրացման, սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների, համաշխարհային կոմունիստական, բանվորական, ազգային-ազատագրական ու դեմոկրատական շարժումների փորձի հաշվառման, բնական, տեխնիկական ու հասարակական գիտությունների նվաճումների վերլուծության հիման վրա» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 229):

Այդ ծրագրային պահանջը ամբողջովին վերաբերում է նաև կուսակցության պատմության պատմագրությանը, որի սկզբնավորումն ու զարգացումը անմիջականորեն առնչվում են Վ. Ի. Լենինի անվան հետ:

---

# ՄԱՏԵՐԻԱՅԻ ԱՆՍՊԱՌՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԸՄԲՌՆՄԱՆ ԱՅԺՄԵԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Գ. ԴԱՎԹՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների թեկնածու**
**Կ. ՍԱՀԱԿՅԱՆ**
**Ասպիրանտ**

ՍՄԿԿ ՓԱՍՏԱԹՂԹԵՐՈՒՄ մշտական ուշադրություն է հատկացվում մարքս-լենինյան տեսության ստեղծագործական զարգացման անհրաժեշտությանը: ՍՄԿԿ XXVII համագումարին ներկայացված Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ նշված է. «Մարքսիզմ-լենինիզմը հեղափոխական մեծագույն աշխարհայացք է: Այն հիմնավորեց մարդկության կողմից երբևէ իր առջև դրված ամենամարդասիրական նպատակը՝ Երկրի վրա արդարացի սոցիալական կարգերի ստեղծումը: Այն մատնանշում է հասարակական զարգացման՝ իր վիթխարի բազմակողմանիության ու հակասականության մեջ որպես միասնական, օրինաչափ պրոցեսի գիտական ուսումնասիրման ուղի, սովորեցնում է ճիշտ ըմբռնել տնտեսական ու քաղաքական ուժերի բնույթն ու փոխգործողությունը, ընտրել պայքարի ստույգ ուղղությունները, ձևերն ու մեթոդները, իրեն վստահ զգալ պատմական կտրուկ շրջադարձերում»:

ՍՄԿԿ-ն պայքարել ու պայքարում է հանուն մարքսիզմ-լենինիզմի տեսության անաղարտության ընդդեմ բուրժուական գաղափարախոսների, աջ և «ձախ» ռևիզիոնիստների փորձերի, որոնք ձգտում են ենթադրել Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի մեծ ուսմունքի հեղափոխական բովանդակությունը:

Մեր օրերում ևս մարքսիզմի փիլիսոփայության ստեղծագործական զարգացման, գաղափարական հակառակորդների դեմ անհաշտ պայքարի իսկական օրինակ է մնում Վ. Ի. Լենինի **Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ** աշխատությունը: Նրանում բովանդակված գաղափարների և հետևությունների հսկայածավալ հարստության մանրազնին ուսումնասիրումը միաժամանակ անհրաժեշտ է ինչպես մարքս-լենինյան փիլիսոփայության ստեղծագործական հետագա զարգացման, այնպես էլ բուրժուական փիլիսոփայության քննադատության համար: Վերջինս ձգնում է իրեն վերագրել ժամանակակից գիտության մեթոդաբանի դերը: Մինչդեռ տեսական գործունեության մեջ գիտականության և կուսակցականության սկզբունքների ճիշտ զուգակցման լենինյան պահանջից ելնելով միայն կարելի է կենսագործել ՍՄԿԿ XXVII համագումարի պատմական ծրագրերն ու խնդիրները:

XIX և XX դարերի սահմանագծին բնագիտական միտքը մեծաքայլ առաջ ընթացավ և հարուցեց իմացաբանական այնպիսի պրոբլեմներ, որոնք մղվեցին փիլիսոփայական-մեթոդաբանական վերլուծության առաջին պլան: Նման պրոբլեմների ուսումնասիրության հատուկ առարկա դարձան նաև **մախիստների** համար: Ընդ որում, եթե նկատի ունենանք, որ մախիզմը սուբյեկտիվ իդեալիստական փիլիսոփայություն է, ապա պարզ կդառնա նրա ազդեցության վտանգավոր հետևանքները նաև բնագետների հայացքների վրա՝ հատկապես բնագիտության նորագույն հայտնագործությունների և հիմնային հասկացությունների հեղաբեկման շրջանում:

Ճիշտ է, բնագետները լինելով տարերային մատերիալիստներ, հաճախ իրենք էին զգում մախիզմի վտանգը և փորձում ցույց տալ բնագիտության և մախիզմի սկզբունքային գաղափարական անհամատեղելիությունը: Օրինակ, Մ. Պլանկը քննադատում է մախիզմի իմացաբանության մեջ կարևորվող մտածողության տնտեսման սկզբունքը. «Մախի սկզբունքը նախատագրական կերպով կկասեցներ առաջավոր մտքի ընթացքը, եթե այն իրոք ընդունվեր որպես իմացության տեսության կենտ-

րոնական սկզբունքը» (М. Планк. Единство физической картины мира. М., 1966, с. 49).

Նման ըմբռնումները ցույց են տալիս, որ ֆիզիկոսներն իսկ արդեն գիտակցել էին մեխանիզմի վտանգը բուն ֆիզիկայի համար: Տրամաբանական է, որ ֆիզիկայի բախտը առաջին հերթին պետք է մտահոգեր ֆիզիկոսին: Իսկ այս հանգամանքը բաբերար հող էր ստեղծում մախիստական իմացության տեսության նկատմամբ ճիշտ, քննադատական վերաբերմունք ձևավորելու համար: Այսուամենայնիվ, պետք է շեշտել. այդպիսի քննադատությունները մնում էին սահմանափակ այն հասկանալի պատճառով, որ աչքաթող էին արվում մախիզմի փիլիսոփայական էությունը, նրա գաղափարական և սոցիալական արմատները:

Վ. Ի. Լենինը **աշխարհայացքի ճգնաժամը** դիտում է որպես հասկացությունների արմատական հեղաբեկման հետևանք, որպես բնագիտության մեջ հեղափոխության հետևանք և այդ դիրքերից էլ պարզաբանում է ճգնաժամի և նրա միտումների էությունը: Մախիզմի քննադատությունը և իմացության առջև ծառացած բարդ փիլիսոփայական-մեթոդաբանական պրոբլեմների հետևողական մարքսիստական լուծումը տվեց Վ. Ի. Լենինը **Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ** աշխատության մեջ:

Վ. Ի. Լենինը դիալեկտիկամատերիալիստական դիրքերից քննարկեց բնագիտության մեթոդաբանական-իմացաբանական պրոբլեմները, իմաստավորեց բնագիտության մեջ Կ. Մարքսից և Ֆ. Էնգելսից հետո կատարված նորագույն հայտնագործությունները: Այս հարցերի լուծման ընթացքում Վ. Ի. Լենինը կարողացավ ցույց տալ մարքսիստական փիլիսոփայության և բնագիտության առնչությունները, մշակել քննարկվող հարցերի նկատմամբ մոտեցման սկզբունքները, հարստացնել մարքսիստական դիալեկտիկայի հասկացութային համակարգը:

Այս դիրքերից էլ կարևորվում են **«մատերիայի չքացման»** մասին լենինյան քննադատության էությունն ու առանձնահատկությունը, նրա կողմից **մատերիայի անսպառության ըմբռնման** մեթոդաբանական-աշխարհայացքային նշանակությունը:

Ինքնին հարց է ծագում. ինչպե՞ս պետք է հասկանալ առաջին հայացքից այդպիսի տարօրինակ դրույթը, մի՞թե կարող է անհետանալ գիտության իմացության օբյեկտը:

**Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ** աշխատությունում Վ. Ի. Լենինը հստակորեն տալիս է այդ հարցի պատասխանը՝ վերլուծելով Ջ. Թոմսոնի **Մատերիայի կորպուսկուլյար տեսությունը** (Լոնդոն, 1907), Պ. Լանժևենի **Էլեկտրոնների ֆիզիկան** (1905), Ա. Ռիգի **Մատերիայի կառուցվածքի մասին** (Լայպցիգ, 1908) և ուրիշների աշխատանքները: Վ. Ի. Լենինը ցույց է տալիս, որ մատերիայի անհետացման մասին հարցադրումն իսկ սխալ է: Այդ սխալը բխում էր նրանից, որ փիլիսոփայության հիմնական հարցը շփոթվում էր մատերիայի կառուցվածքի մասին այս կամ այն ուսմունքի հետ: Այնինչ՝ «մատերիալիզմն ու իդեալիզմը տարբերվում են մեր իմացության **աղբյուրի** հարցի, **ֆիզիկական** աշխարհի նկատմամբ իմացության (և առհասարակ «հոգեկանի») հարաբերության հարցի այս կամ այն լուծմամբ...» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 18, էջ 338), այն դեպքում, երբ «մատերիայի կառուցվածքի, ատոմների ու էլեկտրոնների հարցը վերաբերում է միայն այդ «ֆիզիկական աշխարհին», (Նույն տեղը): Այդպիսի մոտեցում հանդես բերելով ֆիզիկայում կատարված նորագույն հայտնագործությունները քննարկելիս, Վ. Ի. Լենինը ցույց է տալիս մատերիալիզմի հերքման այդ փորձերի սնանկությունը: Ընդհանրապես գիտության և մասնավորապես ֆիզիկայի ոչ մի նոր տվյալ չի կարող հերքել մատերիալիզմը, քանի որ «մատերիայի **միակ** «հատկությունը», որի ընդունման հետ կապված է փիլիսոփայական մատերիալիզմը, **օբյեկտիվ ռեալություն լինելու,** մեր գիտակցությունից դուրս գոյություն ունենալու հատկությունն է» (Նույն տեղը, էջ 339): Գիտության զարգացումը հաստատում է լենինյան այդ հիմնադրույթի իրավացիությունը, նրա ճշմարտացիությունը: Չէ որ հենց այդ «հատկությունն է» հանդես գալիս որպես այս կամ այն բնական գիտության ուսումնասիրման օբյեկտ: Դրա ժխտումը կտաներ նաև բնական գիտությունների գոյության ժխտմանը (քանի որ դրանք ուսումնասիրության առարկա չէին ունենա): Սա արդյո՞ք նշանակում է, որ մատերիայի «չքացման» մասին դատողությունները իմացաբանական ոչ մի հիմք չունեն: Ամեն մի իդեալիստական դատողություն ունի որոշակի իմացաբանական հող: Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ բնագիտական հայտնագործությունների իդեալիստական մեկնաբանման հնարավորությունը պարունակվում է օբյեկտիվ ռեալության իմացության բուն իսկ պրոցեսի մեջ, ծնունդ է առնում հենց գիտության առաջընթացից: Օրինակ, Վ. Օստվալդը



էներգիայի պահպանման և փոխակերպման օրենքն օգտագործեց «էներգետիզմը» հիմնավորելու, մատերիայի «չքանալը» և էներգիայի վերածվելը ապացուցելու համար:

Իմացության պրոցեսում մարդկային միտքը ներթափանցում է մատերիայի **կառուցվածքային նոր մակարդակները,** բացահայտում բազմակերպ «տարօրինակ» և «արտասովոր» հատկություններ: Եվ եթե չի կարողանում ճիշտ իմաստավորել այդ տարօրինակն» ու «արտասովորը», ապա կարող է սահել դեպի իդեալիզմ: Ինչպես նշում է Վ. Ի. Լենինը. «Եթե փիլիսոփայական հարցերով գրքեր ու հոդվածներ գրող մեր մախիստները մտածել կարողանային, ապա նրանք կհասկանային, որ «մատերիան չքանում է», «մատերիան հանգում է էլեկտրականության» և այլ արտահայտությունները իմացաբանորեն անճարակ արտահայտությունն են այն ճշմարտության, որ հաջողվում է հայտնագործել մատերիայի նոր ձևեր, մատերիական շարժման նոր ձևեր, հին ձևերը հանգեցնել այդ նոր ձևերին և այլն» (Նույն տեղը, էջ 410):

Երբ մասնավոր բնույթի (ասենք՝ մեխանիկական, ֆիզիկական) պատկերացումները բարձրացվում են ընդհանուրի մակարդակի, ապա խառնաշփոթություն է առաջանում գիտելիքների մասնավոր գիտական և փիլիսոփայական մակարդակների միջև: Սա արդեն կարող է հանգեցնել **մեթոդաբանական ճգնաժամի:** Նման պարագայում, օրինակ, մատերիան, որպես օբյեկտիվ ռեալություն, որը գոյություն ունի գիտակցությունից դուրս և անկախ, նույնացվում է այն ռեալության հետ, որը անմիջապես տրված է իմացության պրակտիկայում: Իսկ երբ աշխարհի մասին ֆիզիկական պատկերացումը բարձրացվում է համընդհանրության մակարդակի, ապա մենք գործ ենք ունենում ոչ թե նախադրյալի, այլ բուն մեթոդաբանական ճգնաժամի իրողության հետ: Տեղի է ունենում **գիտության օբյեկտի** նույնացումը **օբյեկտիվ աշխարհի** հետ, դրանով իսկ գիտական տեսությունն անմիջականորեն առդրվում է արտաքին աշխարհի վրա: Բոլոր դեպքերում **աշխարհի մեխանիկական պատկերը** ժամանակին խաղացել է որոշակի դեր: Աշխարհի մեխանիկական պատկերի աշխարհայացքային և մեթոդաբանական կարևոր նշանակությունն այն էր, որ նրանում արտացոլվում էին մատերիայի կառուցվածքի և շարժման որոշ ընդհանուր օրենքներ: Դրա հետևանքով այդ պատկերի մեջ ընդգրկվում էր մեխանիկական պրոցեսների բազմազանությունը: Այստեղ դրսևորվում էր դասական մեխանիկայի ելակետային, հիմնային կերպերի (պատկերների) ուժը և հզորությունը, նրանց ունիվերսալությունը, որն էլ աշխարհի մեխանիկական պատկերին տալիս էր բարձր աստիճանի աշխարհայացքային և մեթոդաբանական նշանակություն: Սակայն սա հանգեցրեց նրան, որ աշխարհի մեխանիկական պատկերը համարվեց որպես ընդհանրապես բոլոր ֆիզիկական տեսությունների միակ հիմքը:

Այդ մեթոդաբանությունը դուրս եկավ միանգամայն բեղմնավոր մոլեկուլյար-կինետիկ տեսության կառուցման համար, որը հաջող էր բացատրում գազերի, հեղուկների և պինդ մարմինների հատկությունները: Լույսի ալիքային տեսության զարգացումը սկզբնական շրջանում նույնպես տագնապ չէր ներշնչում. նրանում նկարագրվող միջավայրում տատանումները, ինչպես ենթադրում էին, փայլուն ձևով համաձայնեցվում ու ներդաշնակվում էր աշխարհի մեխանիկական պատկերին: Եվ հանկարծ պարզվեց, որ ֆիզիկական նոր տվյալները չեն համապատասխանում ունիվերսալ թվացող աշխարհի այդ պատկերին, իսկ նրա կերպերը (բնութագրերը), որոնք արտացոլում էին օբյեկտիվ ռեալության տարրերը, չեն կարող կիրառվել ֆիզիկական նոր տեսություններում: Դա էլ հենց մեկնաբանվում էր որպես **մատերիայի անհետացում:** «Տարրերը, որպես ռեալ, օբյեկտիվ տվյալներ, այսինքն՝ որպես **ֆիզիկական** տարրեր, բոլորովին չքացան,— գրում է Վ. Ի. Լենինը Աբել Ռեյին: — Մնացին միայն ձևական հարաբերությունները, որոնք ներկայացվում են դիֆերենցիալ հավասարումներով» (Նույն տեղը, էջ 403): Բայց ֆիզիկական ո՞ր տեսությունների մասին է այստեղ ամենից առաջ խոսքը: Չէ որ դասական մեխանիկան էլ մաթեմատիկացված էր: Դժվարությունն առնչվում է ոչ թե ինքնին մաթեմատիկացման հետ, այլ այն մաթեմատիկացման, որը ուղեկցվում է աշխարհի նախկին պատկերի (տարածության մեջ շարժվող նյութական կետերի պատկերների) ակնառու կերպերի կորստյամբ:

Առհասարակ ֆիզիկական գիտելիքների զարգացման գործում մաթեմատիկայի դերի մեծացումը դրական երևույթ էր: Սակայն ֆիզիկայի **մաթեմատիկացումը** և **ռելյատիվիզմի** ոչ ճիշտ ըմբռնումը, նրա բացարձակեցումը աշխարհի ֆիզիկական պատկերի արմատական փոփոխման ժամանակ նպաստեցին ֆիզիկայի ճգնա-

ժամի առաջացումը և հանդիսացան «ֆիզիկական» իդեալիզմի իմացաբանական աղբյուրները: Այն ժամանակվա ֆիզիկական տեսություններից հարկավոր է հիշատակել Ջ. Մաքսվելի էլեկտրամագնիսական դաշտի տեսությունը: Նրա բովանդակությունը իրոք հնարավոր չէր արտահայտել նյութական կետերի ձևերով, դրանով էլ ստեղծվում է տպավորություն, որ էլեկտրադինամիկայի **հավասարումների հետևում չքանում է իրականությունը,** այսինքն այն, ինչը պետք է դրանք նկարագրեին: Էլեկտրամագնիսական պրոցեսները տեսական մոդելներով ներկայացնելու փորձերի անհաջողությունը (հենց դրանով է Մաքսվելի տեսության անհամատեղելիությունը մեխանիկական մոդելների հետ), նշանակում էր, ըստ էության, դասական ֆիզիկայի պատկերի «խորտակում»: Իսկ այդ կործանումը չէր կարող չունենալ աշխարհայացքային և մեթոդաբանական լուրջ հետևանքներ: Ստացվում էր, որ շարժում կա, էլեկտրականություն կա, իսկ մատերիա չկա, այն ոչնչով չէր ներկայացված տեսության բովանդակության մեջ: Բոլորովին անհասկանալի էր, թե ինչպիսի ռեալություն է ներկայացված էլեկտրամագնիսական դաշտի հավասարումներում:

Այստեղ Վ. Ի. Լենինը դնում է այն ժամանակների համար նոր համարվող **«աշխարհի պատկեր»** հասկացության սկզբունքային նշանակությունը: Այժմ ավելի ցայտուն է դրսևորվում նրա աշխարհայացքային և մեթոդաբանական նշանակությունն առանձնապես ֆիզիկական տեսությունների համար: Ֆիզիկայի աշխարհայացքային և մեթոդաբանական ճգնաժամը պարզաբանելու համար այդ հասկացությունը հաջողությամբ ծառայեց Լենինին: Նա գրում է. «Իհարկե ամբողջապես անհեթեթություն է այն, թե իբր մատերիալիզմը պնդում էր գիտակցության «պակաս» ռեալությունը կամ աշխարհի, որպես **շարժվող մատերիայի,** անպատճառ «մեխանիկական» և ոչ թե էլեկտրամագնիսական, ոչ թե որևէ է՛լ ավելի անչափ բարդ պատկերը» (Նույն տեղը, էջ 365—366): Այսպիսով, բնագիտական հեղափոխությունն իրենով նշանավորեց աշխարհի պատկերի արմատական փոփոխում: Եվ քանի դեռ աշխարհի այդ նոր պատկերը չկար, ֆիզիկոսները չէին կարողանում տեսնել տեսության և հավասարումների մեջ այն ռեալությունը, որը պետք է արտացոլեին տեսական սիմվոլները: Դրանով իսկ, բավարար հստակությամբ չկարողացան տեսնել, որ նոր գիտելիքները չեն տեղավորվում աշխարհի հին պատկերի մեջ:

Սրա հետ մեկտեղ, նման ըմբռնման դեպքում աշխարհի փիլիսոփայական պատկերացումները նույնացվում են նրա **կազմվածքի** և **կառուցվածքի** մասին ֆիզիկական ըմբռնումների հետ: Աշխարհի նոր՝ **դաշտային պատկերի** կառուցումը, որը կատարվեց հարաբերականության հատուկ տեսության հետ միասին, ցույց տվեց, որ աշխարհի նոր պատկերի հիմնական տարրական կերպը դառնում է կետային տարածաժամանակային պատկերի իդեալականացումը: Այս պատկերն ավելի դինամիկ և դիալեկտիկական է: Հետո ստեղծվում է աշխարհի քվանտային պատկերը (ի դեպ, ճիշտ կլինի այսօր արդեն խոսել քվանտ-դաշտային պատկերի մասին):

Ասվածից երևում է, որ բնագիտության փիլիսոփայական պրոբլեմներն այստեղ ընդգրկում են, առաջին հերթին, բնագիտական տեսությունների զարգացման հիման վրա աշխարհի համարժեք պատկերի որոնումների պրոբլեմային հետազոտությունները: Աշխարհի այնպիսի պատկերի, որը, մի կողմից, «համաձայնի» դիալեկտիկամատերիալիստական աշխարհայացքի սկզբունքներին, իսկ մյուս կողմից՝ պատասխանի մատերիայի կառուցվածքի և շարժման այն ընդհանուր օրենքների յուրահատկություններին, որ դրսևորվում են իմացության նոր փուլում: Դրանում է, ըստ էության, ֆիզիկական տեսությունների մատերիալիստական մեկնության պրոբլեմի իմաստը: Բնութագրելով ֆիզիկայի զարգացման բարդ ճանապարհը, նրա փիլիսոփայական տարերային որոնումները, Վ. Ի. Լենինը գրել է. «... ժամանակակից ֆիզիկան... գնում է դեպի բնագիտության միակ ճիշտ մեթոդը և բնագիտության միակ ճիշտ փիլիսոփայությունը ո՛չ թե ուղղակի, այլ զիգզագներով, ո՛չ թե գիտակցաբար, այլ տարերայնորեն, ո՛չ թե պարզ տեսնելով իր «վերջնական նպատակը», այլ նրան մոտենալով խարխափելով, դեգերելով, երբեմն նույնիսկ երեսը դեպի հակառակ կողմը թեքած» (Նույն տեղը, էջ 410--411): Այսպիսի վերլուծության **էվրիստիկական** նշանակությունն ակներև է: Չէ որ «Իմանալով գիտության անցած պատմությունը, գտնելով նրա շարժման օրինաչափությունները, կարելի է հետագայում հենվել այդ գիտելիքների վրա և ճիշտ կողմնորոշվել գիտության արդի իրավիճակում, իսկ գլխավորը՝ կանխատեսել, կանխագուշակել նրա հետագա զարգացումը» (Б. М. Кедров. Проблемы философии и методологии современного естествознания. М., 1973, с. 89):



Գիտության և փիլիսոփայության պատմության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մատերիայի՝ որպես փիլիսոփայական կատեգորիայի, նույնացումը նրա ֆիզիկական ըմբռնման հետ, կատարվում է այն դեպքում, երբ հետազոտողը օգտագործում է նյութի կառուցվածքի և կազմվածքի մասին այնպիսի գիտելիքներ, որոնք, լինելով հիմնային, կարող են դրվել աշխարհի պատկերի հիմքում:

Անհրաժեշտ է նշել, որ նյութի հետ մատերիայի նույնացման համար նախադրյալ է ծառայել առանձնապես նյութի հիմնայնության և ընդհանրության ըմբռնումը: Ընդ որում մասնավոր գիտականը փիլիսոփայականի նման կերպափոխման քննադատությունը այնքան էլ հեշտ չէ, եթե նկատի ունենանք, որ գիտության և փիլիսոփայության զարգացման սկզբնական փուլերում այդ նույնացման «ապօրինությունը» այնքան էլ ակնհայտ չի եղել: Ավելին, նույնիսկ մինչև Մաքսվելի և Հերցի աշխատանքները, բնագիտական տվյալների հիման վրա հնարավոր չէր ապացուցել այդ նույնացման սխալ լինելը: Դրա համար էլ այդպիսի ըմբռնման քննադատությունը լավագույն դեպքում կարող էր լինել միայն «վերացական»: Աշխարհի պատկերի ստեղծումը կատարվում էր առավելապես մեխանիկայի օրենքների հիման վրա, որի հետ գործ ուներ ֆիզիկան: Այս պարագայում, ինչպես նյութը դարձվում է աշխարհի հիմքը, այնպես էլ աշխարհի ֆիզիկական պատկերը (տվյալ դեպքում՝ մեխանիկականը) անհիմն կերպով փոխարկվում է փիլիսոփայականի, դրանով իսկ բացարձականացվում:

Պակաս կարևոր դեր չի խաղացել նաև **հոգեբանական գործոնը:** Մեխանիկայի օրենքների լայն կիրառությունները և «հաղթարշավը» ամենատարբեր բնագավառները հոգեբանական բարեբար մթնոլորտ են ստեղծում մեխանիկայի ելակետային սկզբունքների և օրենքների բացարձականացման համար: Այս ամենը հանգեցնում են աշխարհի մեխանիկական պատկերի համընդհանրացմանը: Նման դեպքում անտեսվում է իմացության նկատմամբ նոր պահանջների մշակումը: Այսպես կոչված «մեխանիկական իդեալը» սկզբից ևեթ ծառանում է հետազոտողների առջև և մեծապես որոշում նրանց վերաբերմունքը փորձնական տվյալների և տեսական դրույթների նկատմամբ: Այս ամենն էլ փիլիսոփաների առջև դնում է կարևոր փիլիսոփայական խնդիր՝ այդ իդեալի «դիալեկտիկանացում», նրա հարաբերականության ապացուցում: Այդ առթիվ Վ. Ի. Լենինը գրում է. «Նոր ֆիզիկան մոլորվել-ընկել է իդեալիզմի մեջ գլխավորապես հենց այն պատճառով, որ ֆիզիկոսները դիալեկտիկան չգիտեին: Նրանք պայքարում էին մետաֆիզիկական... մատերիալիզմի դեմ, նրա միակողմանի «մեխանիկականության» դեմ, և միաժամանակ ավազանից ջրի հետ դեն էին նետում նաև երեխային». (Նույն տեղը, էջ 341): Մեթոդաբանական այս բարդ իրավիճակում նման խնդրի լուծումն այնքան էլ հեշտ չէր: Դրա համար պետք էր անցում կատարել մետաֆիզիկական մատերիալիզմից դեպի դիալեկտիկական մատերիալիզմը: Այդ անցումը հատկապես հրատապ դարձավ այնպիսի **հիմնային բնագիտական տեսությունների** ֆիզիկական իմացաբանական պահանջների հետ կապված, ինչպիսիք են հարաբերականության տեսությունը և քվանտային մեխանիկան, որոնք **գիտնականների փիլիսոփայական կուլտուրայի** նկատմամբ նոր պահանջներ առաջադրեցին, ցույց տվեցին գոյի օրինաչափությունների ադեկվատ արտացոլման համար օբյեկտ-սուբյեկտի, տարածության, ժամանակի, շարժման, ռեալության, պատճառականության և այլ պրոբլեմների դիալեկտիկամատերիալիստական լուծման անհրաժեշտությունը:

**Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ** աշխատությունում Վ. Ի. Լենինը ցույց է տալիս մեթոդաբանական հիմքերի ճգնաժամի անմիջական կապը իմացության պրոցեսի մետաֆիզիկական, **նաիվ** ռելյատիվիստական մեկնաբանման հետ և հանգում էական հետևության. «Իմացության տեսության մեջ, ինչպես և գիտության բոլոր մյուս բնագավառներում, անհրաժեշտ է դիալեկտիկորեն դատել, այսինքն՝ մեր իմացությունը չենթադրել իբրև պատրաստի և անփոփոխ, այլ քննել, թե ի՛նչ կերպ է **անգիտությունից** երևան գալիս **գիտելիքը,** ի՛նչ կերպ է ոչ լիակատար, ոչ ճշգրիտ գիտելիքը դառնում ավելի լիակատար ու ավելի ճշգրիտ» (Նույն տեղը, էջ 122—123):

Դեպքերի հետագա ընթացքը ցույց տվեց լենինյան դրույթների իրավացիությունը՝ մարդկային իմացությունն իր բոլոր փուլերում կրում է դիալեկտիկական բնույթ: Վ. Ի. Լենինը գրում է. «Իրերի «էությունը» կամ «սուբստանցը» **նույնպես** հարաբերական են. դրանք արտահայտում են օբյեկտների մարդկային իմացության խորացումը միայն, և եթե երեկ այդ խորացումը չէր գնում ատոմից այն կողմ, այսօր՝ էլեկտրոնից և եթերից այն կողմ, ապա դիալեկտիկական մատերիալիզմը պնդում է, որ մարդու

ների հեռու գտնվող շրջաններում վատանում են արդյունահանման լեռնահանքային պայմանները, դժվարանում փոխադրումը, որի հետևանքով կամպիտալ ներդրումներում վառելիքաէներգետիկ համալիրի բաժինը հետզհետե մեծանում է: Այդ ամենը անբարենպաստ ազդեցություն է գործում արտադրության արդյունավետության ցուցանիշների վրա: Է՛լ ավելի հրատապ է դառնում էներգետիկայի բոլոր ճյուղերում հնգամյակի համար մշակված էներգախնայողության ծրագրի հետևողական իրագործումը:

Հասարակական արտադրության ինտենսիվացումը ձեռք է բերվում ոչ թե արտադրության ծավալի մեծացման, այլ որակի բարելավման և ռեսուրսների օգտագործման արդյունավետության հաշվին ավելի ու ավելի մեծ չափով տնտեսական աճն ապահովելու շնորհիվ: Դա նշանակում է, որ արտադրության վերջնական արդյունքները պետք է ավելի արագ աճեն ծախսումների հանրագումարային մեծությունից: Հետևաբար, հեռանկարային է այնպիսի տնտեսական պրոցեսը, որն ապահովում է աշխատատարության, նյութատարության և էներգատարության հարաբերական նվազում: Գործնականում դա նշանակում է, որ այժմ, և հեռանկարի առումով, տնտեսական աճի վճռորոշ գործոնը ռեսուրսախնայողական տեխնոլոգիայի ավելի ու ավելի լայնորեն ներդրումն է ժողովրդականց տնտեսության մեջ: Պետք է օրինաչափություն դառնա հասարակության պահանջմունքների առավել օպտիմալ բավարարման համար ռեսուրսների բաշխման կառուցվածքի կատարելագործումը:

Տնտեսավարման ինտենսիվ մեթոդների անցնելու պայմաններում զգալիորեն մեծանում է հիմնական տնտհաշվարկային արտադրական օղակի դերը: Տնտեսական աճի գլխավոր գործոն են դառնում որակական ցուցանիշները, ոչ թե պարզապես երկրի արտադրական պոտենցիալի մեծացումը, այլ առավելագույն չափով նրա արդյունավետ օգտագործումը՝ առկա ռեզերվների բացահայտման հիման վրա:

Նշված խնդրի լուծման հետ են կապված արտադրական միավորումների և ձեռնարկությունների իրավունքների էական ընդլայնումն ու նրանց պատասխանատվության բարձրացումը, աշխատանքային կարգապահության ամրապնդումը, կառավարման ու պլանավորման համակարգի կատարելագործումը, արտադրողական աշխատանքի նյութական խրախուսումը:

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում նշված է. «Զարգացնելով կենտրոնացված սկզբունքները կառավարմանց ու պլանավորման, ստրատեգիական խնդիրների լուծման գործում, կուսակցությունն ակտիվորեն կիրականացնի **հիմնական արտադրականց օղակի՝** միավորումների ու ձեռնարկությունների **դերի բարձրացման միջոցառումներ,** հետևողականորեն կվարի նրանց իրավունքների ու տնտեսական ինքնուրույնության ընդլայնման, պատասխանատվության և շահագրգռության ուժեղացման գիծը վերջնական բարձր արդյունքների հասնելու գործում» **(ՍՄԿԿ ծրագիրը,** էջ 47):

Այդ ծրագրային խնդրի իրականացման կարևոր քայլ է սոցիալիստական ձեռնարկության մասին նոր օրենքի մշակումը, որի նախագիծը այժմ դրված է համաժողովրդական քննարկման: Սոցիալիստական ձեռնարկությունն իր կոլեկտիվի ձևավորման նյութական բազան է: Այն, որպես սկզբնականց աշխատանքային բջիջ, ապահովում է փոխգործակցությունը և միասնությունը արտադրողական ուժերի ու արտադրական հարաբերությունների գործունեության ընթացքում: Հենց այնտեղ է կատարվում աշխատուժի անմիջական զուգակցումն արտադրությանց միջոցներին: Դրա հիման վրա Կ. Մարքսն առաջադրել է այն դրույթը, որ մեքենան ինքնըստինքյան սոսկ արտադրողական ուժ է: «Մինչդեռ ժամանակակից ֆաբրիկան, որը հիմնված է մեքենաների օգտագործման վրա, արտադրության հասարակական հարաբերություններ է ներկայացնում, տնտեսական կատեգորիա է» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, с. 152): Սոցիալիստական ձեռնարկությունները, միավորումները հանդես են գալիս որպես համաժողովրդական սեփականության վրա հիմնված հիմնական, սկզբնական օղակ (պետական ձեռնարկություն) և, որպես կոլտնտեսային-կոոպերատիվ ձեռնարկություններ, կազմակերպված են կոլեկտիվ սեփականության հիման վրա: Սոցիալիստական ձեռնարկությունները աշխատանքի հասարակական բաժանման համակարգում գործում են որպես տնտեսավարման համեմատաբար ինքնուրույն օբյեկտներ, սակայն միասնական են ժողովրդատնտեսական համալիրում: Դրանց միջոցով կառավարումը տեղայնացվում է տնտհաշվարկի սկզբունքների հիմանց վրա: Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ստրատեգիան պայմանավորում է նոր մոտեցումներ ձեռնարկությունների (միավորումների) կառավարման համակարգի նկատմամբ: Ձեռնարկությունները հասարակությանց հանդեպ հանդես են գալիս որպես սոցիալիստական արտադրական հարաբերությունների կոլեկտիվ սուբյեկտ և նրանց ինքնուրույնությունը չի կարող բացարձականացվել. այն հարաբերական է համապետական կենտրոնացված կառավարման միասնական ամբողջական համակարգի շրջանակներում: Տնտհաշվարկի վրա հիմնված այդ համակարգի միջոցով կատարվում է համաժողովրդական սեփականության իրացում: Վ. Ի. Լենինը նախազգուշացնում էր՝ հեռու մնալ սոցիալիստական համաժողովրդական սեփականությունը խմբակային սեփականությամբ փոխարինելու անարխոսինդիկալիստական ձգտումներից:

Մեր երկրի, ինչպես նաև սոցիալիստական երկրների պրակտիկան ի հայտ բերեց արտադրողական ուժերի զարգացման գործում առկա այն բացասական հետևանքները, որոնք կապված էին արտադրության և արտադրանքի իրացման պրոցեսում, ինչպես նաև ստացված շահույթի հաշվին ֆինանսական ռեսուրսների բաշխման հիման վրա դրանց ձևավորման գործում ձեռնարկությունների իրավունքների տնտեսապես չհիմնավորված սահմանափակումների հետ: Այդ սահմանափակումները մեծ մասամբ կամային բնույթ ունեին: Դրա հետևանքով տնտհաշվարկի հիմնական սկզբունքները խախտվեցին, արգելակվեց էկոնոմիկայի փոխադրումը զարգացման ինտենսիվ ուղու վրա: Մեր էկոնոմիկայում տնտեսավարման նոր մեթոդների անցնելը ձեռնարկություններին լայն հնարավորություններ ընձեռեց տնտհաշվարկի հիմնարար սկզբունքների իրականացման գործում:

Պլանավորման և կառավարման համակարգում շարունակվում են արմատական փոփոխությունները հետևողական տնտհաշվարկի հիման վրա: Արտադրության աճի էքստենսիվ եղանակից հրաժարվելը և հիմնական արտադրական օղակը զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելը ձեռնարկություններին կողմնորոշում են դեպի վերջնական արդյունքներ, դեպի նրանց աշխատանքի գնահատում՝ ոչ թե «ծախսի» սկզբունքից ելնելով, ոչ թե համախառն արտադրանքը, այլ հասարակական պահանջմունքների բավարարման գործում տվյալ ձեռնարկության ներդրած ռեալ ավանդը հաշվի առնելով: Դա իր արտահայտությունն է գտնում պայմանագրային պարտավորության և թողարկվող առարկաների նյութաիրային կառուցվածքին վերաբերող արտադրական պլանի կատարման գործում: Ձեռնարկությունները (միավորումները) ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման սկզբունքով աշխատելիս պետք է ընդլայնված վերարտադրության պրոցեսն ապահովեն ըստ կայուն նորմատիվների նախատեսված պլանի՝ իրենց իսկ վաստակած միջոցների հաշվին: Լիակատար տնտհաշվարկի անցնելիս առաջին պլան է մղվում ձեռնարկությունների արտադրաֆինանսական գործունեության կարգավորումը՝ ելնելով կայուն նորմատիվներից: Ահա թե ինչու պետք է էականորեն ընդլայնվի ձեռնարկությունների ինքնուրույնությունը և ուժեղացվի նրանց պատասխանատվությունը հասարակական պահանջմունքների բավարարման համար:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Թեթև արդյունաբերության մեջ պլանավորումը, տնտեսական խթանումը բարելավելու, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության կառավարումը կատարելագործելու մասին» որոշման մեջ (1986 թ. ապրիլ) նախատեսված է լիակատար տնտհաշվարկ մտցնել թեթև արդյունաբերության ձեռնարկություններում՝ կիրառելով շահույթի բաշխման կայուն նորմատիվներ: Ընթացիկ հնգամյակում գործում են պետական և տեղական բյուջեների համար շահույթից կատարվող մասհանումների, բանկի վարկերի համար տոկոսների վճարման, միավորումների տնտեսական խթանման կենտրոնացված ռեզերվների ու ֆոնդերի (ներառյալ ֆինանսական) գոյացման համար վճարումների կայուն նորմատիվներ:

Մեզանում անձնական օգտագործման մի շարք ապրանքների զգալի պակասի, առանձնապես դրանց ցածր որակի, առկա պահանջարկին չհամապատասխանելու պատճառով բնակչության եկամուտները և ծախսերը չեն հաշվեկշռվում, իսկ ապրանքաշրջանառությունն էլ հետ է մնում բնակչության եկամուտների աճից: Մեր էկոնոմիկայի այդ կարևորագույն և բարդ հարցը կարելի է լուծել, նախ, արտադրության մեջ լիովին բացառելով խոտանը, ապահովելով անհրաժեշտ տեսականիով բարձրորակ, հրապուրիչ տեսք ունեցող ապրանքների թողարկումը և, երկրորդ, մտցնել պահանջարկի ու առաջարկի տնտեսապես հիմնավորված պլանավորում՝ ելնելով բնակչության եկամուտների ու պահանջարկի աճի համեմատությամբ ապրանքաշրջանառության որոշ առաջանցման սկզբունքից: Խոսքը վերաբերում է դրանց դինամիկ հավասարակշռության ստեղծմանը:

ՍՄԿԿ XXVII համագումարում և դրանից հետո լայնորեն քննարկվում են այնպիսի տեսական խոշոր պրոբլեմներ, ինչպիսիք են արտադրողական ուժերի և արտադրահարաբերությունների փոխգործակցությունը, սոցիալիստական սեփականությունն ու նրա իրացման տնտեսական ձևերը, ապրանքադրամական հարաբերությունները, կենտրոնացված պլանավորման և տնտեսական կազմակերպությունների ինքնուրույնության զուգակցումը:

Սոցիալիզմի տնտեսական սիստեմի բոլոր հակասությունների հիմքում ընկած է արտադրողական ուժերի և արտադրահարաբերությունների հակասությունը: Եվ պատահական չէ, որ ՍՄԿԿ ծրագիրը ելնում է արտադրահարաբերությունների անընդհատ կատարելագործման, դինամիկ զարգացող արտադրողական ուժերի հետ դրանց կայուն համապատասխանության պահպանման, նրանց միջև առաջացող ոչ հակամարտ հակասությունների բացահայտման և հաղթահարման անհրաժեշտությունից: Դա մեր հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման արագացման անհրաժեշտ նախադրյալն է:

Անհիմն են այն պատկերացումները, որոնց համաձայն սոցիալիզմի պայմաններում արտադրողական ուժերի բնույթին արտադրական հարաբերությունների համապատասխանությունն ապահովվում է, ասես, ավտոմատ կերպով: Տվյալ դեպքում թերագնահատվում են արտադրողական ուժերի վրա սոցիալիստական արտադրահարաբերությունների հակադարձ ակտիվ ներգործության հնարավորությունները: Չի կարելի անտեսել, որ արտադրահարաբերությունների գործող ձևերը, տնտեսավարման և կառավարման համակարգը հիմնականում ձևավորվել են էկոնոմիկայի էքստենսիվ զարգացման պայմաններում: Սակայն դրանք աստիճանաբար հնացան, սկսեցին կորցնել իրենց խթանիչ դերը և նույնիսկ շատ դեպքերում արգելակում են հետագա առաջընթացը:

Տնտեսական ռեֆորմը, հաղթահարելով էկոնոմիկայի ծախսումնային բնույթը, նպատակամղված է գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, որակի և արդյունավետության բարձրացմանը, մարդկային գործոնի դերի մեծացմանը:

Կարևոր քաղաքատնտեսական պրոբլեմ է սոցիալիզմի օրոք ապրանքադրամական հարաբերությունների դերի և նշանակության սկզբունքային գիտական գնահատականը: Այսօր քննադատվում և մերժվում են տասնամյակներ շարունակ տնտեսագիտական գրականության մեջ տեղ գտած ապարդյուն վեճերը, սխոլաստիկ դատողությունները ապրանքադրամական հարաբերությունների և արժեքի օրենքի գործողության պրոբլեմների շուրջ: Անապացույց, անհիմն փաստարկներով դրանց դերի ժխտումը հետ էր քաշում տնտեսագիտությունը և չէր կարող բացասական ազդեցություն չունենալ արտադրության արդյունավետության բարձրացման պրակտիկ պրոբլեմների լուծման վրա: Այն թուլացնում էր տնտհաշվարկը, էական վնաս հասցնում տնտեսավարման տնտեսագիտական մեթոդների կիրառմանը: Ապրանքադրամական հարաբերությունների դերի գնահատման նկատմամբ այդպիսի մոտեցումը սկիզբ դրեց դրանց համալիր ուսումնասիրման և տնտեսական նոր մեխանիզմի, սոցիալիստական տնտեսավարման պրակտիկայում նրա արժեքային տնտեսական լծակների ստեղծման ու օգտագործման հետ անմիջական կապ ունեցող գիտագործնական նշանակության առավել հիմնավորված հանձնարարականների մշակմանը:

Ապրանքադրամական հարաբերությունների կատարելագործումն անխզելիորեն կապված է ֆինանսների և գների օգտագործման հետ: Այսօր արդեն ակնհայտ է էկոնոմիկայի ոլորտում ֆինանսավարկային ներգործության թուլացումը, տնտեսական արդյունավետության վրա նրա անբավարար ազդեցությունը: Վարկը կորցրել է իր իսկական նշանակությունը: Գործում է եկամուտների վերաբաշխման վնասակար հակատնտհաշվարկային պրակտիկան, երբ հետ մնացող ձեռնարկությունների, մինիստրությունների և ռեգիոնների վնասները հատուցվում են շահույթով աշխատողների հաշվին: Առաջադրվել է շրջանառու հարկից շահույթի դիմաց կատարվող վճարումներից և բյուջեի այլ մուտքերից գանձումների պրակտիկայի կատարելագործման հարցը, որը վաղուց է հասունացել: Օրակարգի հարց է նաև ֆինանսավարկային մարմինների աշխատանքի կազմակերպման և մեթոդների այնպիսի արմատական փոփոխության խնդիրը, որը ֆինանսավարկային լծակները կախվածության մեջ կդնի արտադրության վերջնական արդյունքներից: Դրա համար անհրաժեշտ է հրաժարվել ֆինանսավորման և վարկավորման ծախսումնային սկզբունքից, մանր խնամակալությունից, ձեռնարկությունների գործունեության կանոնակարգումից: Անհրաժեշտ է ֆինանսական սիստեմի միջոցով ապահովել տնտեսական խթանումը, դրամական շրջանառության, տնտհաշվարկի ամրապնդումը:



Էկոնոմիկայի հետագա առաջընթացի կարևոր գործոն է գների ճիշտ քաղաքականությունը: Ներկայիս գները, որոնք գոյացել են էքստենսիվ զարգացման պայմաններում, էական թերություններ ունեն: Ընթացիկ հնգամյակում արդեն միջոցներ են իրականացվում դրանց համակարգի պլանաչափ վերակառուցում կատարել՝ հիմնվելով իսկական տնտհաշվարկի վրա, հաշվի առնելով բնակչության ռեալ եկամուտների բարձրացման խնդիրը: Գները պետք է ունենան մեծ ճկունություն և մակարդակի առումով կապակցվեն ոչ միայն ծախսումների, այլև ապրանքների սպառողական հատկանիշների հետ: Պետք է ավելի լայնորեն օգտագործել լիմիտային և պայմանագրային գները:

Ֆինանսները և գները փոխկապակցված են, սակայն գործնականում դրանք շատ դեպքերում գործում են միմյանցից անկախ, որը հաճախ բնահրային և դրամաարժեքային ցուցանիշների անհամամասնությունների առաջացման պատճառ է դառնում:

Պլանավորման և կառավարման ողջ համակարգի կատարելագործման հարցերը պետք է մշտապես գտնվեն կուսակցական կազմակերպությունների անդուլ ղեկավարման և վերահսկողության ներքո: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում նշվեց, որ էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման ուժեղացումը պետք է իր կոնկրետ դրսևորումը գտնի սոցիալ-տնտեսական պրոցեսների խոր վերլուծությունն ապահովելու, կուսակցության տնտեսական քաղաքականությունը հաստատակամորեն իրականացնելու, ամբողջ նորը, առաջադիմականը պաշտպանելու ընդունակ տնտեսական կադրերը ճիշտ տեղաբաշխելու և դաստիարակելու գործում: Դրան գործնականում կարելի է հասնել տնտեսագիտական նոր մտածողության և պրակտիկ խնդիրներ լուծելիս՝ աշխատանքի նոր ոճին տիրապետելու հիման վրա:

Քննադատաբար իմաստավորելով կուտակված փորձը՝ կուսակցությունը սկզբունքորեն խոր, հիմնավորված պատասխաններ տվեց հասարակական զարգացման բոլոր հիմնական հարցերին, նշեց սովետական հասարակարգի, դեպի նոր որակական վիճակ անցնելու ուղիները: Այդ առնչությամբ տնտեսագիտությանն առաջադրվել են նոր, մեծ խնդիրներ, որոնք կոչված են խորապես տեսականորեն լուծելու տնտեսական մեխանիզմի կոմպլեքսային կատարելագործման հարցերը, տալու գիտական նոր մշակումներ և գործնական նշանակություն ունեցող կոնկրետ հանձնարարականներ:

Բոլոր հրատապ սոցիալ-տնտեսական պրոբլեմները այսօր և հեռանկարային առումով չեն կարող հաջողությամբ լուծվել՝ առանց գիտատեխնիկական առաջադիմության ասպարեզում արմատական հեղաշրջման: Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում ձևավորվում է տնտեսագիտության մի նոր ճյուղ՝ գիտատեխնիկական առաջադիմության էկոնոմիկան, որը և կոչված է ուսումնասիրելու այդ բնագավառում ձեռք բերված արդյունքների իրացման օրինաչափությունները, տնտեսական մեխանիզմը:

---

# ԱՇԽԱՏԱՆՔԸ ԵՎ ՍՄԿԿ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների թեկնածու**

ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ հանգուցային պրոբլեմները խորապես լուսաբանված են ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերում, հետհամագումարյան կուսակցական փաստաթղթերում, ինչպես նաև վերջին տարիների մասնագիտական գրականության մեջ: Սոցիալական ասպարեզի նկատմամբ տեսական և գործնական հարաճուն ուշադրությունը պայմանավորված է սովետական սոցիալիստական հասարակության զարգացման արդի փուլի առանձնահատկություններով: Եթե սոցիալիզմի բուն իսկ էությամբ պայմանավորված սոցիալական նպատակները նախկինում օբյեկտիվ և սուբյեկտիվ մի շարք հանգամանքների հետևանքով հետին պլան են մղված եղել, ապա ներկայումս հասարակական կյանքի վերակառուցման, արմատական փոփոխությունների տեսակետից ակնհայտ են դառնում սոցիալական ասպարեզի իրական տեղն ու դերը սոցիալիստական հասարակության շրջանակներում, նրա գործառության և հետագա ներդաշնակ զարգացման մեջ:

Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVII համագումարն այդքան խստությամբ մերժեց սոցիալական պրոբլեմների նկատմամբ նախկին տեխնոկրատական մոտեցումները, մատնանշեց սոցիալական ասպարեզի թերագնահատման ողջ վտանգավորությունը: Այդ հարցին առանձնակի ուշադրություն հատկացվեց նաև Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում, ուր ընկեր Մ. Ս. Գորբաչովն ուղղակի և հստակ ասաց. «Մենք պետք է ավելի արագորեն հաղթահարենք արտադրական ու սոցիալական ոլորտների զարգացման մակարդակների միջև գոյացած խզումը»:

ՍՄԿԿ XXVII համագումարը, Կենտկոմի հունվարյան պլենումը հատկապես շեշտեցին ակտիվ սոցիալական քաղաքականության անցկացման, բոլոր պետական և տնտեսական մարմինների սոցիալական կողմնորոշման կարևորությունը: Վիթխարի մեթոդաբանական և գործնական նշանակություն ունի ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության այն դրույթը, որ «... էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման վրա, հասարակական կյանքի բոլոր ոլորտների վրա սոցիալական քաղաքականության ներգործությունը կուժեղանա» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 211)**: Իրոք, երկրի կուտակած հզոր տնտեսական պոտենցիալի արդյունավետ օգտագործումը, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների բարեհաջող լուծումը, սովետական հասարակության որակապես նոր փուլի նվաճումն անհնարին են առանց գիտականորեն հիմնավորված սոցիալական քաղաքականության:

ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած սոցիալական զարգացման հրատապ խնդիրները հատկապես կարևոր են մարդկանց աշխատանքային գործունեության ասպարեզի կապակցությամբ: Առհասարակ, մարդկային աշխատանքի սոցիալական պրոբլեմների նկատմամբ հետաքրքրությունն ավանդական է ինչպես մարքսիզմի, այնպես էլ մարքս-լենինյան տիպի կուսակցության գործունեության համար: Բավական է հիշեցնել Ֆ. Էնգելսի տված բնութագիրը, թե մարքսիզմը գտավ «աշխատանքի զարգացման պատմության մեջ... հասարակության ամբողջ պատմությունը հասկանալու բանալին» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր երեք հատորով,** հ. 3, «Հայաստան» հրատ., 1978, էջ 494): Եվ սա ոչ թե պատահական, երկրորդական մի բնութագիր է, այլ մարքսիզմի ամենախոր էության արտահայտումը: Աշխատանքի նկատմամբ սևեռուն, ակտիվ հետաքրքրությունը թե՛ մարքսիզմի գիտական առավելությունն է նախկին և ներկա ոչ մարքսիստական սոցիալական տեսությունների նկատմամբ և թե՛ նրան խորապես բնորոշ հումանիզմի ապացույցը: Ուրեմն միանգամայն օրինաչափ է նաև այն հանգամանքը, որ Վ. Ի. Լենինի հետհոկտեմբերյան աշխատություններում առաջադրված սոցիալիստական վերափոխումների պահանջը սերտորեն առնչվում է բուն իսկ աշխատանքի հասարակական և անձնային նշանակության փոփոխության, աշխատանքը նոր ձևով կազմակերպելու հարցերի, «աշխատել սովորելու» պահանջի հետ: Եվ այսօր էլ ՍՄԿԿ-ն սկզբունքային նշանակություն է տալիս աշխատանքի ասպարեզում արմատական վերափոխումներին, ուղղելով դրանք կոմունիստական հասարակության կառուցման հիմնարար խնդիրներից մեկի լուծմանը՝ աշխատանքի վերածմանը սովետական յուրաքանչյուր մարդու առաջին կենսական պահանջմունքի:

Աշխատանքը կենտրոնական տեղ է գրավում ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության մեջ: Հատկապես այդ ասպարեզում է ձևավորվում նոր մարդը, կատարելագործվում սոցիալիստական ապրելակերպը: Աշխատանքում և դրա միջոցով են լուծվում հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման բոլոր խնդիրները: Ակտիվացնել մարդկային գործոնը՝ նշանակում է ամենից առաջ խթանել մարդկանց աշխատանքային էնտուզիազմը, ավելի լրիվ օգտագործել նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, եռանդը, բացահայտել աշխատավորական կոլեկտիվի չօգտագործված ռեզերվները: Հատկապես աշխատանքի ասպարեզում պիտի իրենց հաստատումն ու խորացումը ստանան սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության հիմնական սկզբունքները, դրսևորվեն ժողովրդի սոցիալիստական ինքնավարության նորանոր ձևերը:

Ընդսմին, սոցիալական քաղաքականության համար աշխատանքը ներկայումս կենտրոնական դեր է խաղում ոչ միայն որպես մարդկանց հիմնական գործունեության ասպարեզ, այլև որպես ինքնադրսևորման պայման: Այսինքն, որպես սոցիալական նպատակ հանդես է գալիս ոչ միայն աշխատանքի պայմանների բարելավումը, այլև նրա բուն իսկ բովանդակության բարեփոխումը: Սա սկզբունքային նշանակություն ունի սոցիալական զարգացման արդի առանձնահատկությունները ըմբռնելու, բուն իսկ սոցիալիզմի էությունը ճիշտ գնահատելու համար: Կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի մեծագույն առավելություններից մեկն այն է, որ սոցիալիստական հասարակարգը տեխնիկական, տնտեսական զարգացումը դիտում է որպես միջոց բուն սոցիալական նպատակների իրագործման համար: Կապիտալիզմը կարող է բարելավել աշխատանքի պայմանները հանուն ավելի արդյունավետ աշխատանքի և դրա շնորհիվ կապիտալիստական շահույթի աճման, սակայն բուն աշխատանքի՝ որպես մարդկային գործունեության, վեհացումը, մարդկային զարգացման հնարավորությունների ընդլայնումն այս հասարակարգում չեն կարող լինել սոցիալական նպատակներ: Մինչդեռ սոցիալիզմը չի ձգտում նյութական հարստությանը որպես ինքնանպատակի. այն միջոց է անհատի համակողմանի և ներդաշնակ զարգացման համար:

Սովետական հասարակության նախկին փուլերի սուղ հնարավորությունները խոչընդոտել են սոցիալիզմի այս էական առավելությունների լիակատար դրսևորմանը, խանգարել ըստ արժանվույն գնահատելու կապիտալիզմի և սոցիալիզմի պայմաններում անգամ միակերպ տեխնիկական, տնտեսական պրոբլեմների սոցիալական նպատակաուղղվածության սկզբունքային տարբերությունները: Եվ այն հանգամանքը, որ սովետական սոցիալիստական հասարակության հեղափոխական վերափոխումները ներկայումս սերտորեն կապված են բուն աշխատանքային գործունեության վերափոխումների հետ, վկայում է սոցիալիզմի ընդլայնված հնարավորությունների, զարգացման որակապես նոր փուլի թևակոխման մասին: Այդ հանգամանքը շեշտվեց նաև ՍՄԿԿ XXVII համագումարում. «... Սոցիալական ոլորտում որակական տեղաշարժերն անհնար են առանց **աշխատանքի բովանդակության մեջ խոր վերափոխումներ կատարելու» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 67):

Աշխատանքի մի շարք հանգուցային պրոբլեմներ վճռորոշ նշանակություն ունեն սոցիալական ոլորտում որակական տեղաշարժերի հասնելու համար: Անհրաժեշտ է սկսել աշխատանքի հասարակական վարկի պրոբլեմից: Բոլորովին պատահական չէ, որ կուսակցությունը ներկայումս առանձնահատուկ ուշադրություն է դարձնում այդ պրոբլեմին: «Կուսակցությունը,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— այսուհետև էլ կհոգա ազնիվ, բարձրարտադրողական աշխատանքի հեղինակությունը բարձրացնելու, աշ-

խատանքում նախաձեռնությունն ու ստեղծագործությունը զարգացնելու, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի հիմունքները ամրապնդելու մասին» (նույն տեղը, էջ 229—230): Այս հարցադրումը կարևոր է ոչ միայն բուն աշխատանքային դաստիարակության, այլև սոցիալական քաղաքականության նպատակների իրագործման, սովետական հասարակության բարոյական առողջացման, մարդկանց տարբեր սերունդների գաղափարաքաղաքական կայունության ապահովման համար:

Վերջին տարիների կուսակցական փաստաթղթերում, մասնագիտական և հրապարակախոսական գրականության մեջ արձանագրվում է ինժեներային աշխատանքի սոցիալական վարկի անկման միտում: Իրոք, ինչպես վկայում են սոցիոլոգիական հետազոտությունները, ինժեների աշխատանքը ցածր տեղ է գրավում միջնակարգ դպրոցի շրջանավարտների մասնագիտական կողմնորոշումների սանդղակում: Զանգվածային է դարձել այն երևույթը, երբ երիտասարդ բանվորը, ստանալով բարձրագույն կրթություն, խուսափում է փոխադրվել ինժեներային աշխատանքի: Նման վիճակը պայմանավորված է, անշուշտ, ոչ թե տվյալ աշխատանքի բովանդակային առանձնահատկություններով, այլ առավելապես այն նյութական անբարենպաստ դրությամբ, որը բնորոշ է ինժեների մասնագիտությանը, շատ այլ զբաղմունքների հետ համեմատ: Իսկ դա չէր կարող անհետևանք մնալ մարդկանց հոգեբանության, աշխատանքի նկատմամբ նրանց վերաբերմունքի, առհասարակ նրանց կենսափիլիսոփայության համար: Եվ եթե դերձակն ու վարսավիրը հատկապես մեր հանրապետության երիտասարդության որոշ մասի աչքում այսօր ավելի մեծ գրավչություն ունեն, քան մանկավարժը և գիտաշխատողը, ապա դրանում դրսևորվում են ոչ թե բուն մասնագիտական տարբերությունները, այլ աշխատանքի և առհասարակ կյանքի նկատմամբ օգտապաշտական վերաբերմունքը, «հեշտ» կյանքի որոնումները, սպառողական հոգեբանության ուժեղացումը:

Այսօր մենք ճաշակում ենք նախկին կառավարչական անհոգության դառը պտուղները, և գիտատեխնիկական զարգացման արագացման հրամայական պահանջները մեզ կանգնեցրել են ինժեների, տեխնոլոգի, կոնստրուկտորի աշխատանքի սոցիալական վարկի վերականգնման պրոբլեմի առջև: Առանց վերջինիս լուծման մենք չենք կարող ապահովել գիտատեխնիկական զարգացման բարձր տեմպերը, ինչպես նաև սոցիալ-տնտեսական զարգացման, հասարակական կյանքի վերակառուցման, արմատական վերափոխումների կուրսը:

Ստեղծված վիճակը անհանգստացնող է, տագնապալի: Եվ խոսքը վերաբերում է ոչ միայն սոցիալ-տնտեսական զարգացման արագացմանը, ոչ միայն տեխնիկական, տնտեսական նկատառումներին, այլև սոցիալական արդարության ապահովմանը: Սոցիալիստական հասարակությունը չի կարող բնականոն գործել և ներդաշնակորեն զարգանալ, եթե նա ըստ արժանվույն չի ապահովում յուրաքանչյուր մասնագիտական խմբի վարձահատուցումը, եթե, բարեխիղճ, ազնիվ, բարձրարտադրողական աշխատանքը հասարակական արժեքների համակարգում չունի իր արժանի տեղը:

Ինչպես լուծել այդ պրոբլեմը: Միայն աշխատավարձի բարձրացումը այստեղ անբավարար է: Մի՞թե բարձր աշխատավարձ-գայթակղությունը լուծեց հանրային տրանսպորտի վարորդական կադրերի դեֆիցիտի պրոբլեմը: Ամենևին, նման «լուծումը» նույնիսկ բացասաբար անդրադարձավ այլ մասնագիտությունների, հենց նույն ինժեներային աշխատանքի հասարակական հեղինակության վրա: Իսկապես, կարճատև դասընթացների դիմաց խոստանալով 250—400 ռուբլի աշխատավարձ, բազմաթիվ այլ արտոնություններ և առավելություններ, մենք փաստորեն խթանում էինք աշխատանքի նկատմամբ ծայրահեղ պրագմատիկական մոտեցում՝ նսեմացնելով այնպիսի արժեքներ, ինչպիսիք են մասնագիտական կոչումը, պրոֆեսիոնալ արժանապատվությունը, աշխատավորի օրինական հպարտությունը և այլն:

Տվյալ պրոբլեմը սոցիալական միջոցներ է պահանջում, սոցիալական ակտիվ քաղաքականության անցկացում: Ամենից առաջ՝ անաշխատ եկամուտների իսպառ վերացում, հետևողական պայքար հավասարարության պրակտիկայի դեմ, սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության բոլոր սկզբունքների և դրանցից գլխավորի՝ «ըստ աշխատանքի» բաշխման սկզբունքի անշեղ գործառություն: «Ով չի աշխատում, նա թող չուտի»՝ ժողովրդի այս իմաստուն խոսքը Վ. Ի. Լենինը պատահական չէ, որ համարել է «սոցիալիզմի **գործնական** պատվիրանը» (**ԵԼԺ**, հ. 35, էջ 239): Սա է էականը, վճռորոշը, մնացած անեյիքը սրանից է ածանցյալ: Չպետք է միամտորեն զարմանալ ինժեներային աշխատանքի վարկի անկման վրա, եթե անաշխատ եկամուտների գոյության փաստն իսկ վարկաբեկում է աշխատանքային կյանքը, նսեմաց-



նում հատկապես մտավոր աշխատանքը: Առանց արմատախիլ անելու շուկայական հոգեբանությունը, մենք չենք կարող սերմանել աշխատանքային բարոյականության արժեքները: Առանց վնասազերծելու անաշխատ եկամուտներից ուռճացած պորտաբույծների բավականին ստվար բանակը, մենք չենք կարող վերականգնել ազնիվ աշխատանքի հասարակական հեղինակությունը:

Սա է իրողությունը, և այն աստիճանաբար ըմբռնվում է աշխատավորության ամենալայն խավերի կողմից: Ահա թե ինչու ՍՄԿԿ ներկայիս հարցադրումները, կապված ազնիվ, բարձրարտադրողական աշխատանքի հեղինակության բարձրացման, անաշխատ եկամուտների և սոցիալիզմին խորթ այլ երևույթների դեմ անզիջում պայքարի հետ, այդքան խոր արձագանք ու ջերմ աջակցություն են ստանում ժողովրդի կողմից:

Աշխատանքի ասպարեզը կենտրոնական տեղ է գրավում մի այնպիսի ստրատեգիական սոցիալական պրոբլեմի լուծման գործում, ինչպիսին է «հասարակական հարաբերությունների բոլոր ոլորտներում սոցիալական արդարության սկզբունքի ավելի ու ավելի լրիվ իրականացումը» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 211): ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության այս առանցքային պրոբլեմի լուծումը կարևոր է հատկապես մարդկանց աշխատանքային գործունեության բնագավառում: Նախ, սոցիալական արդարությունն առհասարակ բնորոշում է սոցիալական հանրության ներսում բարիքների բաշխման տեսակը, ինչպես նաև փոխանակային հարաբերություններում համարժեքության չափը: Իսկ սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության գլխավոր սկզբունքը հենց «ըստ աշխատանքի» բաշխումն է, աշխատանքն է նաև կոնկրետ անձի սոցիալական արժեքի հիմնական չափանիշը: Այնուհետև, սոցիալիզմի պայմաններում աշխատանքի ասպարեզը շատ ավելի կարևոր հասարակական և անձնային նշանակություն ունի, քան կապիտալիստական հասարակության շրջանակներում. ի տարբերություն վերջինի, սոցիալիզմը իր իսկ էությամբ խորթ է «ժամանցի քաղաքակրթության», «սպառման քաղաքակրթության» և այլ բուրժուական մոդելներին, այսինքն՝ սոցիալիզմը չի ընդունում աշխատանքի ասպարեզում անարդարությունների փոխհատուցումը ժամանցի, սպառման, վայելքների ընդլայնման տեսքով: Եվ, ինչպես վկայում են սոցիոլոգիական հետազոտությունները, մամուլում վերջին ժամանակներս տպագրվող նամակները, սովետական մարդիկ հատկապես զգայուն են աշխատանքային բնագավառում անարդարությունների, սոցիալիզմի սկզբունքներից շեղումների նկատմամբ: Իհարկե, մարդկանց աշխատանքային գործունեության վրա ազդում են նաև անարդարության դրսևորումները արտաաշխատանքային կյանքում՝ զանազան սոցիալական հաստատությունների բյուրոկրատական քաշքշուկը, հասարակական տրանսպորտի վատ աշխատանքը, առևտրի և հասարակական սննդի օբյեկտներում աչքի զարնող անօրինականությունները, արդարադատության վրիպումները և այլն: Սակայն վճռորոշը, այնուամենայնիվ, բուն աշխատանքի ասպարեզն է, աշխատավորական կոլեկտիվը, այն անմիջական սոցիալական միջավայրը, որտեղ մարդն ակնհայտորեն տեսնում է, զգում սոցիալիզմին բնորոշ սկզբունքների գործառության վիճակը:

Աշխատանքի ասպարեզում սոցիալական արդարության հետագա խորացման հիմնական ուղղությունը յուրաքանչյուրին ըստ աշխատանքային վաստակի պատշաճ վարձատրման ապահովումն է, յուրաքանչյուրի մոտ վստահության ամրապնդումը, երբ աշխատանքը գնահատվում է ըստ արժանվույն, արդարացի: Ամենալուրջ խոչընդոտը այստեղ հավասարարական պրակտիկան է, երբ աշխատավարձը տրվում է ոչ թե ռեալ արդյունքների, այլ լոկ աշխատանքի ներկայանալու համար, երբ, հետևաբար, չեն տարբերակվում լավ ու վատ աշխատողները, նույնիսկ ավելին, գլուխ պահողները բարեխիղճ աշխատողի համեմատ լինում են ավելի բարենպաստ վիճակում: Հավասարարությունը չի կարող չսառեցնել աշխատանքային էնտուզիազմը, չսահմանափակել մարդկային գործոնի ակտիվությունը: Փաստորեն խախտվում է «ըստ աշխատանքի» բաշխման սոցիալիստական սկզբունքը, սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության հիմնական պահանջը:

Չի կարելի թերագնահատել հավասարարության ողջ վտանգավորությունը մեր հասարակության հետագա ներդաշնակ զարգացման, ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության իրականացման տեսակետից: Պետք է նշել, որ եթե անաշխատ եկամուտները սոցիալիստական ապրելակերպի, սոցիալիստական արդարության, աշխատանքային բարոյականության ուղղակի, բացահայտ հակոտնյաներն են, ապա հավասարարությունը նրբին, քողարկված և շատ ավելի նենգ հակոտնյա է: Մանավանդ որ

այն հաճախ հանդես է գալիս սոցիալական արդարության, մարդկանց մասին հոգացողության դիմակի տակ:

Հավասարարությունն ունի իր օբյեկտիվ և սուբյեկտիվ հիմքերը: Օբյեկտիվը տնտեսական մեխանիզմի անբավարար կազմակերպվածությունն է, երբ, օրինակ, արտադրական ձեռնարկությանը շատ ավելի ձեռնտու է լինում արտադրել բարոյապես հնացած արտադրանք, քան թե, ռիսկի դիմելով, ներդնել գիտատեխնիկական որևէ նորույթ: Սուբյեկտիվը աշխատավորական կոլեկտիվի ղեկավարի անկարողությունն է՝ ապահովել կոլեկտիվի ներսում յուրաքանչյուրի վաստակի ճիշտ գնահատականը, նյութական և բարոյական վարձահատույցը: ՍՄԿԿ XXVII համագումարն ամենայն սկզբունքայնությամբ դրեց հավասարարության զանազան դրսևորումների՝ չվաստակած պարգևների ստացման, աշխատավարձի «լլորացման», աշխատանքային ավանդին անհամապատասխան այլ առավելությունների վերացման հարցը «... երբ լավ աշխատողի ու անփույթ աշխատողի աշխատանքը վարձատրվում է միատեսակ, ապա դա մեր սկզբունքների կոպիտ խախտում է» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 64):

Ինչպես ամբողջ ձեռնարկությունը, այնպես էլ յուրաքանչյուր աշխատող պետք է շահագրգռված լինեն լարված պլաններ վերցնելու մեջ: Առայժմ տնտեսական խթանները անբավարար են նպաստում դրան: Տնտեսավարման նոր համակարգի առավելությունն էլ այն է, որ աշխատավարձի ֆոնդի աճը ուղղակի կախման մեջ է դրվում պլաններից, արտադրանքի ծավալի ռեալ մասշտաբներից: Երկրի ժողովրդական տնտեսության վերակառուցման գլխավոր ուղղությունը հենց դա է՝ ապահովել թե ամբողջ ձեռնարկության և թե յուրաքանչյուր աշխատողի մոտ ավելի լավ աշխատելու կայուն ցանկություն, գործուն նյութական և բարոյական շահագրգռվածություն: Եվ դա է հենց մարդկային գործոնի ակտիվացման մասին կուսակցության արդի հարցադրման հիմնական իմաստը: Մարդկային գործոնը չի կարող չպասիվանալ, երբ աշխատասեր, բարեխիղճ, տաղանդավոր մարդը բախվում է բյուրոկրատական արգելքների, երբ նրա դրսևորած ակտիվությունը, նախաձեռնությունը, ավելին անելու ցանկությունն ու կարողությունը դեմ են առնում անհիմն ու հնացած պատնեշների, պահպանողական ղեկավարության չկամությանը: Ասպարեզը մնում է միջակություններին և հարմարվողներին: Տուժում է ոչ միայն կոնկրետ անձը, այլև ողջ հասարակությունը: Ընկնում է ազնիվ, բարեխիղճ աշխատանքի սոցիալական վարկը, թուլանում նրա ներգործունությունը աճող սերունդների աշխատանքային դաստիարակության վրա:

Պետք է նկատել, որ մարդկային գործոնի ակտիվացման շուրջ հրապարակումներում հաճախ շեշտադրվում է այդ խնդրի առավելապես տեխնիկական, տնտեսական կողմը: Հիրավի, ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը սկզբունքորեն նոր պահանջներ է ներկայացնում աշխատանքի սուբյեկտին, նրա պատասխանատվությանը, ինքնուրույնությանը, աշխատանքի նկատմամբ ունեցած վերաբերմունքին: Միևնույն ժամանակ, աճում են նաև յուրաքանչյուր աշխատողի վրիպումից առաջացող տեխնիկական վթարի հնարավոր մասշտաբները: Սրան պետք է ավելացնել, որ մարդկային գործոնի ակտիվացման խնդիրը հրամայաբար թելադրվում է նաև առաջիկա տարիներին երկրի ժողովրդագրական առանձնահատկություններով, ամենից առաջ աշխատանքային ռեսուրսների աճի տեմպերի իջեցմամբ: Ինչպես հայտնի է, տասներկուերորդ հնգամյակի ընթացքում այդ աճը կազմելու է 3,2 միլիոն մարդ, մինչդեռ աշխատանքի արտադրողականության առկա մակարդակի դեպքում հնգամյակի բնագծերը նվաճելու համար տնտեսությանն անհրաժեշտ են առնվազն 22 միլիոն լրացուցիչ աշխատողներ: Ահա թե ինչու է նախատեսվում հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացում 2,3—2,5 անգամ, որը և ենթադրում է մարդկային գործոնի անպայման ակտիվացում:

Այնուամենայնիվ, մարդկային գործոնի ակտիվացումը խորապես սոցիալական պրոբլեմ է, դրա ժամանակակից շեշտադրումը էապես կապված է սոցիալիստական հասարակության ներքին զարգացման, սոցիալիզմի հիմնական «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքի գործառության խորացման հետ: Այս բանաձևի երկրորդ մասը, ինչպես ասվեց, արտահայտում է սոցիալիստական արդարության միջուկը և հսկայական նշանակություն ունի սոցիալիստական հասարակության բնականոն ընթացքի համար: Սակայն, մարդկային գործոնի ակտիվացման տեսակետից, որքան էլ որ կարևոր են բաշխման հարաբերությունների կարգավորումը, հավասարարության պրակտիկայի և անաշխատ եկամուտների դեմ պայքարը, աշխատավարձի խթանիչ դերի բարձրացումը



և այն, դրանք, միևնույնն է, չեն կարող համեմատվել տվյալ բանաձևի առաջին մասի հետ: «Ըստ ընդունակությունների» աշխատանքի ապահովումը մարդկային գործոնի ակտիվացման իսկապես անսպառ մի աղբյուր է:

Հետևաբար, մարդկային գործոնի ակտիվացումը որպես ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության կենտրոնական պրոբլեմներից մեկը, վկայում է, թե բուն սոցիալիզմի ներքին ռեզերվների բացահայտումը և թե սոցիալական քաղաքականության որակապես նոր մակարդակը: Առավել էականն այստեղ այն բանի գիտակցումն է, որ սոցիալիստական հասարակությունը պետք է անվերապահ կերպով ապահովի «ըստ աշխատանքի» բաշխման սկզբունքը, որպեսզի յուրաքանչյուր ոք ձգտի իսկապես աշխատել «ըստ ընդունակությունների», լիովին դրսևորի իր ընդունակությունները, կիրառի գիտելիքներն ու հմտությունները:

Յուրաքանչյուր ոք, ով ձգտում է և չի կարողանում աշխատել «ըստ ընդունակությունների», ըստ ստացած կրթության և մասնագիտության, հնարավորություն չունի լիովին տրվելու իր «սիրած աշխատանքին», տուժում է ոչ միայն անձամբ: Տնտեսապես և սոցիալապես տուժում է նաև ողջ հասարակությունը: Ահա թե ինչու ակտիվացնել մարդկային գործոնը, ամենից առաջ նշանակում է՝ բացահայտել և առավելագույն ձևով օգտագործել հասարակության յուրաքանչյուր անդամի աշխատանքային պոտենցիալը:

Կարծում ենք, հատկապես այս տեսակետից է անհրաժեշտ գնահատել 1986 թ. նոյեմբերին ընդունված «Անհատական աշխատանքային գործունեության մասին» օրենքը: Վերջինս կարող է դառնալ վերակառուցման, մարդկային գործոնի ակտիվացման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հզոր միջոց: Սոցիալիստական հասարակությունն այդ օրենքով վերացնում է մարդու աշխատելու ցանկության առջև դրված անհիմն արգելքները, սահմանափակումները, աշխատավոր մարդուն թույլ է տալիս առավել լիովին դրսևորելու իր ընդունակությունները՝ հօգուտ իր և ողջ հասարակության:

Աշխատանքը կենտրոնական տեղ է գրավում մի այնպիսի սոցիալական պրոբլեմի լուծման մեջ, ինչպիսին է սովետական հասարակության հետագա դեմոկրատացումը: Այդ պրոբլեմին վիթխարի ուշադրություն դարձվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, Կենտկոմի հաջորդ պլենումներում: Վերակառուցումն անհնարին է առանց դեմոկրատացման, հատկապես անմիջական դեմոկրատիայի ձևերի հետագա ընդլայնման: 70-ական թվականներին մեր երկրի տնտեսության մեջ, հոգևոր և քաղաքական կյանքում ճահճացման երևույթները, մեր առաջընթացի արգելակման մեխանիզմների գոյացումը, աշխատավորների զգալի մասի մոտ տարածված սոցիալական հիասթափությունն ու անտարբերությունը, սոցիալիզմին խորթ երևույթների կուտակումը մեծապես պայմանավորված էին սոցիալական շատ հաստատությունների գործունեության, մարդկանց աշխատանքային կենսագործունեության կազմակերպման մեջ դեմոկրատական սկզբունքների խաթարմամբ, լենինյան ավանդույթների անտեսմամբ: Դեմոկրատացումը օբյեկտիվ անհրաժեշտություն է, սովետական հասարակության ներքին օրինաչափություններով թելադրվող հրամայական պահանջ: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումը այս առթիվ աներկբա արտահայտվեց. «Մենք խոսում ենք հասարակության վերակառուցման և դրա հետ կապված խոր դեմոկրատացման պրոցեսների մասին, նկատի ունենալով հասարակության մեջ իրոք հեղափոխական և բազմակողմանի վերափոխումները»:

Երևանի արդյունաբերական ձեռնարկություններում անցկացված սոցիոլոգիական հետազոտությունները վկայում են, որ աշխատավորական կոլեկտիվների անդամների շուրջ 60 տոկոսը վերջին մեկ տարվա ընթացքում ոչ մի անգամ ելույթ չի ունեցել ժողովներում և խորհրդակցություններում, չի դիմել արտադրամասի պետին կամ վարպետին իր ընդհանուր աշխատանքի, արտադրության կազմակերպման և կառավարման և ոչ մի հարցի կապակցությամբ: Ընդսմին, նման վիճակի պատճառների բացատրության մեջ հարցվողները նշում են առավելապես ելույթ ունենալու իրենց անկարողությունը և առաջարկությունների, դիտողությունների անիմաստությունը, քանի որ դրանք, միևնույնն է, հաշվի չեն առնվում: Անհանգստացնող երևույթ է այն, որ աշխատանքում առաջ քաշվելու հարցում կոլեկտիվի հարգանքը վայելող անձնավորության հնարավորությունները հասարակական կարծիքի կողմից գնահատվում են գրեթե երեք անգամ պակաս, քան ղեկավարությանը ամեն հարցում հաճոյանալ ձգտող անձնավորության հնարավորությունները:

Մինչդեռ սոցիալիստական աշխատավորական կոլեկտիվն իրեն բնորոշ միջանձնային կապերով լայն հնարավորություններ ունի արտադրությունում անմիջական

դեմոկրատիայի զարգացման, սոցիալիստական ինքնավարության ընդլայնման, սոցիալական քաղաքականության հանգուցային պրոբլեմների լուծման համար: Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հզոր լծակներից է աշխատանքի գիտական կազմակերպման ամբողջ համակարգի կատարելագործումը: Անցած հնգամյակում նման միջոցառումների շնորհիվ արդյունաբերության մեջ խնայվել է 1,8 միլիոն մարդու աշխատանք: Այնուամենայնիվ, գաղտնիք չէ, որ շատ ձեռնարկություններում աշխատանքի կազմակերպման վիճակը հույժ անմխիթար է: Այդ են վկայում մեզանում աշխատաժամանակի ահռելի կորուստները:

Առհասարակ, աշխատանքի կազմակերպման ասպարեզում հսկայական չօգտագործված ռեզերվներ կան: Չէ՞ որ միայն աշխատանքի գիտական կազմակերպման ճյուղային կենտրոններում զբաղված են 20 հազար մասնագետներ, դրանց պետք է ավելացնել ձեռնարկությունների սոցիոլոգիական ծառայությունների 3—4 հազար աշխատողներին: Խոչընդոտում են տեսության և պրակտիկայի խզումը, որոշ ղեկավարների հին ձևով աշխատելու ձգտումը, երբեմն նաև հանձնարարականների ցածր մակարդակը: Կարծում ենք, վերակառուցման պայմաններում յուրաքանչյուր աշխատող պիտի հնարավորություն ունենա մասնակցելու աշխատանքի կազմակերպման և կառավարման ցանկացած հարցի լուծման ընթացքին, անձամբ պատասխանատվություն զգա ամբողջ կոլեկտիվի ընդհանուր շահերը շոշափող վճիռների կայացման համար: Այդ դեպքում ԱԳԿ-ի մասնագետները հանդես կգան յուրատեսակ կատալիզատորի դերում՝ հմտորեն կառավարելով հազարավոր աշխատողների ստեղծագործության արգասիքը, գործի դնելով նորանոր ռեզերվներ: ՍՄԿԿ XXVII համագումարում ընկ. Մ. Ս. Գորբաչովը միանգամայն տեղին շեշտեց. «Հենց որ ձեռնարկություններում սկսում են լրջորեն զբաղվել աշխատանքի կազմակերպումն ու խթանումը բարելավելու գործով, բարձրացնել կարգապահությունն ու պահանջկոտությունը, ի հայտ են գալիս ռեզերվներ, որոնց մասին առաջ մտքներովն իսկ չէին անցկացրել» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 59):

Վերակառուցման պայմաններում, ղեկավարների ընտրովիության պարագայում աշխատանքի գիտական կազմակերպման համակարգի առջև նոր և շատ ավելի բարդ խնդիրներ են ծառանում: Եվ ոչ միայն արդյունաբերության բնագավառում, այլև մարդկային գործունեության բոլոր մնացած ասպարեզներում: Նպաստելով մարդկային գործոնի ակտիվացմանը, ժողովրդի սոցիալիստական ինքնավարության ընդլայնմանը, կադրերի աշխատանքի ոճի կատարելագործմանը, աշխատավորական կոլեկտիվներում սոցիալիստական արդարության և բարոյականության հաստատմանը՝ աշխատանքի գիտական կազմակերպման համակարգը կվերածվի ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության հանգուցային պրոբլեմների լուծման գործուն միջոցի:

Աշխատանքի կազմակերպման համակարգի կատարելագործման առավել հեռանկարային ուղղությունը, մեր կարծիքով, այն է, որ ավելի հմտորեն և ճկուն օգտագործվի մարդու աշխատանքային վարքի դրդապատճառների ողջ համախումբը: Որքան էլ կարևոր է տնտեսական վարձատրության դերը, այնուամենայնիվ, անթույլատրելի է աշխատանքի սուբյեկտի մոտիվացիան հանգեցնել լոկ աշխատավարձին: Տեսական առումով սա ակնհայտ է: Սակայն մարդկանց աշխատանքային կյանքի գործնական կազմակերպման մակարդակում կարծես թե մոռացվում է, որ աշխատանքն ինքը մարդկային վարքի առավել հզոր ազդակներից մեկն է, կարգավորման ամենաարդյունավետ միջոցը: «Տնտեսական մարդու» մոդելը առայժմ ակնհայտորեն գերիշխում է արտադրության շատ կազմակերպիչների, աշխատավորական կոլեկտիվների ղեկավարների մտածելակերպի և գործելակերպի մեջ, ինչն անխուսափելիորեն նսեմացնում է աշխատանքի բուն մարդկային արժեքը, աղքատացնում է աշխատողի դրդապատճառների ամբողջությունը, աշխատանքային գործունեության նկատմամբ խթանում է առավելապես օգտապաշտական վերաբերմունք: Ուրեմն, պատահակա՞ն է, արդյոք, որ անգամ «բարոյական խթանում» արտահայտությունը երբեմն անսքող հեգնանքով է ընդունվում: Դրա հետ մեկտեղ, մարդկային գործոնի ակտիվացմանը խանգարում է մյուս ծայրահեղությունը՝ աշխատավարձի խթանիչ դերի, նրա սոցիալ-հոգեբանական ֆունկցիաների վատ օգտագործումը:

Աշխատանքային գործունեության դրդապատճառների խոր իմացությունը հսկայական նշանակություն ունի աշխատանքի գիտական կազմակերպման, աշխատանքային դաստիարակության մակարդակի բարձրացման, աշխատանքային բարոյականության ամրապնդման, ամբողջ հասարակության բարոյական առողջացման համար: Բանն այն է, որ ներկայումս մեզ համար ամենալուրջ սոցիալական, կազմակերպական խնդիրը ոչ այնքան մարդու աշխատելու կարողությունն է, որքան՝ ցանկությունը:



Հենց այդ ցանկության պակասն է սոցիալապես առավել անցանկալի երևույթը, հատկապես երիտասարդության շրջանում: Իսկ մենք, հաճախ մոռանալով, որ աշխատանքային դաստիարակությունն առավելապես աշխարհայացքային դաստիարակություն է, այն հանգեցնում ենք սոսկ աշխատանքային ուսուցման:

Կարծում ենք, անհրաժեշտ է ավելի համարձակորեն անցնել աշխատանքի կազմակերպման այնպիսի առաջադիմական ձևի կիրառմանը, ինչպիսին է ճկուն գրաֆիկը: Հատկապես մտավոր, ստեղծագործական աշխատանքի տեսակների համար անցանկալի և անարդյունավետ է աշխատողի վարքի արտաքին ռեգլամենտավորումը: Հարկավոր է շատ ավելի վստահել մարդուն, տրամադրել նրան ինքնուրույնություն, պատասխանատվություն, սեփական աշխատաժամանակը տնօրինելու ռեալ հնարավորություն: Կարծում ենք նաև, որ անհրաժեշտ է խորապես ուսումնասիրել աշխատանքային և ընտանեկան կյանքի կապը, հնարավորին սահմաններում այդ կապի նուրբ կարգավորումը նույնպես ընդգրկել աշխատանքի գիտական կազմակերպման համակարգում:

Վերակառուցման բազմաբովանդակ խնդիրների լուծման, հասարակության բոլոր բնագավառներում արմատական վերափոխումների, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, սովետական սոցիալիստական հասարակության որակապես նոր փուլի նվաճման միակ ուղին ավելի լավ, ավելի արտադրողական, ավելի արդյունավետ աշխատանքի կազմակերպումն է: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում, շարադրելով վերակառուցման առանցքային ուղղությունների մեր անելիքները, Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը ընդգծեց. «Շարադրվածը կարելի է ամփոփել այսպես. մենք բոլորս միասին և յուրաքանչյուրս պարտավոր ենք աշխատել ավելի լարված»: Այլընտրանք գոյություն չունի:

«Սովորել աշխատել՝ այս խնդիրն իր ամբողջ ծավալով սովետական իշխանությունը պետք է դնի ժողովրդի առաջ» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ,** հ. 36, էջ 233): Լենինյան այս պատգամը մեր օրերում, սովետական հասարակության առջև ծառացած որակապես նոր խնդիրների առկայությամբ նորովի է հնչում: Սակայն անփոփոխ է աշխատանքի ասպարեզի նկատմամբ ուշադրությունը թե՛ որպես տնտեսական և սոցիալական խնդիրների լուծման միջոցի և թե՛ որպես մարդու համակողմանի ու անկաշկանդ զարգացումն ապահովող գլխավոր ասպարեզի:

Այսպիսով, ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության մի քանի հանգուցային պրոբլեմների քննարկումը ցույց է տալիս, որ հատկապես մարդկանց աշխատանքային գործունեությունն է այն ասպարեզը, որտեղ քննարկված պրոբլեմները պիտի առաջնահերթ լուծում ստանան: Աշխատանքի սոցիալական վարկի և հասարակական հեղինակության բարձրացումը, սոցիալական արդարության խորացումը, մարդկային գործոնի ակտիվացումը, սոցիալիստական ձեռներեցության հետագա խթանումը, աշխատավորական կոլեկտիվի հասարակական ֆունկցիաների ուժեղացումը, արտադրությունում աշխատավորների սոցիալիստական ինքնակառավարման նորանոր ձևերի տարածումը, ամբողջ աշխատանքի ասպարեզի գիտական կազմակերպման մակարդակի բարձրացումը այն կենտրոնական խնդիրներն են, հիրավի, որոնց բարեհաջող լուծումը գլխավոր նախադրյալն է ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության բոլոր ստրատեգիական նպատակների, մեր հասարակության արմատական վերափոխումների իրականացման համար:

---

# ՉԱՐԵՆՑԻ ԳԵՂԱԳԻՏԱԿԱՆ ՈՐՈՆՈՒՄՆԵՐԻ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐԸ

**ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑԻ ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ**

1930-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԸ ՉԱՐԵՆՑԻ գեղագիտական հայացքների զարգացման մեջ ունեն առանձնահատուկ նշանակություն: Ստեղծագործական անդուլ որոնումները նրան տանում են արվեստի կատարելության ճանապարհով: Այդ ընթացքում, վերարժեքավորելով նախորդ տարիների վաստակը, նա փորձում է գտնել կայուն, մնայուն և բացարձակին մոտեցող վերջնական չափանիշներ: Կատարյալ, համապարփակ, խոր ու ժողովրդային արվեստը նրա համար դառնում է միակ նպատակ և տևական որոնումների վերջնական սահման:

Գրական բարձրագույն չափանիշներով առաջնորդվող, ազգային բանարվեստի ավանդույթի լարը շարունակող, անցյալի արժեքների և, ընդհանրապես, համաշխարհային քաղաքակրթության նվաճումների փորձով ստուգված մնայուն արվեստ ստեղծելու չարենցյան ծրագիրը 30-ական թվականներին գեղագիտական ու գեղարվեստական հարցադրման է վերածվում «Գիրք ճանապարհի» ժողովածուի, ինչպես և հետագա տարիների ստեղծագործության մեջ: Այս տեսակետից ուշագրավ են նաև նրա հոդվածները, զեկուցումները, ելույթները, նամակները, օրագրային գրառումները, աշխատանքային ծրագրերի նշումները, հարցազրույցները:

1933 թ. առաջին վեց ամիսները արտակարգ արգասավոր էին Չարենցի ստեղծագործական կյանքում: Այդ ընթացքում նա գրեց իր վերջին մատյանը՝ «Գիրք ճանապարհին»: Գիրքը գրելուց երկու տարի հետո նա դեռ պիտի երազեր մի «բոլդինյան աշնան» մասին, գուցեև առանց մտաբերելու, որ բարեբեր հունձքի մի եռուն շրջան ապրել է արդեն: Գրքի տպաքանակը, որ պատրաստ էր նույն տարվա աշնանը, փոփոխություններով լույս տեսավ մեկ տարի հետո՝ 1934-ին: Նոր տարբերակից դուրս մնացին «Աքիլլե՞ս, թե՞ Պյերո» պոեմը, «Յոթ խորհուրդ քաղաք կառուցողներին» բանաստեղծությունը: «Պոեմներ», «Տաղեր և խորհուրդներ» բաժինների վերջնական տարբերակում ավելացան նորերը՝ «Արվեստ քերթության», «Գիրք իմացության» և մի քանի առանձին գործեր՝ «Ուղերձ մեր հանճարեղ վարպետներին», «Վ. Մ.»:

Չարենցը, որի համար յուրաքանչյուր գիրք նախապես մտածված, ճշգրտապես գծագրված ճարտարապետական կառուցվածք էր, կանգնում է կառուցածը վերակառուցելու անհրաժեշտության առջև: 1933-ի վերջում և 1934-ի սկզբում, շտապ գրելով երկու նոր շարքերը, Չարենցը, այսպես ասած, կարողանում է փրկել գիրքը: Խոսքը ոչ միայն տպագրությունը գլուխ բերելու մասին է, այլ, առաջին հերթին, կառուցվածքի մեջ կատարված փոփոխությունների: Դուրս մնացած գործերի (հիմնականում «Աքիլլե՞ս, թե՞ Պյերո») կորուստը չփոխհատուցելով, Չարենցն, այնուամենայնիվ, կարողանում է նոր շարքերով պահպանել **գրքի ներքին միասնականությունն ու ամբողջականությունը**, որը նրա համար կարևորագույն գեղագիտական նախադրյալ էր:

Ի՞նչ գեղագիտական սկզբունքներ էր Չարենցը պաշտպանում «Գիրք ճանապարհի» ժողովածուում, անտիպ ժառանգության մեջ և տեսական-ծրագրային ելույթներում: Որտեղի՞ց էր նա գալիս և ու՞ր էր գնում:

Մինչև 30-ական թվականները Չարենցի ստեղծագործական ուղին անցել է բարդ ու հակասական մի ճանապարհ՝ սիմվոլիզմից մինչև ֆուտուրիզմ, ներանձնացած քնարական ապրումներից մինչև ռազմապոեմների ժանրով հնչող հրապարակային մենախոսություններ, պառնասականների էմալե սառնությունից մինչև հայ միջնադարյան սիրերգության տաք աշխարհը, «Երեքի» դեկլարացիայից մինչև «Ստանդարտի» ծրագիր, ագիտացիոն բնույթի բանաստեղծություններից մինչև կինոֆելիետոն, անցյալի արժեքների արմատական վերանայումից մինչև այդ արժեքների վերջնական հաստատում, մինչև վիպականության և ռեալիզմի այն սկզբունքները, որոնց նա հասավ «Խմբապետ Շավարշը» պոեմում, «Էպիքական լուսաբաց» գրքում, «Լիրիկական անտրակտ» շարքում: Այս ընթացքում նա անընդհատ գրական որոնումների ու պայքարի մեջ էր, որի նպատակը տեսական-ծրագրային նոր սկզբունքների հաստատումն էր ու գեղարվեստական իրագործումը:

Նյութի գեղարվեստական յուրացման տեսակետից ևս բանաստեղծն անցել էր բազմակողմանի որոնումների ու հարուստ ձեռքբերումների ճանապարհ: Վաղ շրջանի տրամադրություններին (լուսամփոփի պես աղջկա կերպարանքով հայտնված սեր, այդ սիրո տենդագին որոնում, կյանքի իմաստը ճշտող տառապագին հարցումներ, ազգային ողբերգություն և փրկության ուղիների որոնում, անձնական կյանքի դրամա) գալիս են ավելանալու հեղափոխական պայքարի շեշտերն ու քաղաքացիական լարվածության հասած և «բոլորին, բոլորին, բոլորին» ուղղված կոչերը:

Հեղափոխությունը, դրանից հետո սկըսված երկրի վերակառուցման հզոր թափը, նոր մարդու հոգեբանական ձևավորումը, նոր ժամանակների հասարակական կյանքըն ու ժողովրդի պատմությունը և այդ ամենի մեջ առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի կերպարը դառնում են Չարենցի պոեզիայի քաղաքացիական ուղղվածությունը ճշտող թեմատիկ հիմնական ուղեգծերը: Դեռևս 1910-ական թթ. կեսերից հեղափոխության գեղարվեստական պատկերմանը Չարենցն անդրադարձել է բազմիցս («Սոմա», «Ամբոխները խելագարված», «Նաիրի երկրից», «Դեպի ապագան», «Բրոնզե թևերը կարմիր գալիքի», «Երգ ժողովրդի մասին», «Հոկտեմբեր 25—26 1917» և այլն): Բանաստեղծն ըստ ամենայնի կերտում է հեղափոխության պատմությունը՝ բեկված առանձին պատմական դրվագների և պատմական անհատների ճակատագրերի մեջ: Այս տեսակետից է ահա, որ առանձնանում է Չարենցի լենինապատումը և հեղափոխության գործին նվիրված մարտիկների պայքարը գովերգող ասքապատումը: Լենինի կերպարը, որին Չարենցը անդրադարձել է բազմիցս («Լենին», «Ես և Իլյիչը», «Բալլադ Վլադիմիր Իլյիչի, մուժիկի և մի զույգ կոշիկի մասին», «Լենին քեռին», «Լենինն ու Ալին», «Մահվան քայլերգ» և այլն) առաջին հերթին նշանակում էր կյանքի, պայքարի ու աշխատանքային սխրանքի բարձրագույն չափանիշի հաստատում, որը և ընթացք է տալիս թե՛ երկրի տնտեսական վերակառուցման և թե՛ գրողի ու արվեստագետի գործին.

Լենի՛ն— այսօր արդեն ասել է— գագաթ,
Ասել է— ներքին կառուցում քո նոր
թեմայի:
Այդ թեման ուռճանում է այսօր քո մեջ...
Նա անում է կամքո՛վ, երկաթո՛վ,—
նա կյանքի՛ առավոտ է՝
Մտքի, խորքի, կառուցման անհուն ելևէջ...

Չարենցը նույն սկզբունքն է ի հայտ բերել և այն ժամանակ, երբ անդրադարձել է Բաքվի 26 կոմիսարների, Ա. Մյասնիկյանի, Ա. Խանջյանի, Հայաստանի հեղափոխական շարժման գործիչ Լ. Միչյանի, Վրաստանի կոմերիտմիության հիմնադիրներից մեկի՝ Բորիս Ձնելաձեի կերպարներին («Բալլադ քանվեցի մասին», «Կոմունարների պատը Փարիզում», «Իմ ընկեր Լիպոն», «Բորիս Ձնելաձե», Մյասնիկյանին ձոնված քառատողերը, Խանջյանին նվիրված «Դոֆին նաիրյան» սոնետների շարքը և այլն):

Չարենցը շատ արագ յուրացրեց իր ժամանակի գեղարվեստական զարգացման օրինաչափությունները, նվաճեց հոգևոր ու մտավոր ինքնագոյացման մի վիթխարի տարածություն, գեղարվեստական յուրաքանչյուր սկզբունքի մեջ եղավ լիարժեք ու ինքնամոռաց, անգամ հասավ արտառոց ծայրահեղությունների (ինչպես «Ռոմանս անսեր» պոեմը), բայց և ներքին մեծ լարումով շտկեց իրեն, վերագտավ ճշմարիտ ներշնչանքի ուղին, այդքանով հանդերձ՝ երբեք չբավարարվեց ձեռք բերածով և մի տեսակ անհաշտ մնաց ինքն իր հետ: Ինքնահաստատումի և ինքնաժխտումի դիալեկտիկան կարծես նրա՛ համար էր, ու կարծես իր մեջ նա կոչված էր ապրեցնելու ոչ թե մեկ Չարենց, այլ՝ մի քանիսը՝ իրար հերքող, իրար բացասող, բայց և ներքին մի ամուր տրամաբանությամբ իրար շարունակող: Ահա այս ձգտումն էր, որ «Էպիքական լուսաբացում» հոլովվող մոնումենտալ ներկայի գեղարվեստական պատկերը կերտելու ծրագրային կողմնորոշումից հետո, նրան մղում է մի նոր ինքնագոյացման, որը ամբողջ ստեղծագործական ճանապարհի հանրագումարն է: Հանրագումար՝ ներկայի և անցյալի, անձնական կյանքի և քաղաքացիական ակարագրի: Ինքնամբողջացման ներքին պահանջով Չարենցը ի մի է բե-

րում իր կյանքի ու իր ժողովրդի անցած ճանապարհի փորձը, քննում հայ երգի պատմությունը և թևակոխում գեղագիտական մի նոր շրջափուլ: Այդ շրջափուլը բնութագրող առաջին բառը **համադրականությունն է,** իր օգտագործած սինթետիզմը, ինչին նա ձգտում է և՛ առանձին գրքի ամբողջական կառուցվածքի մեջ, և՛ նյութի բազմաշերտության, և՛ տարաժամանակային ընդգրկումների, և՛ բանարվեստի ոճական, ձևային, լեզվական, տաղաչափական տարրերի բազմազանության: Համադրականությունն այս դեպքում լծակից է և համապարփակությունը, ինչը ենթադրում է հոգևոր և մտավոր կուտակումների վիթխարիություն, տեսադաշտի լայնություն և թափանցումների խորություն:

Տեսական և գործնական առումներով ինչպե՞ս է Չարենցը իրագործում գեղագիտական այս պահանջը: Միշտ էլ Չարենցը արտակարգ խիստ ու պահանջկոտ է եղել իր հանդեպ: Դա է՛լ ավելի է ուժեղանում 30-ական թվականներին: Գրական գործունեության 20-ամյակը խորհրդանշող «Երկերի» (1932 թ.) ժողովածուից դուրս թողնելով նախկինում գրած շատ գործեր՝ առանց երկբայության Չարենցը առաջաբանում նշում էր, որ «Ծիածան» գիրքը, «Ողջակիզվող կրակ» շարքի առաջին մասը «թե՛ ձևի, և թե՛ բովանդակության տեսակետից համարյա զուրկ են ինքնուրույնությունից», իսկ «Կոմալմանախն» ու մի շարք այլ գործեր, ըստ նրա, «զուրկ են գեղարվեստական որևէ արժեքից» (Ե. Չարենց, **Երկերի ժողովածու,** հ. 6, 1968, էջ 211): Առաջաբանում Չարենցը խոսում է նաև իր երկերի ժանրային դասավորության մասին՝ նախապես զետեղելով «Պոեմներ» բաժինը: Ե՛վ գործերի խիստ ընտրության, և՛ պոեմների բաժնով գիրքն սկսելու սկզբունքները Չարենցը կիրառել է նաև «Գիրք ճանապարհիում»: Այդպես նա հրատարակեց նաև 1934 թ. իր խմբագրությամբ լույս տեսած Հ. Թումանյանի «Գեղարվեստական երկեր» ժողովածուն, որը ևս բացվում է «Պոեմներ» բաժնով: Այս սկզբունքը իր «Բանաստեղծությունների» և՛ առաջին (1890 թ.), և՛ երկրորդ (1892 թ.) գրքերում կիրառել է նաև ինքը՝ Հ. Թումանյանը: Ուրեմն՝ Չարենցի գեղագիտության մեջ կարևորվում է ժանրային մտածողության և գրքի ժանրային կառուցվածքի սկզբունքը, ընդ որում՝ գրական մեծ ձևերին տրվող նախապատվությամբ: Իսկ բանաստեղծական շարքերն ինքնին թողնում են ամբողջական պոեմական հյուսվածքի տպավորություն: Այդպիսին էին նաև ավելի վաղ գրած շարքերը՝ «Էմալե պրոֆիլը Ձեր», «Տաղարան», «Փողոցային պչրուհուն», «Ութնյակներ արևին» և այլն: Գրքի ժանրային կազմի մեջ արդեն առկա են համադրականության սկզբունքները: Նախ, բնույթով տարբեր են պոեմները՝ բանահյուսական-պատմողական («Սասունցի Դավիթը»), պատմակենսագրական («Դեպի լյառը Մասիս»), պատմափիլիսոփայական («Պատմության քառուղիներով», «Մահվան տեսիլ»), փառաբանական-գովասանական («Գովք խաղողի, գինու և գեղեցիկ դպրության», «Նորք»), ագիտացիոն («Գալիքի որմնադիրները», «Համայնական դաշտերի սերմնացաններ») և այլն: Այդ պոեմներն ունեն և՛ դրամատիկական լարվածություն, և՛ ողբերգական շունչ, և՛ թեթև ներբողային հնչողություն: Բազմազան են նաև այն բանաստեղծական ժանրերը, որոնց դիմում է Չարենցը թե՛ այս գրքում, թե՛, ընդհանրապես, այս շրջանի ստեղծագործության մեջ: Ժանրային կազմը արտացոլում է հայ միջնադարի և արևմուտքի ու արևելքի համաշխարհային պոեզիան՝ տաղ, խորհուրդ, ուղերձ, թուղթ, նամակ, տապանագիր, գովք, ձոն, աղոթք, ներբող, ռուբայի, բեյթ, մոնոստիքոս, դիստիքոս, տետրապտիքոս, բալլադ, սոնետ, տրիոլետ, ռոնդո, թանկա:

Բազմազանությունը դեռևս համադրականություն չէ, բայց և բազմազան տարրերի համատեղումն է հասցնում համադրականության, որն արդեն ոչ թե առանձին գեղարվեստական տարրերի պարզ միացության հետևանք է, այլ՝ մտածողության, գեղագիտական կողմնորոշման արդյունք: Բայց մինչև բուն համադրականության առանձնահատկություններին հասնելը, անդրադառնանք այն հարցերին, որոնք հետաքրքրել են բանաստեղծին և ուղենշել նրա որոնումների առանցքային հունը:

Այս տարիներին տարբեր առիթներով Չարենցը հաճախ է արծարծում ազգային ավանդույթների նորոգման հարցը և ձևի ու բովանդակության հարաբերության դիալեկտիկան: Ըստ նրա, **«ազգային ձևը** գրականության մեջ հանգում է ոչ այլ ինչի, եթե ոչ **բովանդակության ռեալիստական, կոնկրետ** դրսևորման»: Այնուհետև՝ **«ազգային ձևը** գրականության մեջ ոչ այլ ինչ է նշանակում, եթե ոչ՝ բովանդակության այնպիսի դրսևորում, երբ հեղինակի լեզուն, ոճը, նկարագրած մարդկանց և վայրերի ընդհանուր կոլորիտը ադեկվատ է տվյալ ազգային միջավայրին, բնորոշում է տվյալ ազգային միջավայրի բոլոր այն հատկանշական կողմերը, որոնք բնորոշ **են միմիայն այդ ազգային միջավայրի համար և իբրև ձև** տարբերվում են **բովանդակությամբ նման բոլոր այլ միջավայրերից»** (նույն տեղը, էջ 220—221): Ձևի ու բովանդակության հարաբերությանը Չարենցն անդրադառնում է ոչ թե ընդհանուր դրվածքով, այլ՝ կապված ազգային ավանդույթի հետ: Եվ պատահական չէ, որ դիստիքոսներից մեկում նա այսպես է մեկնաբանում իր ժամանակի համար մեծ կարևորություն ձեռք բերած այդ հարցը.

Դու կարո՞ղ էիր ըմբռնել, որ հարցը
«էության և ձևի»—
Հարց է հողի ու հացի— և լուծվում է
անհաշտ պայքարով:—

Իսկ Թումանյանին տված բնութագրումներից մեկում նրա մեծությունը ներկայացնում է այսպես.

Նա մեծ էր հողո՛վ, արյունո՛վ:—
Արմատնե՞ր ուներ նա հողում.
... Հանճարեղ երգերում նրա— իր երկրի
արև՛ն էր շողում:—

Սովետական բազմազգ գրականության մեջ ազգայինի ըմբռնումը Չարենցի համար դառնում է ինքնուրույնության կարևոր երաշխիք: Հենց այդ բնույթի հարցադրումների արծարծումով էլ նա ելույթ ունեցավ ՍՍՀՄ գրողների հիմնադիր համագումարում: Համագումարի ոգուց ելնելով՝ նա, նախ, խոսում է այն «կուլտուրական ագրեսիայի» դեմ, որին հաճախ ենթարկվում են փոքր ժողովուրդները և ապա ըստ ամենայնի մանրամասնում մշակույթի գործի ընդհանուր շինարարության մեջ «ազգային կուլտուրայի դերի» կարևորության մասին իր միտքը: Այնուհետև Չարենցը բացահայտում է ազգային ավանդույթի իր ըմբռնումը, որի ակունքները նրա համար գալիս են հայ միջնադարյան գրականությունից և որի ներկայացուցիչները օգնում են նրան՝ «կերտելու այնպիսի ձևեր, որոնք արմատապես տարբերվում են խորհրդային մյուս բոլոր պոետների գործածած ձևերից» (նույն տեղը, էջ 273): Չարենցի ելակետը ոչ թե ազգերի քանակական, այլ մտավոր հարաբերությունն էր, որի դեպքում արդեն հանճարները հավասար իրավունքով են ներկայանում մարդկության դատին: «Որքան էլ փոքր լինեն մի ժողովուրդ և նրա գրականությունը, վերջինս չի կարող չունենալ իր ինքնատիպ, եզակի և անկրկնելի նրբերանգը, այն, որ հատուկ է միմիայն տվյալ գրականությանը»,— ասում էր նա (նույն տեղը, էջ 272): Չարենցը առաջարկում է ազգային այս առանձնահատկությունները դարձնել համընդհանուր սեփականություն՝ նկատի ունենալով համամիութենական գրականությունը, սովորել միմյանցից և այդպես հարստացնել ստեղծագործական փորձը:

Ծավալելով միտքը գրողի վարպետության և գրականության հիմնական խնդիրների շուրջ՝ Չարենցը քննադատական սուր խոսք է ասում գրականության հերոսի մասին, որը ոչ թե իրական մարդն էր, այլ՝ մտացածին խրտվիլակը, ինչը որ «ձախլիկությամբ» տառապող «անհուն տգիտության» ներկայացուցիչները երբեմն ավելի են կարևորում ճշմարիտ արվեստից և դեռ ավելին՝ այն դարձնում չափ ու չափանիշ: Չարենցը փաստորեն կռվում է գրական ցածր չափանիշների դեմ, դրանք վերականգնելու համար խոսում «մեր կյանքի թաքնված ահեղ ճշմարտության» մասին, որը, ըստ նրա, «վեր է մեր բոլոր գրական և էսթետիկական վեճերից» (նույն տեղը, էջ 277): Այս ամենի մասին նա խոսում է՝ վերստին կռվելով բոլոր նրանց դեմ, ովքեր գեղարվեստական խոսքը իջեցնում էին մինչև անգետ մարդու հասկանալիության աստիճանի: Եվ իբրև հոգևոր ու մտավոր կյանքի առաջնորդ՝ նա շեշտում էր. «Ես ինքս ինձ դասում եմ «բարձր» արվեստի ներկայացուցիչների շարքը...» (նույն տեղը, էջ 277): Բարձր արվեստի ըմբռնումը հակադրելով «գռեհկարարների և պարզունակների» ստեղծածին՝ Չարենցը պահանջում է հենց այդ բարձր արվեստը ծառայեցնել ժողովրդին և դրանով իսկ փակել ցածր գրականության ճանապարհը: Իսկ բարձր արվեստը նրա համար դուրս էր «ինտելիգենտական» խճողումներից և ժողովրդական գիտակցության այն աստիճանն էր, որն ստեղծել էր կյանքի զարգացումը, մարդկության հոգևոր առաջընթացը: Եվ իրոք, լինելով ամենախոր ու դրամատիկ հոգևոր ընդգրկումների բանաստեղծ՝ Չարենցն, այնուամենայնիվ, երբեք չդիմեց անտեղի բարդացումների: Նրա գեղագիտության մեջ գնալով արմատավորվում է արվեստի ժողովրդայնության հարցը: Ժողովրդայնության նրա ըմբռնումը թեև արտաքուստ այն ճանապարհը չէր, որով ընթացավ Թումանյանը, որովհետև վերջինս իրենով արդեն գրապատմական մի շրջափուլ ավարտել էր, բայց և Չարենցի ուղին այն նպատակակետն ուներ, դեպի ուր հայացք էին ուղղել նրա մեծագույն նախորդները՝ Խորենացուց մինչև Աբովյան ու Թումանյան: Իր բոլոր տեսակի որոնումներից հետո Չարենցն ի վերջո կանգնում է ժողովրդայնության ճանապարհի վրա և ցանկանում բարձր արվեստը ծառայեցնել ժողովրդին՝ այնպես, ինչպես Աբովյանը, Րաֆֆին, Թումանյանը: Իսահակյանին

գրած վերջին բանաստեղծությունը, ուղեկցող նամակի հետ մեկտեղ, դրա անմիջական արտահայտությունն է (նույն տեղը, էջ 456—457):

Ո՞րն է բարձր արվեստը ժողովրդին ծառայեցնելու ճանապարհը ըստ Չարենցի: «Մենք՝ մեր հոգեբանությամբ, որ **անցյալի ողջ կուլտուրայի բարդ զարգացման արդյունք է,**— այսօր կարող ենք ներկայացնել կյանքը» (նույն տեղը, էջ 279),— ասում էր նա՝ դա համարելով կուլտուրական պայքարի միակ ճանապարհը: Մեր կողմից ընդգծված արտահայտությունը վերստին գալիս է վկայելու, որ ժողովրդի ներկա կյանքին ծառայող արվեստը և արվեստագետը նրա հազարամյա մշակութային կյանքի անցած ճանապարհի արգասիք են և որ միայն այդպես կարելի է պահպանել հոգևոր կապի անընդհատականությունը սերունդների միջև՝ առանց որի խախտվում են հարաբերության եզրերը: Ու հենց այդ ելակետից ու նպատակով էլ նա գովք է ասում ժողովրդին.

Մնում է ինձ ասել,
Որ աշխարհում հասուն
Մի բան կա լոկ լուսե,—
Այդ ժողովուրդն է սուրբ,
Այդ դարերով սնած
Երգն է այն բորբ ու նուրբ,
Որ թե անցավ՝ գնաց—
Էլ չի առնի լեզու:—
(«Ռեքվիեմ հայրենական»)

Նույն ոգով նա գնահատում է նաև անցյալը, իսկ քաղաք կառուցողներին տված «Յոթը խորհուրդը» ավարտում այս տողերով.

... Մեռյալների մոխի՛րն է ամենապինդ
կիրը,
Ամենապինդ շաղախը և առհավատչյան,—
Եվ նրանո՛վ է դառնում երկիրը— երկիր,
Եվ ժողովուրդը— ժողովուրդ, և գալիքը—
գալիք՝
անհողդողդ ու անմահ...

Չարենցն իրեն զգում է անցյալից եկող այս մայր երակի շարունակության մեջ: Ու նաև նա գիտե, որ ցեղի արյունը այդ երակով պիտի ժառանգվի մյուսներին, ինչպես որ ժառանգվել է իրեն: Անսահման մեծ պատասխանատվությամբ է նա գիտակցում այդ ամենը, որովհետև գիտեր, որ թե՛ պատմությունն է իր յուրաքանչյուր տողին նայում, թե՛ պատմությունից իրեն մեծ երթ է վիճակված և, վերջապես, ինքն էր իր հանճարի ազգային ու պատմական մեծությունն զգում: Չարենցը ըստ էության յուրացնում է իր ժողովրդի հոգևոր ժառանգությունը՝ նրա ոսկեղենիկ լեզուն, նրա ազգային դյուցազներգության պատումը, ժողովրդական երգերի բանարվեստը: Ու նաև առաջիններից մեկն էր նա, որ ժողովրդական երգը «Հորովելի» ու «Գութաներգի» տողերով ձուլեց գեղարվեստական խոսքին: Օրինակը «Համայնական դաշտերի սերմնացաններ» պոեմն է: Այս ամենով հանդերձ Չարենցը գովք է ասում «Անտունիներին տխրաբարբառ, Ծրշիկ տաղերին, որ դարեդար Երգել են հողե մեր գյուղերում»: Ըստ նրա՝ դրանցից են սկիզբ առել «Մեր ժողովրդի երգերն հրե» և այն քերթությունը, որ դեռ երեկ «Լոռու տաղերգուն մեր արդարև Դարձրեց պայծառ, ինչպես բյուրեղ»: Ու Չարենցը փառք է տալիս հայ երգի անդադար մաքառումին ու նրա «ռամիկ հանգին», որ ժողովուրդ է պահել:

Այս տեսակետից ուշագրավ է գեղարվեստական գրականության պետական հրատարակչության տնօրենին 1935 թ. գրած նամակը, ուր, խոսելով ռուսերեն թարգմանվող իր գործերի մասին, նա ասում է, որ պիտի նկատի ունենալ իր «կողմից մշակվող բանաստեղծական ժանրերի ու ձևերի առանձին բարդությունը», որոնք «իրենց արմատներով խորանում են հայ միջնադարյան բանարվեստի արտակարգ բարդ կուլտուրայի մեջ» (Ե. Չարենց, Անտիպ և չհավաքված երկեր, 1983, էջ 463): Ուշագրավ է նաև 1936-ի ծրագրային նշումներից մեկը, ուր նա գրել է. «Հայ կուլտուրայի ազգային արժեքների դաստիարակում: Ուժերի կուտակում: Ժառանգականությունը չի ընդհատվում, տրադիցիա է դառնում» (նույն տեղը, էջ 475):

Խոսելով ազգային ավանդույթի մասին՝ Չարենցը ամենևին էլ հեշտ ճանապարհ չէր որոնում և ոչ էլ ժողովրդայնությամբ ապահովում իր թիկունքը: Ընդհակառակը, կյանքի գնով էր նա պայքարում հանուն ազգային ավանդույթի ու ժողովրդայնության և դրանցով ջանում գտնել դարի մեծագույն խնդիրները գեղարվեստորեն պատկերելու ձևեր ու միջոցներ: Դա գալիս էր նրանից, որ, ըստ նրա, սովետական գրողները, այդ թվում և ինքը («Մենք») դեռ են մնում «դարաշրջանի հսկական բարդությունը արտացոլող արվեստի մեթոդներ որոնելու բնագավառում» (հ. 6, էջ 280): Այդ ճանապարհը չպե՛տք է անցնել արվեստի համար կործանարար «նվազագույն դիմադրության» ուղիով: Անդրադառնալով իր մեծագույն ժամանակակցի և, ավա՜ղ, արդեն նախորդի՝ Վ. Մայակովսկու որոնումներին և առաջ քաշելով ժամանակի հիմնական գեղագիտական խնդիրը՝ Չարենցը ՍՍՀՄ գրողների առաջին համագումարում ասում էր. «Վերջ ի վերջո չնչին արժեք ունի այն բարդ արվեստը, որը՝ նպատակահարմարության և այժմեականության իմաստով, տարակուսանք է առաջացնում նույնիսկ այդ արվեստը ստեղծող հեղինակի մեջ: Շատ լավ էր հասկանում դա Մայակովսկին, սակայն նա ընթանում էր նվազագույն դիմադրության ուղիով: Նրա մեծագույն ողբերգությունն այն էր, որ նա հասկանում էր դա, բայց և որպես գեղագետ չկարողացավ հաղթահարել իրեն՝ թեմայի գեղարվեստական բարդության և այժմեականության նոր սինթեզում» (հ. 6, էջ 280—281): Ահա այսպես Չարենցն աստիճանաբար հասունացնում է նյութի գեղարվեստական բարդության ու այժմեականության նոր համադրության գեղագիտական պահանջը և դա դարձնում գրականության նպատակակետ: Համագումարում իր խոսքը նա ավարտում է այսպես. «Ըստ էության այսօր խորհրդային ողջ գրականության առջև ծառացած ամենադժվարին խնդիրներից մեկը սինթետիկ արվեստի ստեղծման հարցն է» (նույն տեղը, էջ 281): Ահա սա՛ է այն ուղին, դեպի ուր կողմնորոշում է Չարենցը գրականությունը:

Համադրականություն ասելով Չարենցը հասկանում էր.

1. **Նյութի գեղարվեստական բարդության և այժմեականության համադրություն,** որը ենթադրում է լուրջ ու ծանրակշիռ արվեստով դարաշրջանի խոր ու բովանդակալից պատկերման անհրաժեշտություն՝ մի կողմից, խուսափելով ինքնանպատակ բարդությունից, մյուս կողմից՝ կյանքի ինքնին առկա բարդությունը չպարզունակացնելով և հեշտ ու սխեմատիկ ձևերի մեջ չգռեհկացնելով:

2. **Ժողովրդի ստեղծած հոգևոր արժեքների ավանդույթների շարունակություն և ավանդույթի փորձի ու արդիականության համադրություն:** Սա և՛ ազգային դիմագծի պահպանման պահանջ է, և՛ արվեստի ազգային ձևի ու համամարդկային բովանդակության, առանց որի, ինչպես տեսանք, ազգային գրականությունը կորցնում է իր ինքնությունը: Հարցի համանման դրվածքը Չարենցի ստեղծագործության մեջ այս որոշակիությամբ դրվում է առաջին անգամ: Նախորդ տարիներին այդ մասին նա գրեթե ոչինչ չի ասել:

3. **Սովետական բազմազգ ժողովրդի գեղարվեստական ստեղծագործության առանձնահատուկ կողմերի ուսումնասիրում և համադրում ազգային արվեստին՝ հանուն նրբքին բազմազանություն ունեցող գրականության միասնության:** Այս դեպքում համադրության եզր է դառնում ոչ միայն նյութը որպես բովանդակություն ու սյուժե, այլև ձևը՝ համեմատաբար դժվար յուրացվող կայուն տարրերով: Այդպիսին են, օրինակ, «Աքիլլե՞ս, թե՞ Պյերո» պոեմը, «Գիրք իմացության» շարքի ռուբայիներն ու դիստիքոսները: Դրանցից առաջինում թատերական միջարարի (ինտերմեդիա) ձևով Չարենցը պատկերում է երկրի քաղաքական կյանքի պատմությունը, հաջորդում՝ գեղարվեստորեն ձևակերպում դիալեկտիկական մատերիալիզմի փիլիսոփայությունը: Ընդ որում՝ երկրորդ դեպքում հայոց լեզվի ու լեզվամտածողության մեջ համադրվել են և՛ օտար ձևը (ռուբայի, դիստիքոս), և՛ համընդհանուր բովանդակությունը՝ արդյունքում ստեղծելով մի համադրություն, որը պատկանում է ազգային գրականությանը:

4. **Քնարական հերոսի ապրած կյանքի առանձին տարիքային փուլերի կամ այլ կերպ՝ զարգացման առանձին աստիճանների համադրություն:** Այս տեսակետից Չարենցի 30-ական թթ. ստեղծագործությունը իրենից ներկայացնում է մի բարդ պատկեր: Ինչքան էլ բանաստեղծը հեռացել էր իր նախորդ տարիների որոնումներից՝ նկատի ունենալով և՛ նյութը, և՛ հոգեբանական վիճակներն ու դրամատիզմները, այնուամենայնիվ, ինքն իրեն ի մի բերող ուժի ներքին անհրաժեշտությամբ մտաբերում է պատանեկան ու երիտասարդական տարիները, կյանքի անցած ճանապարհը, անցած սերերն ու դառնությունները: Ընդհանրացված ձևով նա ի մի է բերում սերունդների կյանքի ճանապարհը, և դա համատեղում մեկ կերպարի մեջ, որը իրենով բնութագրվող և անհատականացվող քնարական հերոսն է: Անձնական կյանքի, ժողովրդի պատմության, համաշխարհային քաղաքակրթության ամբողջ ճանապարհը նա խտացնում է իր մեջ՝ որպես, ինչպես ինքը կասեր, «միևնույն մարդկության երկու տարբեր հասակ»: Չարենցն իր մեջ խտացնում է հայ ժողովրդի պատմության քառուղիներով անցած բոլոր ազգային մեծությունների կյանքի ճանապարհը, պայքարի ու ոգորումների ուղին: Խորենացու ու Նարեկացու, Աբովյանի ու Նալբանդյանի, Րաֆֆու ու Թումանյանի, Տերյանի ու Մեծարենցի հետ նա հաղորդակցվում է իբրև հոգևոր երկվորյակների: Նրանք թեև ապրել են ուրիշ ժամանակի մեջ, բայց Չարենցը իրեն զգում է որպես նրանց կենդանի ձայնը, նրանց ապրող շարունակությունը, նրանց կովի զինվորը: Ինչպես ինքը կասեր «Պատմության քառուղիներով» պոեմում՝ մի ձեռք միշտ զորություն է տալիս

նրա գրչին և «պատմության գրքից դարձնում է մի թերթ»: Այդ ձեռքը պատմության կենդանի ձեռքն է, որ նրան մեկնում են Խորենացին և մյուսները: Այս ամենը ցայտունորեն տեսանելի է «Մահվան տեսիլ» ու «Նավզիկե» պոեմներում, «Հերոսի հարսանիքը» թատերգության մեջ և առանձին բանաստեղծություններում:

5. **Ամենահարուստ համադրության Չարենցը հասնում է ինքնարտահայտման բազմակողմանիությամբ՝** պահպանելով խոհի ու զգացմունքների միահյուսված, միաձույլ ամբողջությունը: Նրա ներշնչանքի ընդհանուր նկարագրով խոհափիլիսոփայական ուղղվածությունը միասնական, մեկը մյուսով միջնորդավորված ու պատճառաբանված հարցադրման է վերածում հայ ժողովրդի պատմական անցյալի ու անցյալի մշակութային արժեքների գնահատությունը, հայ երգի ու հայ երգասացի ճակատագիրը, անհատի ու պատմության, անհատի ու ժամանակի կապը, կյանքի հավերժական շարժման ու փոփոխությունների օրենքը: Չարենցը, ասեք, նստել է «մտածումի նավը» և պատմության ոլորապտույտ սահանքներով նավարկում է դեպի մարդկային մտքի անափ օվկիանոսը: Սա աշխարհի ամբողջական ընկալման չարենցյան պատկերացումն է, որի համադրության եզրերն են անհատը, ազգը, մարդկությունը, պատմությունը, մշակութային արժեքը, ժառանգորդական կապը և ճակատագիրը: Ասվածի բնորոշ օրինակները շատ են, որոնց մեջ առանձնանում են «Կոմիտասի հիշատակին» և «Դեպի լյառը Մասիս» պոեմները՝ Կոմիտասի և Աբովյանի կերպարների ընդգրկուն, խոր ու դրամատիկ մեկնաբանությամբ:

6. **Համադրականության Չարենցը դիմում է նաև լեզվի, տաղաչափության և գեղարվեստական արտահայտչամիջոցների բնագավառում:** Գրական լեզվի զարգացման գործում նա առաջ է քաշում լեզվական տարբեր շերտերի համադրության պահանջը: Հիմք ընդունելով Տերյանի «կենտրոնաձիգ» գրական լեզուն, գտնում է, որ այն պիտի հարստացնել ժողովրդախոսակցական կենդանի, գունեղ լեզվական տարրերով: «... Հիմքում ունենալով իբրև լավագույն լեզվի միավոր Վահան Տերյանի գրական լեզուն», մենք «պետք է հարստացնենք՝ պատվաստելով այն ինքնուրույն, այն գունագեղ փորմը, որոնց լավագույն նմուշները տվել է մեզ Դերենիկ Դեմիրճյանը» (նույն տեղը, էջ 340—341),— ասում էր նա **Մեր գրական լեզվի զարգացման տենդենցները և Դ. Դեմիրճյանի լեզուն** զեկուցման մեջ: Նույն տեսակետը նա արտահայտել է նաև «Մեր լեզուն» բանաստեղծության մեջ, ուր ևս նրա նպատակակետը լեզվի «կենդանի ոգին» է, որը դուրս է ամեն տեսակի, անգամ հանճարեղ, լեզվական պատենավորումից, քանի որ լեզուն ինքը ժողովրդի կենդանի կյանքն է, ապրող, ստեղծվող, շարունակվող գոյությունը: Ուստի, ըստ նրա, առանձին վերցրած ո՛չ Նարեկի մագաղաթյա մրմունջն է ճանապարհ, ո՛չ Լոռու պայծառ երգչի «բարբառը գեղջկական» և ոչ էլ Տերյանի թախիծը նվագուն: Այլ այդ բոլորը միասին՝ ձուլված նոր կյանքի հզոր ընթացքին: Ի վերջո, այդ լեզուն ստեղծեց ինքը՝ Չարենցը, դիմելով հարուստ լեզվական ինքնարտահայտման, որի հենքը կենդանի կյանքով ապրող հայերենն է՝ հարստացած գրաբարյան բառաձևերով ու լեզվապատկերներով: Լեզուն նրա համար մթնոլորտ է, որի ատաղձը ստեղծում է ժամանակը, միջավայրը, հերոսի հոգեբանությունը, նկարագիրը:

Դիմելով հայ միջնադարյան բանարվեստի գեղարվեստական միջոցներին, Չարենցը ձգտել է նաև **լեզվական ու ժանրային ձևերի** համադրության: Սա արդեն տարբեր որակների բարդ համադրություն է, որ նկատելի է «Սասունցի Դավիթը», «Գովք խաղողի, գինու և գեղեցիկ դպրության» պոեմներում, տաղերում և խորհուրդներում: Հայաստանի խորհրդային գրողների առաջին համագումարում այդ կապակցությամբ նա հետևյալն է ասել. «... լեզվի խնդիրը ենթարկված է ժանրին, այնպես որ տվյալ թեման է թելադրել ինձ այդպիսի լեզու գործածել. առանց ժանրի հետ կապելու դնել լեզվի խնդիրը միանգամայն սխալ է» (նույն տեղը, էջ 344):

Նկատենք, որ **լեզվին ու ժանրին ավելանում են նաև տաղաչափության միջնադարյան ձևերը** (շղթայակապ, ծայրակապ, միահունչ տնական հանգ և այլն), **որոնք ավելի են ընդարձակում համադրության եզրերը:** Դեռ ավելին, **այսքանին էլ գալիս են ավելանալու պատումի ու ոճի միջնադարյան տարրեր:** Այս ամենը համաձույլ ու միասնական են «Գիրք ճանապարհի» ժողովածուի պոեմների ու «Տաղեր և խորհուրդներ» շարքի բանաստեղծությունների մի զգալի մասում:

**Առանձին վերցրած Չարենցը համադրության է հասնում նաև տաղաչափության մեջ՝** ստեղծելով բարդ զուգորդություններ ունեցող տողաչափեր: Այդ միջոցով նա հասնում է արտակարգ հարուստ ռիթմի, որի գլխավոր և միակ նպատակը խոսքի կենդանի թրթիռի, բնական հնչերանգի, լեզվական արտահայտման անմիջականության պահպանումն է:

7. **Չարենցը դիմում է նաև ժամանակների համադրության:** Նրա համար կա ոչ միայն անցյալ—ներկա—ապագա ժամանակային պարզ հաջորդայնությունը, այլև անցյալը կա իբրև ներկա, ներկան՝ իբրև անցյալ, ապագան՝ իբրև ներկա, նաև՝ իբրև անցյալ մեկ այլ ապագայի համար: Սա արդյունք է այն բանի, որ Չարենցը, կարծես, անընդհատ շարժվում է հավերժական ժամանակի մեջ, որ այն սկզբից մինչև վերջ իրենն է, և անցյալի-ներկայի-ապագայի հարաբերությունը կախված է այն բանից, թե ժամանակի ո՞ր փուլում նա ի՞նչ դիրք կընդունի, այսինքն՝ ո՞ր ուղղությամբ կհառի հայացքը: Այս տեսակետից նրա ինքնարտահայտման մեջ կարևոր տեղ են գրավում հուշը, տեսիլքը, մտապատրանքը: Ժամանակների համադրության բնորոշ օրինակներից մեկը «Հուսահատության ժամերին իմ սև» տողով սկսվող բանաստեղծությունն է, որը ժամանակային անցումների մի բարդ շղթա է՝ կոչված պարզելու կյանքի շարժման հավերժական օրենքը, որտեղ Չարենցը կարծես իր համար հայտնաբերում է շարունակականության օրենքը, ըստ որի՝ մեկի կյանքը մյուսի կյանքի շարունակությունն է, մեկի զգայությունները ու երազանքները փոխանցվում են մյուսին, մի ժամանակը ապրում է նաև մեկ այլ ժամանակի մեջ: Իր ինքնությունը Չարենցը տեսնում է և՛ դարեր առաջ սկսված կյանքի մեջ, և՛ ապագա հավերժության:

Համադրականության, որ նույնն է, թե մարդու ներքին բազմատարր ու բազմաձև գոյացությունների միասնականության մասին Չարենցը շատ է մտորել: Այս տեսակետից ուշագրավ է 1937 թ. ապրիլի 13-ի օրագրային գրառումը, ուր ինքնավերլուծությամբ ենթարկվելով «մտքի հոսանքին»՝ Չարենցը հասնում է զգայությունների վերջնական տրոհման, խոհի հնարավոր ինքնադրսևորման վերջնական սահմանին: Նա գրում է. «Յուրաքանչյուր գաղափար վերջերս սկսում է ճյուղավորվել իմ ուղեղում և զարգանալ «ճյուղավոր» հաջորդականությամբ: Մի ներքին անզսպելի մղում դրդում է տվյալ գաղափարը զարգացնել բոլոր հնարավոր կողմերով, «ոստնային» սիստեմով— այսինքն՝ ինչպես անում է ծառը: Հիմնական գաղափարը դառնում է ծառի **բունը,** որը բարձրանալով սկսում է տալ ճյուղեր և ամեն ճյուղ իր հերթին՝ ոստեր, որոնք ևս իրենց հերթին դառնում են նոր ճյուղեր— և այսպես անվերջ» (նույն տեղը, էջ 488):

Այս ամենն, ի վերջո, նշանակում է գրողի անցած ստեղծագործական ճանապարհի փորձի և անընդմեջ որոնումների համադրություն, որպես վերջնական արդյունք: Այդ արվեստին տիրապետելու համար Չարենցը ուսումնասիրում էր հայ և համաշխարհային գրականության մեծերի փորձը, հոգեպես հաղորդակցվում նրանց հետ: Հատկապես նա շատ է ոգեկոչում Դանթեին, որը նրա ուղեկիցն էր «Մահվան տեսիլ» պոեմում, որի դեղին դեմքը նրա համար դարձել էր «ինքնության դևիզ, սեփական գոյության պարոլ, ինքնագտնման փարոս»: Նույն կերպ նա ուսումնասիրում էր Խորենացու լեզուն ու ոճը, Նարեկացու պատկերների կառուցվածքը, Շնորհալու տաղաչափությունը, ազգային դյուցազներգության պատումի ձևերն ու եղանակները, միջնադարի հայ տաղերգության արվեստը, ապա և մինչև Աբովյան, Թումանյան ու Տերյան հասնող ազգային երգի ձևն ու էությունը: Իսկ Դանթեին նախորդում ու հաջորդում էին Հոմերոսը, Գյոթեն, Պուշկինը:

Ահա հասարակական կյանքի բազմածալ ու հարուստ հոգեբանությունից բխող ընդգրկուն ու բարդ, բայց ոչ բարդացված արվեստի գեղագիտության այսպիսի պահանջ առաջադրելով՝ Չարենցը մի կողմից հաղթահարում է «անհաճո պարզությունը», որ ոմանք պարտադրում էին ժամանակի արվեստին, մյուս կողմից՝ ուղի հարթում ժողովրդայնության նոր ըմբռնման համար: **Ժամանակը, ըստ նրա, պահանջում էր այնպիսի արվեստ, որը «լինի և՛ բարդ, և՛ համապատասխանի սոցիալիզմ կառուցող մարդկության հոգևոր հոյակապ կառուցվածքին: ... Խորհրդային արվեստը պետք է ստեղծի իր բարդ, բայց ամենալայն մասսաներին հասկանալի սինթետիկ արվեստը»** (նույն տեղը, ընդգծումը— Դ. Գ., էջ 282): Դրա համար նա առաջարկում է աշխատել անդուլ ու համառ, կոփվել սոցիալիստական առօրյայում և նվաճել մարդկության մշակութային բարձունքները: Դա էլ արդեն գրողին կարող է մղել խիզախման ու սխրանքի: 1934 թ. ապրիլի 7-ին իր գործերի թարգմանիչ Ալեքսանդր Գատովին գրած նամակում Չարենցը հենց այդպես էլ արտահայտվել է՝ պոեզիան համարելով «կյանքի բարձր սխրանք», որը ազգի և մարդկության հոգևոր զարգացման բարձրագույն նվաճումն է:

**ԴԱՎԻԹ ԳԱՍՊԱՐՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր**

յելյանի, Սայադ Շամբարյանի և ուրիշների հետ, որպես Լոռվա աշխատավորության ներկայացուցիչ, մասնակցում է Բաքվում Արևելքի ժողովուրդների առաջին համագումարին։ Սովետական իշխանության տարիներին Ա. Կախոյանը բազմիցս ընտրվել է Վրաստանի և Անդրկովկասյան ֆեդերացիայի ղեկավար կուսակցական, սովետական և արհմիութենական մարմիններում։

Երկար ժամանակ նա աշխատեց իր հուշերի ամբողջական գիրքն ավարտելու վրա։ Եվ գրեց ու հրատարակության հանձնեց այն։ Գիրքը շարվեց, տպագրվեց, բայց… լույս աշխարհ չեկավ։ Հեղինակի մահից շուրջ քառորդ դար հետո միայն ընթերցողները հնարավորություն ունեցան ծանոթանալու աննկուն հեղափոխականի հուշերի ու հոդվածների գրքին, որտեղ նա վերակենդանացնում է երկրամասի հեղափոխական շարժումների իրական պատկերը, սրտառուչ անմիջականությամբ պատմում իր ուսուցիչների ու հեղափոխական պայքարի մարտական ընկերների՝ Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ս. Սպանդարյանի, Կամոյի, Մ. Ցխակայայի, Մ. Մելիքյանի (Դեդուշկա), Մ. Բոչորիձեի, Ս. Կասյանի և ուրիշների մասին, բնութագրում նրանց, վերհիշում այդ ազնիվ ու խիզախ մարդկանց անվան հետ կապված առանձին դրվագներ։

Ինքը՝ Ա. Կախոյանը, անհատի պաշտամունքի զոհ դարձավ։ Նա մահացավ 1939 թվականին։ Աշխատավորական Լոռին բարձր է պահում աննկուն հեղափոխականի հիշատակը։ Ա. Կախոյանի անունով է կոչվում Ալավերդու կենտրոնական փողոցներից մեկը, իր հայրենի Հաղպատում դրվել է նրա կիսանդրին։

**Ա. ՓԻՐՈՒԶՅԱՆ**
**պատմական գիտությունների թեկնածու**

Հանձնված է շարվածքի՝ 18. 03. 87 թ.։ Ստորագրված է տպագրության 13. 04. 87 թ.։ ՎՖ 05590։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակը՝ 18732։ Պատվեր 696։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։